# ԱՄՈՒՍՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ



ԱՐԻՍՏԱԿԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԵԴՐԱԿԵԱՆ.



ՄՈՍԿՒԱ.
ՏՊԱՐԱՆ Մ. ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆԻ.
1891

## Ա.

Մեզանում առ հասարակ ընդունուած է իբրև ազգի բնաւորանիշ յատկութիւն արտայայտող խօսք, թէ Հայը կրօնական ազգ է. թէ նա սերտ սիրով կապուած է իր եկեղեցու հետ։

Երանի՜, հազար երանի այդ ասողներին և նրանց հաւատացողներին, որ գոնէ այդպիսի համոզմունքով կամ գոնէ լոկ պարզամտութիւնով բաւականութիւն են տալիս իրանց ազգային զգացմունքին, բաւականութիւն, որից մենք, դժբախտաբար, զուրկ ենք, որովհետև չենք կարողանում հաւատալ, թէ հայ ժողովուրդը, լինելով կրօնական, լինելով եկեղեցասէր, չի կարող մի օր դրա հակառակը լինել։

Իրաւ է, պատմական հանգամանքների շնորհիւ հայ ազգը շատ վաղուց շարունակել է ապրել կրօնական կեանքով, իրաւ է, նա ամբողջ դարերի ընթացքում սիրել և պաշտել է իր եկեղեցին և նրանով մխիթարուել, բայց այդ նրա համար, որ եկեղեցին էլ իր մայրական գորովով և հեռատեսութիւնով շատ լաւ կատարել է իր մայրական հոգատարութեան պարտքը, իսկ այն դէպքերում, երբ

այդ հոգատարութիւնը ժամանակի բերմունքի երեսից փոքր ինչ թուլացել կամ դադարել է, իսկոյն նրա դրկից հեռացել, օտարացել են ժողովրդի խոշոր մասեր. էլ չենք խօսում մասնաւորների համար։

Հայը սիրել է իր եկեղեցին, քանի որ նրան դիմելով, գտել է գգուանք, սփոփանք և իր վշտերին դարման. և նրան թողել, հեռացել է, երբ մի ցաւ կամ մի կարօտութիւն ունենալով՝ աղաղակել, օգնութիւն է խնդրել, և մնացել է անպատասխան ու անբաւարար։ Այս են ցոյց տալիս մեր պատմութեան շատ տխուր էջերը, այս է ցոյց տալիս և ներկայ ժամանակիս դառն ճշմարտութիւնը։ Ինչ որ կարող է լինիլ մի ժողովուրդ այսօր, նոյնը չի կարող լինիլ վաղը, եթէ վաղուան պայմանները այսօրուանի նմանը չեն։ Ամենայն ինչ պայմանաւոր է։

Որչափ էլ մեծ լինի որդու մէջ սէր և յարգանք դէպի իր ծնողը, որչափ էլ զարգացած լինի նրանում որդիական երախտագիտութեան զգացումն, դարձեալ ծնողը պիտի զգուշանայ անտես առնելուց նրա պահանջն ու պէտքը, եթէ ոչ՝ կարող է ցրտացնել նրա սիրտը։

Եթէ հայ ժողովուրդն այսօր էլ խիստ սիրում և պաշտում է իր առաքելական մայր եկեղեցին, աշխատենք ուրեմն անշիջանելի պահպանել նրանում այդ սէրն ու ջերմեռանդութիւնը, որպէս զի անցեալ և ներկայ մասնաւոր խրատական փորձերը բաւական լինին, և մենք կամ մեր մօտիկ ապագայ սերունդն անբախտութիւն չունենանք տեսնելու մեր եկեղեցու

շահերը վտանգող կորուստ և ուժը ջլատող հարուած։

Ի՞նչ է լինելու մեր աշխատանքն այդ մասին. այն միայն, որ Հայաստանեայց ժողովրդական եկեղեցին իր իսկական ամենամեծ արժանաւորութեան մէջ պահենք. և այն ժամանակ կարելի է անխաբ յուսով հաւատալ, թէ հայ ժողովուրդը որպիսի քաղաքական դիրք էլ ունենայ, որչափ էլ ընդարձակւի նրա քաղաքակրթութեան սահմանը, դարձեալ սիրելու և յարգելու է իր ազգային մայր եկեղեցին և ամենամեծ պատկառանքով է նայելու նրա իրաւասութեան վրայ։

Ո՞րն է մեր եկեղեցու այդ իսկական ամենամեծ արժանաւորութիւնը։ — Պահպանել անփոփոխ՝ ինչ որ անփոփոխելի է, և փոփոխել այն, որ փոփոխութեան կարօտ է։ Անփոփոխելի են եկեղեցու դաւանաբանական սկզբունքները, ծէսերն ու պաշտամունքները. փոփոխելի՝ այն կարգադրութիւններն ու օրէնսդրութիւնները, որոնք ինքը եկեղեցին է սահմանում իր վարչական և դատաստանական իրաւասութեան ենթարկուած խնդիրների մասին, նպատակ ունենալով բարւոքել հաւատացեալների տնային և ընկերական կեանքի սովորական պահանջները, որպէս զի արտաքին կենցաղավարութեան եղանակը չխանգարէ ներքին, հոգեկան կեանքին՝ ընթանալու իր փրկարար ուղղութիւնով։ Պատմութիւնը շատ օրինակներ ունի, որոնցից տեսնում ենք, թէ որչափ իշխանութիւններ և հաստատութիւններ տուժել են և անդառնալի կորուստներ ունեցել միայն նրա հա-

*մար, որ չեն կարողացել ըմբռնել օրինաց ժամանակաւորութեան անհրաժեշտութիւնը, կամ ըմբռնելով հանդերձ՝ անուշադիր են գտնուել դէպի նա։*

*Ամենայն օրէնք կամ կանոնադրութիւն դրւում է ժողովրդի բարօրութեան համար. ուստի և ներկայացնում է նրա կեանքի պահանջները։ Քանի որ կեանքը չի կրել իր մէջ նոր նոր փոփոխութիւններ, նոր նոր պայմաններ, նրա համար սահմանուած օրէնքներն էլ կարող են մնալ անփոփոխ. բայց եթէ ժողովուրդն սկսում է կեանքի նոր շրջան, նրան համապատասխան պիտի փոխուին և առաջին շրջանի համար դրուած օրէնքները, որպէս զի ներդաշնակութիւնը՝ օրէնսդրող հաստատութեան և ժողովրդի մէջ՝ պահուած լինի։ Մի հաստատութիւն, որ չի ընթանալ այս բնական ճանապարհով, վաղ թէ ուշ կ'կորցնէ իր ազդեցութիւնն ու նշանակութիւնը և կ'դառնայ ժողովրդի համար անտանելի[1]. իսկ եթէ*

[1] *«Մի ազգի ներկայ վիճակն ինչպէս էլ որ լինի, դարձեալ փոփոխական է անշուշտ..... ժամանակի ընթացքը բերում է արտաքին նոր պայմաններ. մտածմունքների կերպը փոխւում է, նրա հետ միասին և գործողութիւնը: Այս պատճառով՝ ամենատեսակ հաստատութիւնները պիտի ունենան այդ ժամանակաւոր ձեր..... Որպէս զի մի որ և իցէ դրութիւն կարողանայ հաստատուն լինիլ, ամենակարեւոր է, որ նա իր սեփական կազմւածքի մէջ ներմուծանէր փոփոխութեան օրէնքը..... Եւ այս իսկ էական պայմանը չպահպանելն է, որ բացատրում է մեզ այնքան հասարակական բազմաթիւ հաստատութիւնների կործանումն». Դրեպէր, պատմ. մտաւոր զարգ. Եւրոպիոյ. հատ. ա. Շուշի,* 1879, *եր.* 31:

մի անգամ կորցրեց նա իր զօրութիւնն և ոյժը— ժողովրդի համակրութիւնն ու մտերմութիւնը, որոնց վրայ հիմնուած էր իր բարերար հեղինակութիւնը, այնուհետև և՛ այդ հաստատութեանը, և՛ ժողովրդին սպառնում է մեծ վտանգ։

Հայաստանեայց Ս. Եկեղեցին միշտ աշխատել է ուշ դարձնել ժողովրդի կեանքի պահանջներին և նրանց համեմատ զիջող և գթած լինիլ. Նա միշտ հեռատես իմաստութիւնով կշռելով ժամանակակից հանգամանքները, արել է փոփոխութիւններ իր օրէնսդրական կարգադրութիւնների մէջ, ինչպէս ցոյց են տալիս մեր ազգային ժողովների պատմութիւնն ու կանոնադրութիւնները։ Անկասկած՝ քրիստոնեայ Հայաստանի քաղաքական ինքնագոյութեան ժամանակներում պետական օրէնքների շարքում իրանց նշանաւոր տեղը պիտի բռնած լինէին և եկեղեցական—օրէնսդրական՝ զանազան խնդիրների վերաբերեալ կանոնները, հետևաբար և բաւական ընդարձակ պիտի լինէր եկեղեցու իրաւասութիւնը ժողովրդի կառավարութեան գործում. բայց երբ Հայաստանը կորցրեց իր քաղաքական գոյութիւնը, երբ նրա բնակիչները կամ տարագրուած իրանց Հայրենիքից կամ բուն իսկ Հայրենիքում հպատակ դարձան օտար ազգերի, օտար դաւանութեան պետութիւնների, Հայ եկեղեցու իրաւասութիւնը պիտի սղմւէր հարկաւ և կեդրոնանար այնպիսի զուտ կրօնական խնդիրների վրայ, որոնք ամէն պետութիւն թողնում է իւրաքանչիւր ժողովրդի հոգևոր վարչութեան կար-

գաղրութեան, որ բռնականութիւն տուած լինի թէև քաղաքական միանման կեանքով, բայց տարբեր կրօն ունեցող ստորադրուած ազգերի հոգեկան պահանջներին — նուիրական աւանդութիւններին և սովորութիւններին։ Սակայն նայելով՝ թէ իշխող ազգերի պետական կրօնը որքան հեռու կամ մօտիկ է եղել հպատակ ժողովրդի կրօնին, այնքան ևս նրանք կամ տուել են լիագոր իրաւունք հպատակների հոգվարչութեան առանձնապէս, անկախ եղանակով տնօրինելու ժողովրդի դաւա հոգևոր խնդիրները, կամ խոստովանելով նրանց իւրաքանչիւրի այդ մասին ունեցած իրաւասութիւնը, պահանջել են մի և նոյն ժամանակ մի յայտնի աստիճանի համանմանութիւն պետական նոյն կարգին վերաբերեալ օրէնքներին, որոնք ընկերական-քաղաքացիական յարաբերութիւնների մէջ տեղի ունեցող հայցերի մասին կարգադրութիւններ լինելով՝ երկու կրօնակից ազգերի— հպատակի և իշխողի մէջ մի ընդհանուր պաշտօնական միաձևութիւն պէտք է ներկայացնեն։

Այսպէս օրինակ՝ այն օրից, երբ հայերի մեծագոյն մասը ենթարկուել է մահմեդական ազգերի իշխանութեան, վերջիններս բոլորովին անմասն են պահել իրանց այդ ժողովրդի — ինչպէս առ հասարակ բոլոր այլադաւանների — կրօնական խնդիրներից և միանգամայն յանձն են արել այդ մասի կառավարութիւնը նրանց եկեղեցական իշխանութեանը. և այդպէս էլ Տաճկաստանի և Պարսկաստանի հայերն իրանց հոգևոր հայցերի վճիռներում միմիայն եկե-

ղեցական իշխանութիւնն են ճանաչում: Միանգամայն այլ է ի հարկէ այն տեղերում, ուր իշխող պետութիւնը քրիստոնեայ է եղել և է ներկայումս: Այդպիսի տեղերում եկեղեցու օրէնքներն ու պահանջները յայտնի մասերում կազմելով և պետութեան պահանջներ և ընդունուած օրէնքներ՝ և՛ վայելում են նրա պաշտպանութիւնը և՛ ենթարկւում են նրա հսկողութեան և միջամտութեանը, եթէ միջամտութեան տեղիք են տալիս զեղծումներ և նրանցից յառաջացած անբաւականութիւններ:

Ներկայումս հայերի մի մեծամասնութիւն ևս կազմում ենք Ռուսաստանի հովանաւորութեան ներքոյ գաւառներս: Այն օրից, երբ ամենայն Հայոց Մայր Աթոռն Էջմիածնի հայկական մի քանի նահանգների հետ միասին անցաւ Ռուսաստանի պետութեան՝ վերջինս ճանաչելով այդ Արևելեան ինքնագոյ, ազատ եկեղեցու իրաւունքները, ինչպէս և առ հասարակ ռուսահպատակ միւս դաւանութիւնների՝ տալով նրան կայսերական օրէնքների առաջ վայելելի արտօնութիւններ և իր պաշտպանութիւնը[2]. մի և նոյն ժամանակ առանձին կարգադրութեամբ յատկացրեց նրա վարչութեան պատշաճեալ խնդիր-

---

[2] Сводъ законовъ томъ XI и Уложеніе о наказаніяхъ 1885, յօդ. 176—195, 210—235, և 1560—1563: *Առաջինում ռուս եկեղեցուն յատկացրած արտօնութիւնները վայելում է Ռուսաստանում և հայ եկեղեցին մի քանի բացառութիւններով. երկրորդում—պատժական օրինագրքում, ռուս եկեղեցու կանոնների և իրաւունքների դէմ մեղանչողների մասին սահմանած*

ները։ Այդ կարգադրութիւնը, որ յայտնի է 1836 թուի Պօլօժենիե անունով, հիմնուում է ինչպէս ասուած է Թագաւոր Կայսեր Կառավարիչ Սենատին տուած հրովարտակում, այդ եկեղեցուն սեփական հնադարեան կանոնադրութիւնների վրայ, յարմարեցրած, սակայն, պետական օրէնսդրութիւններին։

Ոչ նպատակ և ոչ պէտք ունինք մի առ մի յիշելու, թէ որոնք են այդ կարգադրութիւնով ռուսահայոց եկեղեցական վարչութեան անօրէնութեան թողած խնդիրները. մենք կամենում ենք խօսել միայն նրանցից մէկի վրայ, որ ամենափափուկն ու ամենակարևորն է. և որ ամենօրեայ յարուցւող խնդիր լինելով ժողովրդի կեանքի մէջ՝ տեղի է տալ ներկայումս մեծ անբաւականութեան և յուսահատութեան, իր լուծման անորոշ և կամայական եղանակով. յուսահատութեան, որ յառաջացած լինելով նիւթական և բարոյական զրկանքներից, սկսել է արդէն վտանգաւոր հետևանքներ տալ. վտանգաւոր և՛ ժողովրդի բարոյականութեան անկման կողմից, վըտանգաւոր և՛ եկեղեցու շահերի տեսակէտից։—Այդ՝ ամուսնական խնդիրն է իր երկու մասերով—իրաւունք ամուսնութեան և լուծումն ամուսնութեան։ Եւ որովհետև հոգևոր իշխանութիւնն այդ խնդիր-

պատիժները գործադրելի են լինում և հայ եկեղեցու դէմ գործած մեղանչանքների առիթով։ Ուրեմն պարզ է, որ եթէ տէրութիւնն իր օրէնքների ճիշտ գործադրութեան մասին հսկողութիւնն իր վրայ է առնում, կամենում է զեղծումների առաջն առնել իր միջամտութիւնով, որ կողմից էլ այդպիսիք տեղի ունենան։

ները վճռելիս հիմնում է իր իրաւասութիւնը եկեղեցական կանոնադրութիւնների վրայ, ուստի և պէտի աշխատենք իւրաքանչիւրն այդ մասերից առանձին առանձին առնելով. ցոյց տալ նախ՝ թէ՛ եկեղեցական կանոնները, և թէ՛ որչափ իսկապէս կանոնական են լինում մեր վճիռները և որչափ պատահական ու կամայական։ Երկրորդ՝ թէ այդ տեսակ վճիռների հետևանքն ինչ է լինում. և այդ խնդիրների մասին որոշ և մշակուած կանոններ ունենալու ստիպողական հարկը։

Իբրև եկեղեցու պաշտօնէի՝ մեր ուշադրութիւնը դրաւել են այդ խնդիրները շատ վաղուց — 1867—1868 թուականներից, — երբ փոխանորդական պաշտօնով մուտ գործեցինք նախ Շուշի և ապա Տաթև և առիթ ունեցանք թէ՛ լսել ժողովրդի արդարացի տրտունջն ու անբաւականութիւնը և թէ՛ ծանօթանալ ատենական գրագրութիւնների հետ։ Այդ երկու տարուայ տխուր տպաւորութիւնները կարող էին գուցէ մեզ համար միայն տպաւորութիւններ մնալ, անգիր, անհետևանք, եթէ միւս անգամ 1876 թւին նշանակուած չլինէինք Ղարաբաղի թեմի փոխանորդ։ Երկրորդ անգամ պարապ ունենալով ուշ դարձնելու ամուսնական խնդիրների վրայ, որոնք մեր ատենական ատեների գրագրութեան մի հարուստ մասն են կազմում, սկսեցինք մօտիկ ծանօթանալ Շուշու Կոնսիստորիայում պահուող նոյնախնդիր գրագրութիւններին, հրամաններին և կոնդակներին, սկսած 1837 թւից մինչև 1880 թիւը և ժողովել պատ-

ձէններ ու քաղուածներ, որոնց հիման վրայ և կազմել մեր այս աշխատութիւնը, ծանուցնելով վերջում նրա փաստերը Տփխիսի Կոնսիստորիայից հանած նոր նոր պատձէններով և քաղուածներով։

Մեր այս աշխատութիւնն այժմ հրատարակել որոշեցինք, կարդալով, որ Կ. Պոլսի հայ եկեղեցականների «Համագումար ժողովը մտադիր է առաջարկել Կաթողիկոսին, որ ընդհանուր եկեղեցական ժողով գումարէ, որպէս զի մեր եկեղեցու ամուսնական օրէնքներն բարեփոխուին։ Այդ օրէնքներն այլ ևս չեն համապատասխաներ ժամանակի պահանջներուն. հին, փտած խել մը օրէնքներ այլ ևս անտանելի են. մեր եկեղեցականութիւնը փորձով զայս կ'տեսնէ ամէն օր» [3]։

Ներկայ հետազօտութիւնս սկսելով խնդրի առաջին մասից — Ամուսնութեան իրաւունքից — պարտք ենք համարում կանխօրէն յայտնել ընթերցողին, թէ մենք խօսելու չենք այն միւս պայմանների մասին, որոնք պահանջւում են անհրաժեշտօրէն ըստ եկեղեցական կանոնադրութեան ամուսնութեան իրագործման համար, որպիսիք են ամուսնացողների չափահասութիւնը, նրանց յօժարակամ հաւանութիւնը, և այլն [4]։ Սրանք չեն եղել և չեն լինելու առիթ սա-

[3] Մշակ 1889, № 117. Թղթակց. պ. Հայկակի:

[4] Այդ խնդիրները ուսումնասիրել ցանկացողները կարող են կարդալ հանգուցեալ Վահան վարդապետ Բաստամեանցի իրաւաբանական մանրամասն հետազօտութիւնը «Ամուսնութիւնը ըստ

բանկուսութիւնների, դժուարութիւնների և դժգոհութիւնների, որպէս եղել է և է ամենուրէք հաս ու չհասի պայմանը, որ կարօտում է լուրջ ուշադրութեան, որպէս ակներև պիտի ապացուցանենք մեր փաստերը։

---

Բ.

Երկրագնտի վրայ չի եղել և չկայ մի ազգ, մի ժողովուրդ, որ իր գոյութեան հետ միաժամանակ ընդունած չլինի ամուսնութեան համար որոշ կարգեր և սովորութիւններ, համաձայն իր կեանքի պայմանների և իր կրօնական ու իրաւաբանական հասկացողութեան։ Մարդկային ազգի նախնական վիճակի և ընտանեկան կազմակերպութեան ծագման մասին խօսող հեղինակներից մի քանիսի կարծիքով՝ մարդկային ցեղերի սկզբնական վայրենի դրութեան մէջ ամուսնութիւնը սովորաբար տեղի է ունեցել էնդոգամիա (համընտանի) եղանակով. քանի որ այդ վայրենի ընտանիքների, խմբերի և ցեղերի մէկ՛մէկի դէմ ունեցած արիւնարբու ջնջող թշնամութիւնը անկարելի էր կացուցանում նրանց յարաբերութիւնը միմեանց հետ. և միայն այդ շրջանից ռաք փոխ-

Հայոց եկեղեցական իրաւաբանութեան» վերնագրով «Փորձ» 1880 Թ. յունիս, յուլիս, օգոստ., սեպտ., հոկտ., նոյեմ. և դեկտ. ամիսների համարները:

լուն պէս յառաջ է գալիս էգզօգամիա եղանակը—օտարացեղ ամուսնութիւնը. իսկ մի քանիսների կարծիքով՝ նախնական ցեղերը ոչ բացառապէս էնդոգամիայի սովորութեանն են հետևել և ոչ էկզօգամիայի, այլ անորոշ դրութիւնով մէկն այս և մէկն այն ձևին։

Վերջին կարծիքը աւելի հաւանականութիւն ունի այն պատճառով որ, ինչպէս տեսնում ենք, երկու սովորութիւնն էլ խոր արմատներ ունին ձգած այդերի կամ ցեղերի հոգևոր և բարոյական կեանքի մէջ. և նայելով՝ թէ ո՛ր ազգ ո՛ր սովորութեանն է հետևել, նրա կրօնն ու օրէնսդրութիւնն էլ նոյնն են նուիրագործել։

Յունաստանի դիւցաբանութիւնը ներկայացնում է դիւցազուններին և նոյն իսկ Ոլիմպոսի գլխաւոր համընտանի ամուսնութեան վայրենական ժամանակի ամենավատթար ձևեր, ի դէմս եղբօր ու քրոջ ամուսնութեան։ Եգիպտական Օզիրիսը և Իզիդան քոյր-եղբայր էին։ Զենդաւեստան թոյլ է տալիս իր հաւատացեալներին ամենամերձաւոր արիւնախառնութիւնը։ Նոյնն էր և հին Ասորեստանցոց և ուրիշ մի քանի ազգերի մէջ։ Եբրայական ցեղի մէջ էլ տեսնում ենք ամենամերձաւոր արիւնախառնութեան օրինակներ։ Սրա հակառակն են միւս սովորութեան հետևող ազգերի կրօնն ու օրէնսդրութիւնները, որոնցից մի քանիսը ծայրայեղութեան են հասնում։ Հռոմայեցոց մէջ մօտիկ ազգականները չէին կարող մէկ մէկի հետ ամուսնանալ։ «Հնդկաստանում

ապօրինի է համարում Բրահմայի երկրպագողին ամուսնանալ նրա հետ մի և նոյն տոհմական անուն կրող կնոջ վրայ... Զինաստանի օրէնքով՝ տղամարդը չի կարող ամուսնանալ այն կնոջ վրայ, որ կըրում է մի և նոյն ազգանունը. այնպէս որ, որչափ էլ արական գծի ազգականութիւնը հեռաւոր լինի, այսու ամենայնիւ բացարձակ արգելք է ամուսնութեան...

Այնտեղ կան արգելմունքեր նաև իգական գծով յառաջ եկած և այլ տեսակ ազգականների մասին, աւելի սահմանաւոր պատճառներով. օրինակ՝ օրէնքը չի ներում երկու եղբայրներին ամուսնանալ երկու քոյրերի վրայ. ինչպէս և այրիացած տղամարդը չի կարող իր որդին ամուսնացնել այն այրի կնոջ աղջկայ հետ՝ որի հետ ինքն է ամուսնանում։ Սիամում արիւնական ազգակցութեան եօթներորդ աստիճանը համարւում է սահման, որից վեր արգելւում է ամուսնութիւնը. բացառութիւն է Թագաւորը» [5]։

Որչափ մարդկային ազգերը քայլ առ քայլ հեռանում են իրարից նախնական և նախապատմական վայրենի և կիսավայրենի շրջանից դէպի պատմականն ու դէպի քաղաքականութիւնը, այնչափ էլ մեղմանում են նրանց բարուց խստութիւնն ու կենցաղավարութիւնը և յառաջ է գալիս ընտանիքին

[5] Տայլոր. Доисторическій бытъ человѣчества. Մոսկւա, 1868. եր. 379—380.
Նոյն հեղինակի Антропологія, եր. 378.



յարմարաւոր կազմակերպութիւն տալու դէպքը։ Հինը Հետզհետէ ստանում է մասնաւոր նշանակութիւն որպէս ամուսին և որպէս մայր. և նրա այդ ձևով բերած նշանակութիւնը տալիս է նրան սկըզբնական աստիճանի յարգանք ու արտօնութիւններ թէ՛ տանը և թէ Հասարակական յարաբերութիւնների մէջ. և այնուհետև Համեմատ դրան և կրօնն ու քաղաքացիական օրէնսդրութիւններն էլ Հարկաւոր են Համարում կարգել աւելի ընդարձակ և որոշ սաՀմաններ ու կանոններ կնոջ այդ երկու տեսակ նշանակութիւնը Հաստատուն դիրքի վրայ կացուցանելու Համար։ Կրօնն իր Հոգածութեան առարկայ դարձնելով ժողովրդական բարուց մաքրութիւնն ու անարատութիւնը՝ նուիրականութիւն է տալիս ամուսնութեանն իր սաՀմանած կարգերով, ծէսերով և արարողութիւններով. իսկ քաղաքացիական օրէնսդրութիւնը նկատելով ամուսնութիւնն իբրև քաղաքացիական դաշնադրութիւն մարդու և կնոջ մէջ, Հետևաբար իբրև իրաւաբանական որոշ պատասխանատուութիւն ու պարտաւորութիւն, որ ունենում են երկու ամուսինները պետութեան և Հասարակութեան առաջ խոստովանում է այդ նուիրականութիւնը և Հովանաւորում է նրան։

Երբ արդէն ամուսնութեան նուիրականութիւնն ընդունուած է մի ազգի մէջ կրօնական և պետական օրէնսդրութիւնով, Հարկաւ յառաջ է գալիս ամուսնութեան օրինաւորութիւնն իբրև Հիմն նուիրականութեան. իսկ օրինաւորութեան Հիմքերից գլխա-

*ւորն և անդրանիկը եղել է արիւնակցութեան կամ ազգակցութեան որոշ աստիճանների վրայ ամուսնանալուց զգուշանալը։ Որչափ էլ ամուսնութիւնը սկզբում տեղի ունեցած լինի համընտանի (էնդօգամիա) սովորութիւնով, սակայն և այնպէս մարդկային ցեղերի մեծամասնութիւնը, մանաւանդ քաղաքակրթութեան շրջանը ոտք դնողները շատ վաղ արդէն սկսում են պատկառանք զգալ դէպի ընտանիքի սրբութիւնը և դնել մի յայտնի սահման արիւնակցութիւնով և ընտանեկցութիւնով միմեանց հետ կապուածների ամուսնութեան համար*[6]*։ Բացի վերոյիշեալ պատճառից — պատկառանքից դէպի ընտանիքի սրբութիւնը, եղել է, որպէս վկայում են Տայլօրը և ուրիշ հեղինակներ, այլ պատճառ խորշելու համայրիւն մերձաւորութիւնից — նրանից յառաջ եկող բնական և բարոյական վնասակարութիւ-*

---

[6] *«Միշտ սուրբ է համարուել այն բնական-բարոյական կապը, որը գոյանում է ամուսնութիւնից ընտանիքի անդամների մէջ. և այս այն աստիճան, որ՝ ինքն բնութիւնը ազդում է մի տեսակ անարատ սէր դէպի իւր ազգականը, մի տեսակ զզուանք, տհաճութիւն դէպի սեռական յարակցութիւնը կամ ամուսնութիւնը նոյն ընտանիքի անդամների մէջ, մերձաւոր ազգականների մէջ... Պատմական և մանաւանդ իրաւաբանական վկայութիւնները ցուցանում են որ՝ իւրաքանչիւր ազգի ժտաւոր բարոյական զարգացման հետ զարգացել է և այդ վսեմ գաղափարը ամուսնութեան սրբութեան վերայ, որով աւելի և աւելի հեռացել է օրինաւոր ամուսնութեան սահմանը նոյն ընտանիքի անդամների մէջ»: «Փորձ» 1880, նոյեմ. և դեկտ. եր. 137—138. Վահան վարդ. Բաստամեանց:*

նը[7], որ նկատելի և զգալի է եղել նաև վայրենի ցեղերի համար։ Ցայտնի բան է, բոլոր ազգերի մէջ էլ միատեսակ չեն եղել ոչ սկզբում և ոչ յետոյ արիւնակցական ամուսնութեան արգելւած աստիճանները, այլ ժամանակի և իւրաքանչիւր ազգի կրօնական և իրաւաբանական հասկացողութիւնների համաձայն, ինչպէս ցոյց են տալիս վերոգրեալ օրինակները զանազան ազգերի ընտրւած կանոններից։ Երկուսի ազդեցութիւնն էլ շատ մեծ է եղել այս խնդրում։ Սոլոնի օրէնքի համաձայն՝ եթէ քաղաքացին մեռնէր առանց արու զաւակ և կտակ թողնելու և ժառանգ միայն աղջիկը, նրան պիտի կին առնէր ամենամերձաւոր ազգականը[8]։ Մովսէս մարգարէն հին

[7] «Ինքը բնութիւնը չի հանդուրժում այդպիսի ամուսնութեան, որ վնասում է նորան ֆիզիքապէս և բարոյապէս»: Опытъ Курса Церк. законовѣдѣнія, СПБ. 1851, եր. 436»: «Գիտնական կենսաբանական (ֆիզիօլօգիական) հետազօտութիւնները և որ գլխաւորն է՝ կեանքի բազմաթիւ փորձերը դարերու ընթացքում, հաստատում են որ՝ մերձաւոր ազգականների ամուսնութիւնից ծնուած զաւակները լինում են սովորաբար սակաւակեաց, նուաղ և թոյլ թէ ֆիզիքական կազմուածքով և թէ մտաւոր-բարոյական ուժերով. սակաւ ընդունակ առողջ սերունդ յարուցանելու իւրեանց կողմից, և այլն: Ուստի և վնասակար է մարդկութեան կանոնաւոր աճման համար շատ մերձաւոր ազգականների ամուսնութիւնը միմեանց հետ: Այս ընդհանուր կանոնը ստուգվում է և պատմական օրինակներով. մի քանի երևելի ընտանիքներ բոլորովին չնջուեցան յատկապէս մերձաւոր ազգականների ամուսնութիւնների պատճառով»: «Փորձ» 1880, նոյեմ. և դեկտ. եր. 137—138:

[8] Ուղևորութիւն Կրտսերոյն Անաքարսեայ, Թարգ. հ. Ե. Հիւրմիւզեան. հատ. ա. Վենետիկ 1843, եր. 138:

ուխտի ժողովրդի համար որոշում է ամուսնության յետագայ արգելված աստիճանները. «Մարդ ոք մարդ առ ամենայն ընտանութիւն մարմնոյ իւրոյ մի մերձեսցի... Զառականս հօր քո և զառականս մօր քո մի՛ յայտնեսցես, զի մայր քո է... Զառականս կնոջ հօր քո մի՛ յայտնեսցես, զի առականք հօր քո են։ Զառականս քեռ քո՝ թէ առ ի հօրէ իցէ կամ առ ի մօրէ ի տան ծնեալ կամ արտաքոյ, մի՛ յայտնեսցես զառականս նորա։ Զառականս դստեր ուստեր քո կամ զդստեր դստեր քո՝ մի՛ յայտնեսցես զառականս նոցա, զի առականք քո են։ Զառականս դըստեր կնոջ հօր քո մի՛ յայտնեսցես, զի համհօրեայ քոյր քո է... Զառականս հօրաքեռ քո մի՛ յայտնեսցես, զի ընտանի հօր քո է։ Զառականս մօրաքեռ քո մի՛ յայտնեսցես, զի ընտանի մօր քո է։ Զառականս հօրեղբօր քո մի՛ յայտնեսցես և առ կին նորա մի՛ մտանիցես, զի ազգական քո է։ Զառականս նուոյ քո մի՛ յայտնեսցես զի կին որդւոյ քո է... և զդուստր ուստեր նորա կամ զդուստր դստեր նորա մի՛ առնուցուս... զի ընտանիք են քո, ամբարըշտութիւն է։ Զառականս կնոջ եղբօր քո մի՛ յայտնեսցես, զի առականք եղբօր քո են։ Զառականս կնոջ և զդստեր նորա մի՛ յայտնեսցես, զդուստր ուստեր նորա և զդուստր դստեր նորա մի՛ առնուցուս... զի ընտանիք քո են, ամբարշտութիւն է»[9]։ Այսպէս ուրեմն՝ մեծ մարգարէն յիշելով ընտանիքի այն ան-

[9] Ղևտական. 18, 6—17.

դամիներին ու ազգակիցներին, որոնց հետ օրէնք չէ ամուսնանալ,—հօրը, հարազատ ու խորթ մօրը, համահայր կամ համամայր քրոջը, թոռան, հօրաքրոջը և մօրաքրոջը, հօրեղբօր կնոջը, որդու կնոջը և թոռան, յիշում է նրանց կարգումը և եղբօր կնոջը, աղջկան ու թոռան. բայց նա ինքը մի այլ դէպքում օրինադրում է եղբօրը ամուսնանալ հանգուցեալ եղբօր կնոջ հետ, եթէ հանգուցեալը ժառանգ չի թողել. «Եթէ բնակեսցին եղբարք ի միասին և մեռանիցէ մի 'ոք ի նոցանէ, և զաւակ ոչ լիցէ նորա, մի՛ լիցի կին մեռելոյն արտաքոյ առն ումեք, որ մերձաւոր չիցէ նորա. այլ եղբայր առն նորա մտցէ առ նա և առցէ զնա իւր կնութեան և բնակեսցի ընդ նմա: Եւ եղիցի մանուկն, որ ծնանիցի, յանուն վախճանելոյն, և մի՛ ջնջեսցի անուն նորա յԻսրայելէ»[10]: Այս օրինադրութեան շարժառիթն էլ անշուշտ ժողովրդական երկու տեսակ հակացողութեան արդիւնք է — իրաւաբանականի և կրօնականի. վերջինս մանաւանդ յատուկ է եղել նահապետական շրջանի ազգերին: Նրանց համոզմամբ՝ մահը ներկայ կեանքի շարունակութիւնն էր, միայն այն զանազանութիւնով, որ մարդիկ այս կեանքում իրանք են հոգում իրանց կերակուրը, ըմպելիքը, և այլն, իսկ իրանց մահից յետոյ այդ խնամը պիտի հոգան նրանց հոգիների համար ուրիշները—որդիքն ու ընտանիքը. վանորդոյ և վերջիններիս նշանակու-

---

[10] Երկրորդ Օրինաց 25, 5—7:

թիւնը՝ շատ մեծ էր նրանց համար, ըստ որում նրանք ոչ թէ միայն մեռած հօր հետ գերեզման պիտի դնէին նրա անհրաժեշտ պիտոյքները միւս կեանքի համար, այլ և ամէն ժամանակ այդ պիտոյքները պիտի պատրաստ ունենային տանը, որպէս զի հանգուցեալի հոգին միշտ լցուցանէր իր կարօտութիւնը. այս պատճառով ժառանգ չունենալը նշանակում էր զրկել իր հոգու կարօտութիւնը կամ փրկութիւնը հոգացողից. և այդ այնքան ծանր վիշտ էր, որ որդի չունեցողին ստիպում էր որդեգիր ունենալ, որ պիտի կատարէր նոյն պարտաւորութիւնները:

Եգիպտոսում, ուր Իսրայէլացիք այնքան երկար ժամանակ ապրեցին, կային մեռելոց համար սահմանած պաշտամունքներ և արարողութիւններ: Բացի դրանցից՝ այդ տեղ կային առանձին հոգացողութիւններ մեռելոց համար: Երբ մէկը մեռնում էր, նրա մարմինը ուղարկում էր զմռսողի մօտ քառասուն օր պահպանելու համար. իսկ ընտանիքում նրան պիտի ողբային երեսուն երկու օր. ապա հաւաքւում էին քառասուն երկու դատաւորները և մօտիկ տուած վկաների ցուցմունքներին՝ տալիս էին վճիռ հանգուցեալի թաղման համար: Եթէ հանգուցեալը իր վատ կեանքի համար զրկւում էր թաղումից, նրա բարեկամները մումիան դարձնում էին տուն, որպէս զի փրկեն նրան իրանց առատ բարի գործերով[11]:

[11] Դրեպէր. Պատմ. մտաւոր զարգացման Եւրոպիոյ. հատ. ա. Շուշի 1879. եր. 103—104:

Այսպէս՝ այդ երկրում ամէն մարդուն ապագայի նկատմամբ ոգևորող միակ յոյսն էր ընտանիքը, ժառանգները, որոնք պիտի քաշէին այդքան անհրաժեշտ բարդ հոգսերը. և անյոյս ու դժբախտ պիտի լինէր նա, ով զուրկ էր նրանցից, ով նկատում էր, որ այդ՝ կեա-մահուան անհրաժեշտ հոգսերի անկատար մնալու հետ միասին դադարելու է և իր անուան յիշատակութիւնը: Եւ այսպիսի ծանր դժբախտութիւնը անուշադիր չէր թողնիլ ժողովուրդը, այլ պիտի աշխատէր ուրիշ միջոցներով թեթևացնել այդպիսիների հոգեկան դառնութիւնը. «Եւ եղիցի մանուկն, որ ծնանիցի՝ հաստատեալ յանուն վախճանելոյն, և մի՛ ջնջեսցի անուն նորա յԻսրայէլէ»:

Մի ազգի նախնական հասկացողութիւնները՝ հարկաւ հանգամանքների և քաղաքակրթութեան աստիճանների հետ՝ հետզհետէ պիտի փոխուէին, մոռացուէին, տեղի տալով աւելի հասուններին, բայց միշտ մի որոշ ազդեցութիւն թողնելով նրա ապագայ կեանքի և մտածման եղանակի վրայ: Վերոյիշեալ հասկացողութեան ազդեցութեանն էին պարտական Իսրայէլացիք, որ ամլութիւնը համարւում էր նրանցում ծանր նախատինք[12]. Նոյն ազդեցութեանն են պարտական և Ասիայի ժողովուրդները և նոյն իսկ Հայերը, որ մինչև այսօր էլ սրտով զաւակի ծնունդը շնորհաւորում են իբրև ընտանիքի ուրախու-

[12] «Զինչ գործ գործեաց ընդ իս Տէր յաւուրս, յորս հայեցաւ բառնալ զնախատինս իմ ի մարդկանէ», ասում էր Զաքարիայի կինը, ամուլն Եղիսաբէթ, յղութիւնից յետոյ (Ղուկ. 1, 25):

թիւն, որովհետև յայտնում է հօր անուան ժառանգը և օջախի շարունակութեան ապահովութիւնը. օջախի, որի մէջ նախնեաց հոգիքն են հանգչում. մինչդեռ աղջկայ ծնունդը տխրութեան և արհամարհանքի պատճառ է լինում. Թէպէտև շատ հեղինակներ այս բանում կամենում են տեսնել միայն նախնական դարերի հայեացքը այն գործնական տեսակէտից, թէ արու զաւակը նահապետական ծնողաց համար գոյութեան կռւի մէջ աւելացնում էր նոր ոյժ. այնինչ աղջիկը վաստակ սպառող ծանրաբեռնութիւն էր նրանց համար։

---

Գ.

Զնայելով այն ամէն օրինադրութիւններին և ծէսերին, որ հին ազգերի կրօնները ու քաղաքակըրթութիւնը հետզհետէ սահմանում էին ամուսնութեան համար, այսու ամենայնիւ նրանք անկարող եղան ըմբռնելու նրա իսկական բարձր նշանակութիւնը. ըստ որում կինը, որքան էլ ամուսնութեան շնորհիւ ստանում էր մի տեսակ յարգանք ու ներբականութիւն ընտանիքի հեռաւոր և մերձաւոր արիւնակիցների առաջ, դարձեալ տղամարդ ամուսնու համար նոյն աղախինը, նոյն հպատակն էր, որպէս և էր շատ առաջ, զուրկ իրաւունքների հաւասարութիւնից. և ամէն ժամանակ, ամէն մի դէպքում ենթարկւած իշխողի բռնաւորական կամքի

անսարգական ու անտանելի հետևանքներին. վասնորոյ և իրաւազոր տղամարդի ու իրաւազուրկ կնոջ մէջ կայացած ամուսնութիւնը չէր կարող փոխադարձ սիրով կապուած՝ համամիտ ընկերակցութիւն լինիլ։

Միմիայն քրիստոնէութիւնը եղաւ ամուսնութեան մեծախորհուրդ և վսեմ նշանակութիւնը հաստատողը։ Աստուածային այս հրաշալի Սուրբ Կրօնի հիմն և հեղինակ Փրկիչը մարդկութեան բարոյական վիճակը կերպարանափոխող փրկարար Սէրը քարոզելով, Սէր առ Աստուած և Սէր առ ընկերը, և ընկերսիրութեան հետ բոլոր մարդկանց հաւասարութեան սկզբունքն աւանդելով՝ կերպարանափոխեց և կնոջ դրութիւնը, . հաստատելով ամուսնութիւնը իբրև աստուածադիր կանոն և եկեղեցու խորհուրդ՝ մարդու և կնոջ իրաւունքների հաւասարութեան վրայ, որ է երկու կողմի փոխադարձ սէրը և անբաժան կենակցութեան սուրբ պարտաւորութիւնը, որով այր և կին համարւում են մի մարմին աստուածազոյգ[13]։ Արարիչն այսպիսի միաւորութիւնն էր օրհնել իբրև հիմն մարդկային ազգի բնական աճման[14]. իսկ Քրիստոս հաստատեց իբրև աղբիւր բարոյական երջանկութեան և ընկերսիրութեան, որոնք առան-

---

[13] «Վասն այսորիկ թողցէ այր զհայր և զմայր՝ և երթիցէ զհետ կնոջ իւրոյ և եղիցին երկոքեան ի մարմին մի: Ապա ուրեմն ոչ են երկոքեան՝ այլ մի մարմին: Արդ՝ զոր Աստուած զուգեաց, մարդ մի մեկնեսցէ»: Մատ. ԺԹ. 5—6:

[14] «Եւ օրհնեաց զնոսա Աստուած՝ և ասէ. աճեցէք և բազմացարուք և լցէք զերկիր»: Ծննդ. Ա. 27:

ձին ընտանիքների մէջ առնելով՝ դառնում են և հիմունք հասարակական կեանքի բարօրութեան, վասնորոյ և Պօղոս Առաքեալը նմանեցնում է ամուսնական խորհրդաւոր միութիւնը Քրիստոսի և Եկեղեցւոյ միութեան[15]։

Այս հիմանց վրայ Քրիստոնէական Եկեղեցին ամուսնութիւնը սրբազան խորհուրդներից մէկը ճանաչելով՝ սահմանեց նրա համար հրահանգիչ կանոններ, համաձայն նրա բուն նշանակութեանը։ Այդ կանոնները պահանջում են — առաջին՝ որ ամուսնութիւնը կայանայ մի տղամարդի և մի կնոջ մէջ. երկրորդ՝ որովհետև կրկին է նրա նպատակը, բարոյական՝ փոխադարձ սէր, և բնական՝ որդեծնութիւն,—ուրեմն հարկաւոր է տղայի և աղջկայ յօժարական համաձայնութիւնը իբրև հիմն այդ սիրոյ. երրորդ՝ որ նրանք ունենան սահմանեալ որոշ հասակ, որ ընդունակ է կացուցանում տղային և աղջկան թէ՛ գիտակցական հասունութեան և թէ՛ որդեծնութեան. չորրորդ՝ որ ամուսնութիւնը օրհնելու և օրինական ճանաչելու համար պէտք է զգուշանան և հեռու մնան ազգականութեան կամ արիւնակցութեան մերձաւոր աստիճաններից։ Եկեղեցին այս վերջին պահանջը օրինադրելով՝ ի նկատի ունի նախ՝ այն ընդհանուր համոզումը, որ յիշեցինք վերևում, թէ՝ մերձաւոր արիւնախառնութիւնը բարոյական և ֆիզիքական վը-

---

[15] «Խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ ի Քրիստոս և յեկեղեցի»: Եփես. Ե. 32:

նասնների պատճառ է լինում. երկրորդ՝ ընտանեկան կեանքի սրբութեան գաղափարն ու բարուց մաքրութիւնը անաղարտ պահպանել մէկ ընտանիքի միմեանց հետ շարունակ տեսակցող և նիստ ու կաց ունեցող անդամների մէջ. երրորդ՝ մի քանի ընտանիքներ մէկ մէկի հետ բարեկամակցութիւնով կապելով՝ մէկը միւսին սիրելու և օգնելու պարտաւորութեան գաղափարը զօրացնել։ «Վասն զի արդարացի ևս դատեալ եղև պատճառ սիրոյ. զի մարդիկ սակս ունելոյ զօգտակար և զգովելի միակամութիւն՝ առ իրեարս յօդեսցին ոչ եսպէս կապով հարազատութեան... և առ ընդարձակս յօդակապելոյ զընկերական կեանս՝ բազում ընտանութիւնք ի բազում մարդիկ տեղի ունիցին»[16]։ «Եւ քանզի ամենայն փոյթ Աստուծոյ և աստուածայնոցն՝ յաղագս սիրելոյ է զմիմեանս մարդկան, վասն այնորիկ իրաւունս համարեցան որք հոգւով օրինադրեցին, զօտարացեալսն ի միմեանց միանալ սիրով ամուսնութեանն կապակցութեամբ. իսկ զմերձաւորսն արեամբ բաւական վարկան համազգութեամբն միայն ունել զհաղորդութիւն սիրոյ առ իրեարս։ Եւ այս է առաջին պատճառ՝ ոչ տալոյ թոյլ համացեղեցն ամուսնութեան. են և այլք հոլովք, զորս իմաստնոց թողումք քննել»[17]։

---

16 Օգոստինոս. Յաղագս քաղաքին Աստուծոյ. Վենետիկ, 1841, հատ. բ. գիրք 15. գլ. 16, եր. 91:

17 Ներսէս Շնորհալի, Ընդհանրական, Վենետիկ, 1838, եր. 166:

«Հարց. վասն Էր ի հին օրէնս եղաւ յիւր ազգէն առնուլ հարսն, և ի նորս՝ յօտար ազգէ:

Պատասխանի... ի նորս՝ յօտար ազգս առնել խնամութիւն, զի սէրն սփռեսցի և տարածեսցի ի բազում ազգս» [18]:

Թէև մեր նպատակն է քննել ամուսնութեան հաս ու չհասի խնդիրը մեր եկեղեցական կանոնադրութիւնների հիման վրայ, բայց և այնպէս հարկաւոր է այստեղ սկզբում մի համառօտ ակնարկ ձգել ընդհանուր եկեղեցական կանոնադրութիւններին. ըստ որում բոլոր եկեղեցիք իրանց միութեան դարերում հրահանգուել են միանման կարգերով և սովորութիւններով. մի այդպիսի ակնարկի պէտք կունենանք մի անգամ ևս յետոյ, երբ հարկ կ'լինի յիշել միւս եկեղեցիների ժամանակից յետոյ այս խնդրի նկատմամբ արած փոփոխութիւններն ու կարգերը, որպէս զի բացատրել կարողանանք, թէ հայ եկեղեցական կանոնադրութիւնները, որ զանազան ժամանակ սահմանուել են, որքան ազատ, ինքնուրոյն բնաւորութիւն ունին և որքան ենթարկուած են օտար ազդեցութեան:

Ի՞նչպէս է վարուել ընդհանուր քրիստոնեայ եկեղեցին ամուսնական հաս ու չհասի նկատմամբ առաջին դարերում:

Մինչև չորրորդ դարու սկիզբը եկեղեցին առանձին

---

18 Գրիգոր Տաթևացի, Հարցմանց, Կ. Պոլիս, ՌՃՀԸ Թ. Հ. եր. 612:

ինքնասահման օրինադրութիւն չէ ունեցել ամուս-
նական չհասութեան աստիճանների համար. այլ
վարուել է մասամբ մովսիսական և մասամբ հռոմէա-
կան օրէնքներով[19]։ Արդէն յայտնի է, թէ առաջինը՝
մովսիսական օրէնքը՝ թոյլ է տալիս ամուսնութիւնը
բաւական մերձաւոր ազգականների մէջ. այնպէս որ
չորրորդ աստիճանի ազգականները ամուսնանում են։
Երկրորդը՝ հռոմէական օրէնսդրութիւնը՝ երկու տե-
սակ էր բաժանում արիւնակցութեան ազգականու-
թիւնը — ուղղագիծ և կողմնագիծ։ Ուղղագիծ է
այն, որ ծնողներից ուղիղ գծով վայրընթաց իջ-
նում է նրանց սերնդին. և որոնք են — ծնողք, նը-
րանց որդիք, (ուստր կամ դուստր), թոռներ, թոռ-
նեայք, ծոռթոռնեայք և այլն. կամ վերընթաց բարձ-
րանում է ծնողներից դէպի պապը կամ մամը, և
նրանց ծնողները. իսկ կողմնագիծ արիւնակիցներ
նրանք են, որոնք չեն սերւում մէկը միւսից ուղիղ
գծով, այլ իբրև ճիւղեր յառաջանում են մի ար-
մատից։ Այս գծից պատկանում են եղբայր ու քոյր,
թէ հարազատ և թէ խորթ, հօրեղբայր, մօրեղբայր,
հօրաքոյր, մօրաքոյր, պապեղբայր, մամեղբայր և
այլն[20]։ Ուղղագիծ արիւնակիցների ամուսնութիւնը
յիշեալ օրինադրութիւնով արգելւում էր անպայ-

[19] Опытъ Курса Церковнаго законовѣдѣнія, выпускъ второй, СПБ, 1851, եր. 437.

Ամուսնութիւնը ըստ Հայոց եկեղեցական իրաւաբանութեան. Վ. վ. Բաստամեանց. «Փորձ», 1880, նոյեմ., դեկտ. եր. 155:

[20] Նոյն, երես 141:

մանօրէն. այսինքն՝ որքան էլ հեռու լինէին միմեան-ցից, դարձեալ չէին կարող միմեանց հետ ամուսնանալ[21]. իսկ կողմնագիծ արիւնակիցների ամուսնութիւնը արգելւում էր երրորդ աստիճանում և թոյլատրւում չորրորդում[22]: Արգելւում էր ամուսնութիւնը քրոջ, հօրաքրոջ, մօրաքրոջ, հօրեղբօր, մօրեղբօր հետ, և թոյլատրւում էր երկու եղբայրների կամ երկու քոյրերի կամ եղբօր ու քրոջ զաւակների մէջ: Թէ եկեղեցին սկզբում վարւել է մովսիսական և հռոմէական օրէնսդրութիւնների համաձայն, տեսնում ենք թէ՛ այդ ժամանակների զանազան եկեղեցական աւանդութիւնների ժողովածուի — առաքելական կոչւած կանոնների յօդւածներից և թէ՛ Ս. Օգոստինոսի և այլոց վկայութիւններից: Առաքելական կոչւած կանոններից 19-րդը (Հայերէնում ԺԷ) ասում է. «Որոյ երկուս քոյրս առեալ է կամ քեռորդի (ստորագրի կանոնագր. եղբօր դուստր), ոչ կարէ ժառանգաւոր լինել»[23], որից պարզապէս

---

[21] Опытъ Курса Церк. законов. եր. 437:

[22] Կողմնական գծի ազգականութեան մէջ այդ օրինադրութիւնը առաջին աստիճան չէ հաշւում, այլ սկսում է ծիւղագրութիւնը եղբայրներից ու քոյրերից: Որքան ծնունդ կամ անձն կայ, այնքան էլ և աստիճանն է համարւում. երկու եղբայր, կամ եղբայր ու քոյր երկու աստիճան են կազմում, որովհետև երկու ծնունդ կայ: Նոյն ձևը գործ է ածւում այժմ արևմեան եկեղեցիներում, որպէս և մեզանում:

[23] Արևմտեան եկեղեցում առաջին անգամ 5-րորդ դարու վերջում՝ Վանական Դիոնիսիոս փոքր'ի ձեռքով թարգմանւեցան

երևում է, թէ եկեղեցին չի թոյլատրել ամուսնանալ (կնոջ մեռնելուց յետոյ) քենու հետ և եղբօր կամ քրոջ դստեր հետ, ուրեմն՝ երրորդ աստիճանում, որ ասել է՝ թէ ճիշտ այն աստիճաններում, որոնք արգելում էին մովսիսական և հռոմէական օրէնքները։

Դեռ ուղղակի միւս աղբիւրին՝ սուրբ Օգոստինոսին չդիմած՝ հարկաւոր ենք համարում մի քանի

---

յունարէնից Առաքելական կոչուած կանոններ Թուղ լիսուն, բայց Հռոմի պապ Որմիզդաս հրաման արձակեց արեւմուտքում կեղծ և անվաւեր համարել այդ կանոնները: Թէև յետոյ Լատերանեան ժողովը, որ գումարւեց Հռոմում 769 Թւին ընդունեց այդ յիշեալ 50 կանոնները:

Վեցերորդ դարու սկզբում Կ. Պօլսի պատրիարք Յովհաննէս Սխոլաստիկոսը յօրինելով յոյն լեզւով կանոնագիրք՝ կարգեց նրանում Առաքելական կոչմամբ 85 կանոններ, ասելով՝ Թէ ինքն առնում է հին յունական կանոնագրքերից: Բայց արևելեան յունական եկեղեցումն էլ կասկածն ու տարակուսութիւնը այդ կանոնների առաքելական լինելու և նրանց Թւի մասին այնքան զօրացել էր, որ եօԹներորդ դարում Տրուլեան կամ Հինգվեցեան ժողովը, որ գումարւեց 692 Թւին Կ. Պօլսում հարկ տեսաւ պաշտօնապէս վաւերացնել այդ 85 կանոնների առաքելական ծագումը, ասելով իր երկրորդ կանոնի մէջ. «Սուրբ ժողովս բարւոք և արժանի գտաւ նոյնպէս, որ հաստատուն և անքակտելի պահպանուին Ս. Հարց յառաջ քան զմեզ ընդունած և հաստատած և մեզ Ս. Առաքելոց անուամբ աւանդած ութսուն և հինգ կանոնները»: Ընդունելով այդ կանոնները՝ Տրուլեան ժողովը մերժում է Առաքելական կոչւած սահմանադրութիւնը, որ «ի ձեռն Կղեմայ», գտնելով նրանում ինչ ինչ կեղծ և բարեպաշտութիւնից օտար յաւելւածներ: Տրուլեան ժողովի այս առաջին

խօսք տալ Հ. Վ. Բաստամեանցի սխալ ենթադրու-թեան մասին, որ անում է առաջին չորս դարերի թոյլատրած աստիճանների մասին, կամենալով հաս-տատել իր ասածը առաքելական կոչուած վերոյիշեալ կանոնով և ս. Օգոստինոսի խօսքերով։ Պէտք է ա-սած, որ այդ ենթադրութիւնը, որ նա անում է այդ մասին, հակասում է իր փոքր ինչ յառաջ ասա-ծին։ Ասելով, թէ «սկզբում եկեղեցին բաւական էր

պաշտօնական վաւերացումն կրկնեց երկրորդ անգամ և 787 թւին գումարւած Կ. Պօլսի ժողովը (եօթներորդ տիեզերական). սա-կայն ոչ առաջինի և ոչ վերջինի վկայութիւնը չունեցան նշա-նակութիւն արևմտեան եկեղեցու համար, նա պահեց միայն 50 կանոնը: Պէտք է ասել, որ արևմտեան եկեղեցու նշանաւոր կա-նոնագէտները այդ կանոնների առաքելական ծագման մասին կասկածը միշտ քննութիւնների նիւթ են արել, և նրանցից շա-տերը—Պիէր դը-Մարքա արք-եպիսկոպոսը, Թիւէրիչ անգղիա-ցին և ուրիշները ապացուցանում են, թէ այդ կանոնները մա-սամբ յօրինւած են երկրորդ և մանաւանդ երրորդ դարում. իսկ ոմանք էլ պնդում են, թէ նրանցից մի քանիսը յիշեալ դարերից էլ յետոյ, չորրորդ և հինգերորդ դարերումն են գրւած: Բայց և այնպէս շատերը յիշեալ կանոնների ծագումը քննող կանոնագէտ-ներից և հեղինակներից ընդունում են, որ այդ կանոնների մի մասը ծագումն առած պիտի լինի առաքելական բանաւոր աւան-դութիւններից, ինչպէս ցոյց է տալիս նրանց խորին հնութիւնը*: Այսպէս ուրեմն այդ կանոնները իբրև առաքելական վաւերակա-

* Առաքելական կանոնների առիթով խօսելիս աչքի առաջ ունեցանք երկու աշխատութիւն.

1. Histoire des Conciles, Léfélé. Paris, 1869. հատ. ա. եր. 611—615:

2. Опытъ Курса Церк. закон. եր. 339:

համարում վարուել մասամբ մովսիսական օրէնքով և մասամբ հռոմէական օրէնսդրութեամբ, օրինաւոր համարելով ամուսնութիւնը կողմնազիծ արենակիցների համար չորրորդ աստիճանում», կամենում է այն էլ ասած լինել, թէ ընդունելով՝ որ ժամանակակից քրիստոնեաների խիստ. բարոյական կեանքը անշուշտ աւելի կընդարձակէր չհասութեան սահմանը, իբրև հաստատութիւն այս վերջին ասածի, մատնանիշ է լինում եկեղեցական աւանդութեան գոյութեանը, այսինքն առաքելական կոչուած կանոնների վերյիշեալ 19-րորդ յօդուածի և ս. Օգոստինոսի խօսքի վրայ. «Այդ աւանդութեան և սովորութեան

---

նութիւն չունենալով՝ իբրև ժողովածու հնագոյն աւանդութիւնների՝ վայելել են ընդհանուր եկեղեցու մէջ կանոնական զօրութիւն: Հայ կանոնագրքերում տրուած են նախ առաքելական սահմանադրութիւնը «կանոնք և սահմանք զոր եդին աշակերտքն Քրիստոսի ի սուրբ եկեղեցի յետ վերանալոյ Տեառն ժողովեալք ի վերնատունն» վերնագրով, և 34 Թւով, յետոյ կանոնները նոյնպէս 85 Թւով և այսպիսի վերնագրով «Կանոնք երկրորդ առաքելական ի ձեռն Կղեմայ»: Մեր եկեղեցական ժողովներից ոչ մինը չի տուել մի որ և է որոշումն այդ կանոնների մասին, որպէս և առհասարակ մեր կանոնագրքերում մուտք գտած զանազան ժողովների և եկեղեցական հարց կանոնների մասին: Հայ օրինակների յիշեալ առաջին բաժանման (առաք. սահման.) յօդ. 34, յառաջ բերելով մովսիսական պատուէրը—«Մարդ ոք մարդ առ ամենայն ընտանութիւն մարմնոյ իւրոյ մի՛ մերձեսցի» ևայլն, ասում է նոյնպէս և սահմանեալ առաքելական կանովնաց, «մարդ ոք մարդ առ ամենայն ընտանութիւն մարմնոյ իւրոյ մի՛ մերձեսցի կամ շնութեամբ կամ ամուսնութեամբ, մինչև ի չորրորդն զարմն չունի իշխանութիւն առնել»:

զօրութեամբ եկեղեցին արգելում էր, ասում է, ինչպէս վկայում է ս. Օգոստինոսը, ազգականների ամուսնութիւնը չորրորդ աստիճանում», Թէպէտ Հռոմէական օրէնքը, ինչպէս վերը տեսանք, թոյլ էր տալիս ամուսնութիւնը այդ աստիճանում նաև քրիստոնէութեան ժամանակ»[24]։

Առաքելական 19-րդ կանոնը երրորդ աստիճանին արգելք դնելով՝ չորրորդին թոյլ է տալիս, այն էլ մանաւանդ եկեղեցու ժառանգաւորների համար. ըստ որում միայն երկրորդում ամուսնացածներին է զըրկում ժառանգաւորութեան իրաւունքից, և եթէ եկեղեցականների համար չորրորդ աստիճանը ապօրինի չէր համարում, չէր համարիլ մանաւանդ ժողովրդի համար։ ԼԴ. կանոնն էլ, որ նախընթաց

---

[24] «Փորձ» 1880, նոյեմ., դեկտ. եր. 155. հ. Բաստամեանցը այդ հակասութիւնը անում է ենթարկւելով ուրիշի ազդեցութեան և կրկնելով այն մի և նոյն կարծիքը և գրեթէ խօսքերն անգամ, ինչ որ ասում է Опытъ Курса Церк. закон. գրքի հեղինակը. (եր. 437—438). վերջինս ասում է. «Քրիստոնէութեան բուն սկզբում եկեղեցին չէր թոյլատրում ամուսնութիւն կողմնական գծի համար գոնէ մինչև չորրորդ աստիճանը կամ մինչև երրորդ աստիճանը ներփակմամբ, ինչպէս երևում է նրանից, որ քրոջ կամ եղբօր զաւակների հետ ամուսնացածներին եկեղեցականութեան մէջ ընդունել արգելում էին առաքելական կանոնները. իսկ յետոյ ասում է. «եկեղեցում պահւող աւանդութիւնների ու սովորութիւնների համեմատ... չորրորդ աստիճանի, այսինքն՝ եղբօրորդւոց ամուսնութիւնները չէին թոյլատրւում, թէև հռոմէական օրէնքները թոյլատրում էին նաև քրիստոնէութեան ժամանակ»:

ծանօթութեան մէջ յիշեցինք, ուղղակի ասում է. «Մինչև ի չորրորդն զարմն չունի իշխանութիւն»։ Իսկ ս. Օգոստինոս ոչ միայն ասած չունի, թէ եկեղեցին արգելում էր ազգականների չորրորդ աստիճանի ամուսնութիւնը, այլ ընդհակառակն ասում է թէ՝ ընդունած օրէնքով (մովսիսականով) այդ չէր արգելւում, և նոր օրէնք էլ դեռ չէր սահմանած այդ մասին մինչև իր ժամանակը, (Օգոստ. Ծնու. 354 թ. ձեռնադրուեց եպիսկոպոս 395 թ. և վախճ. 430 թ.) Թէպէտև սովորութիւնը և դէպի մերձաւոր արենակիցը բնականաբար զգացող ամօթխածութիւնը հետզհետէ նուազացրել և գրեթէ վերջացրել էին այդ աստիճանի մերձաւոր ամուսնութիւնը. «Ապաքէն անդենկացեալ գիտեմք, զի առ մերով իսկ ժամանակաւ ամուսնութիւնք եղբօրորդւոց և դստերաց՝ սակս մերձաւորութեանն առ եղբայրական աստիճան՝ դուն ուրեք լինէին ըստ սովորութեան, որում ըստ օրինաց լինել ըմբռն էր. զի աստուածային օրէնք զայս ոչ արգելուլին և մարդկայինն չև ևս արգելեալ էր, սակայն եղեալն իսկ իբր օրինաւոր՝ խարշումն բերէր սակս հուպ զօրինաւորին գոլոյ. և որ լինէր ընդ զըստեր եղբօր (երրորդ աստիճան), կարծիւր ընդ քեռն զոգցես եղեալ զի և նոքա սակս կարի մերձաւորութեանն եղբարք միմեանց կոչին... Այլ արդ ո՞ւմ իցէ յիրկուանալ՝ զի առաւել պարկեշտութեամբ արգելան այժմ ամուսնութիւնք եղբօրորդւոց կամ դստերաց ոչ միայն սակս պատճառացն ասացելոց, որ է՝ վասն բազմացուցանելոյ զխնամութիւնս....

այլ և չգիտեմ զիա՞րդ ի մարդկային ամօթխածութեան բնաւորական կայ ինչ մի գովելի, զի որում պատիւ ընել վայելուչ է սակս մերձաւորութեանն, խորշի առփանս բերել՝ թէև առ ի ծնունդ. ըստ որում տեսանեմք զի և ամուսնականն ամօթխածութիւն պատկառէ»[25]։

Սակայն եկեղեցին ունենալով աչքի առաջ, ինչպէս վերևում ասել ենք, երեք պատճառներ — արիւնախառնութեան վտանգաւորութիւնը, ընտանիքի բազմաթիւ համաբնակ անդամների բարուց մաքրութիւնը և աւելի օտար ընտանիքները բարեկամութիւնով իրար հետ կապելու օգտաւէտութիւնը՝ հետզհետէ պիտի ջանք գործ դնէր արգելել մերձաւոր ազգականների ամուսնութիւնը։ Այս ջանադրութիւնը եթէ դեռ ընդհանուր գրաւոր օրէնք սահմանելու չափ յաջողութիւն չի ունենում մինչև չորրորդ դարը, գոնէ անշուշտ իր ազդեցութիւնն ունենում է ժամանակակից սովորութեան մէջ առնելիք փոփոխութիւնը ընդունելու պատրաստութեան վրայ։

---

[25] Ցաղագս քաղաքին Աստուծոյ. եր. 93—94։ Եթէ Ս. Օգոստինոսի այս խօսքերը «Առաւել պարկեշտութեամբ արգելան այժմ ամուսնութիւնք եղբօր որդւոց կամ դստերաց» հասկացին իբրև եկեղեցու օրինադրութիւնով արգելւած, այն ժամանակ նկատելու է իբրև անհասկանալի խօսք նրա նախընթացը. «Ապաքէն... առ մերով իսկ ժամանակաւ ամուսնութիւնք եղբօր որդւոց և դստերաց... դուն ուրեք լինէին ըստ սովորութեան, որում ըստ օրինաց լինել ըմբռն էր, զի աստուածային օրէնք զայն ոչ արգելուին և մարդկայինն չև ևս արգելեալ էր»։

Զորրորդ դարում արդէն տեսնում ենք մի քանի եկեղեցականների և եկեղեցական ժողովների սահմանած կանոններ չհասութեան խնդրի մասին, թէև այդ կանոնները դեռ չէին հեռանում մովսիսական և հռոմէական օրէնսդրութեան սահմանից։ Այսպէս՝ Նէոկեսարիայի ժողովը (314, 325) իր կանոնադրութեան բ. յօդուածով արգելում է մի կնոջ՝ երկու եղբօր (մէկի մեռնելուց յետոյ) կին լինել. «Կին եթէ լինիցի երկուց եղբարց, մերժեսցին լիերաց. կինն մինչև ի մահ ընդ ունկնդիրսն կացցէ, նոյնպէս և այրն»[26]։ Ս. Բարսեղ Կեսարացու (ծն. 329 և † 379 թ.) կանոնադրութեան 68 յօդուածը ապաշխարանք է սահմանում արգելուած աստիճաններում ամուսնացողների համար. իսկ 75, 76 և 87 յօդուածները որոշում են արգելող աստիճանները.—եղբայր և քոյր, թէ հարազատ լինին և թէ խորթ, եղբօր կին և քենի, (կնոջ քոյր)[27]։

---

[26] *Կանոնագիրք Սինոդի. եր.* 117*: Հարկաւոր ենք համարում յայտնել, որ մենք օգուտ ենք քաղել տասը տարի առաջ Շուշւայ վիճ. կոնսիստորիայի կանոնագրքից, որ գրած է «ի Կամենեց քաղաքի ի Թուին Հայոց ՌՂՋ». և այժմ Սինոդի կանոնագրքից. ուր որ կարևոր ենք համարել վերջինից առաջ բերել կանոններ, նշանակում ենք միշտ աղբիւրը. իսկ ուր չենք նշանակում, հասկանալու է առաջինը:*

[27] Опытъ курса церк. законовѣдѣнія, *եր,* 75, 82 *և* 96*: Մեր ձեռագիր կանոնագրքերի մէջ առաջ են բերած Աթանաս Աղէքսանդրացու անունով հարց ու պատասխանով կազմած* 80 *կանոններ, մինչդեռ յոյն-ռուս եկեղեցու վարդապետը՝ սոյն վերոգրեալ գրքի հեղինակը՝ յառաջ է բերում նոյն Աթանասի ա-*

*Սակայն արեւելեան եկեղեցին այդ բոլոր ջանքերով Հանդերձ դեռ չէ կարողանում մեծ քայլեր անել դէպի իր փափագի իրագործումը, ըստ որում յոյն Հռոմէական օրէնսդրութիւնը դեռ շարունակում էր տալ արիւնակիցների չորրորդ աստիճանի ամուսնութիւնը (երկու եղբօր, կամ երկու քրոջ կամ եղբօր ու քրոջ զաւակների մէջ), մինչեւ որ Մեծն Թէոդոս ունկնդիր լինելով եկեղեցու ձայնին՝ 385 թւին սահմանած օրէնքով արգելում է չորրորդ աստիճանի ամուսնութիւնը. Թէեւ նրա որդիքը՝ Արկադիոս եւ Ոնորիոս (նոյն դարու վերջում եւ Հինգերորդի սկզբում) դարձեալ իրաւունք տուին, միայն ամեն անգամ պիտի ստացւէր բարձրագոյն իշխանութեան*

---

*նունով երեք կանոն, որոնց բովանդակութիւնը բոլորովին տարբեր է մեր կանոնագրքերից. նոյնպէս մեզանում յառաջ են բերւած Բարսեղ Կեսարացու անունով 327 կանոններ, այն ինչ նոյն գրքի մէջ Բարսեղի կանոնների թիւը 92 է: Մեր կանոններից շատ սակաւները միայն համապատասխանում են այդտեղ կարգածներին իրանց բովանդակութիւնով: Այդ երկու անձանց անուններին ընծայած հայերէն կանոնների մէջ գտնում ենք յօղուածներ չհասական խնդիրների մասին. այսպէս օրինակ՝ Ս. Աթանասի կանոնների ժե. յօղուածը.*

*«Հարց. Եթէ որ հարազատի եղբօր կամ հարազատի քեռադուստր կին առնիցէ եւ նովիմբ կեցցէ մինչեւ ցվախճանն, որպէս պարտ է նայել ընդ նուսին եւ կամ որպէս հրաման տալ ի սրբութիւնսն մերձենալ:*

*«Պատ. Չէ արժան մերձենալ»: Բարսեղի—յօղ. հա.*

*«Եթէ որ առնու կին ի մերձաւոր յարենէ իւրմէ մինչեւ ի վեցերորդն եւ յեօթներորդն, նզովեալ եղիցի եւ մեկնեսցեն ի մի-*

թոյլտուութիւնը[28]: Նոյնն արաւ և Յուստինիանոս կայսրը վեցերորդ դարում, իր օրէնսդրութիւնով թոյլատրելով կողմնագիծ արիւնակիցների չորրորդ աստիճանի ամուսնութիւնը:

մեանց առաջնորդքն և վասն պսակին անարգելոյ հարիւր դրամ տուգանս տացէ յեկեղեցին»: Յօդ. 255 «ԵԹէ ոք յիւր արենէ և մերձաւորէ խնամուԹիւն առնէ մինչև ի չորրորդ և հինգերորդ ազգն, պսակն անվաւեր լիցի և պսակաղիրն լուծցի»: Ինչ կարծիք, որ այդ կանոնները յետին ժամանակի ձեռքերից յօրինուած ընծայուել են այդ եկեղեցականներին: Ուստի և ոչ մի նշանակուԹիւն չեն կարող ունենալ մեր ներկայ խնդրում: Այդ երկու եկեղեցականներն էլ յոյն եկեղեցու նշանաւոր հայրերիցն են. և եԹէ նոյն. եկեղեցին չի ճանաչում այդպիսի կանոններ, մեզ համար ոչ մի նշանակուԹիւն ունենալ չեն կարող. այստեղ յառաջ բերինք միայն այն նպատակով, որ չկարծւի Թէ լռելեայն զանց ենք արել:

Մեր կանոնագրքերի մէջ գտնում ենք Նիկիական ժողովի 20 կանոններից յետոյ դրուած առանձին գլխով նաև 114 յօդուածներ այս վերնագրով «Կանոնք երկրորդ Նիկիականք, զոր եդին ՅԺԸ. եպիսկոպոսունք կրկնաբանեալ կարճ ի կարճոյ»: Այդ յօդուածներից 33-րդը Նէոկեսարայի ժողովի բ. կանոնի կրկնուԹիւնն է. «Որ ամուսնացի երկուց եղբարց, մինչև ի վախճան որոշեսցի»: Նիկիոյ ժողովի կանոնները միայն քսան են Թւով, ինչպէս հաստատել են և հաստատում են շատ եկեղեցական հեղինակներ, (տես, Hist. des Conciles. Léfélé, Paris, 1869. հատ. ա. եր. 346—360, բայց, ինչպէս պիտի տեսնենք յետոյ, մեզանում այդ յաւելուած կանոնները ունեցել են նշանակուԹիւն, իբրև Նիկիականներ:

[28] Опытъ курса церк. законов. եր. 438. «Փորձ» 1880. եր. 150—151:

Ինչ որ յոյն-արեւելեան եկեղեցու համար ասացինք, պէտք է իմանալ և արեւմտեան հռոմէականի համար. այսինքն՝ որ նա էլ առաջին չորս դարերում վարւում էր մովսիսական և հռոմէական օրէնքներով, և միմիայն 5 և 6 դարերում ժողովներով կանոններ են սահմանւում արգելելու չորրորդ և հինգերորդ աստիճաններում ամուսնանալու իրաւունքը[29]:

## Դ.

Ի՞նչպէս է վարուել հայաստանեայց արեւելեան եկեղեցին քրիստոնէութեան առաջին չորս դարերում: Այս մասին մեր պատասխանն է.—Ճիշտ այնպէս, ինչպէս վարուել են յունական և հռոմէական եկեղեցիները: Իրաւ է, հռոմէական օրէնսդրութիւնը պաշտօնական նշանակութիւն չէր կարող ունենալ հայաստանի համար, սակայն թէ նրա անուղղակի ազդեցութիւնը, թէ մովսիսական օրէնքը և թէ միւս եկեղեցիների սովորութիւնը բաւական էին նրան հրահանգութեան համար[30]:

Եւ իսկապէս այդ է պատճառը, որ մեզանում

[29] «Փորձ» 1880, եր. 159—160:

[30] (Հեթանոս Հայաստանում) «կողմնագիծ ազգականների վերաբերմամբ կարելի է ենթադրել որ՝ ամուսնութիւնը ներելի էր համարվում բաւական մերձաւոր ազգականների մէջ. որպիսի սովորութիւնը շարունակվում էր և քրիստոնէութեան ժամանակ մինչև Ներսէս Մեծը»: Վ. վ. Բաստամեանց, «Փորձ» 1881, ապրիլ. եր. 52:

մինչև չորրորդ դարը ոչ մի կանոն, ոչ մի գրաւոր օրէնսդրութիւն չի սահմանուած ամուսնական չհասութեան մասին։ Կան յիրաւի մեր կանոնագրքերում Թադէոս Առաքեալի անուամբ կանոններ, որոնցից լբ. յօդուածը վերաբերում է ազգակցական չհասութեան, առանց աստիճաններ որոշելու. և այս է. «Հարցումն. Եթէ ազգականք ամուսնանան, զի՞նչ արասցուք. Պատ. Քակել արժան է ի միմեանց և ծանր ապաշխարութիւն դնել, զի չէ ամուսնութիւն, այլ յարակս պոռնկութիւն և ընդ անիծիւք արարչին». իսկ նորա նախընթացը (լա. յօդ.) վերաբերում է հոգևոր եղբայրակցութեան. «Որ մի մօր կաթամբ սնեալ են օտարք ի միմեանց, արժա՞ն է ամուսնանալ։ Պատ. Չէ արժան, զի ծնող և սնուցող մի համարին»։ Սակայն այդ կանոնները մեր նախալուսաւորչինը լինելու ոչ մի նշան չեն կրում, այլ պարզապէս նըկատւում են իբրև յետին ժամանակի յօրինուածներ[31], միայն հեղինակական նշանակութիւն ստանալու համար ընծայուած ս. Թադէոսին[32]. բայց, յայտ-

---

[31] «Մեր եկեղեցական կանոնագրքերի մէջ պատահում են 30—33 կանոններ Թադէոս առաքեալի, բայց... դոքա չեն պատկանում մեր առաջին լուսաւորչին, այլ յետոյ են յօրինուած». Նոյն, «Փորձ», 1880. օգոստ. և սեպտ. եր. 83:

[32] Թէ ո՞րպիսի նշանակութիւն են գտել այդ կանոնները մեր եկեղեցում, կարող է ապացուցանել Ներսէս Ե.-ի կարծիքը հոգևոր եղբայրակցութեան մասին, որ կոնդակով (յ 2 յունուարի 1854 Թ. № 1) գրում էր Բաղդասար մետրապօլտին. «Իսկ զի ձեր կանոնագիրք ըստ օրինակելումն ձեօք... Թէ խնամութիւնն

նի բան է, ընդհանուր քրիստոնեայ եկեղեցու ձըգ-տումն ու հայեացքները յատուկ լինելով և հայ եկեղեցուն՝ նրանում ևս պիտի յառաջ բերէին նոյն ջանադրութիւնը, ինչ որ տեսանք միւսներում։ Այդ ջանադրութեան առաջին պտուղը պիտի համարել Ներսէս Մեծի Աշտիշատի առաջին ժողովում 365 թւին հաստատած կանոնը ամուսնական չհաստա-թեան մասին։ Ինչպէս քանի՞ աստիճանի ամուս-թիւնն է արգելել այդ ժողովը, թէև պարզ յայտնի չէ մեզ, որովհետև ոչ պատմութիւնն է հասցրել և ոչ կանոնագիրքը. Խորենացին, օրինակ, բաւականա-նում է միայն ասելով. «Եւ... յազգաց նախարարացն բառնայ... զմերձաւորաց խնամութիւն զոր վասն ագահելոյ սեպհական ազատութեանն առնէին[33]։ Սա-կայն կարելի է հաստատապէս ասել՝ թէ այդ ժողո-վում արգելուած պիտի լինի նախ՝ արիւնակցական չորրորդ աստիճանի ամուսնութիւնը. այլապէս բա-ցատել չի կարելի ժողովի կանոնադրութեան շար-

---

ոչ մարմնաւոր ազգակցութիւն է և ոչ հոգևոր.... և ոչ ի ստենէ... Այսպիսի դատողութեանց ոչ տեղի տան միտք իմ, զի ատինք ոչ կացուցանեն զաղգակցութիւն յազգս քրիստոնէից, որ-պէս և յայտ է. զի զկաթնառատ ստինս միոյ կնոջ ընկալնուն բա-զումք որբոց այլոց ծնողաց. բայց միայն մահմետականք յարգե-լով զծնունդ ստեանց ճանաչեն մերձաւոր զայնպիսիսն ծնեցելոյն յարգանաց ստնդիին... անուանելով զստնդուն սուդ անասի կամ սուդ դարդաշի կամ սուդ բաջիսի»: Այս ասողը Թադէոս Առաքեալի Աթոռակալն է, և գիտէր, որ նրան ընծայւած կանոն-ներից մէկը «ծնող և սնուցող մի է» համարում:

[33] Խորենացի. պատմ. Վենետիկ. 1827, եր. 418:

ժառիթը. երկրորդ՝ ամուսնութիւնը եղբօր կնոջ, որդու կնոջ, եղբօր որդու կնոջ և հօրեղբօր կնոջ հետ։ Այսպէս ենթադրել է տալիս գոնէ Փաւստոս Բիւզանդացու այս խօսքը. «Եւ զի լինիցին ամուսնութիւնք օրինաւորք... և փախչել աւելի ի մերձաւոր և յազգին տոհմակից խառնակութեան ամուսնութենէ և մանաւանդ ի մերձաւորական ի նուաց»[34]։ «Նու» բառը մեր նախնիք այնպէս ընդարձակ մտքով էին գործ ածել, որպէս այժմ գործ են ածում Արարատեան և այլ հայկական նահանգներում նրա աշխարհաբարը — հարսն բառը, որ նշանակում է և՛ որդու կինը և՛ եղբօր կինը և՛ եղբօր որդու կինը և՛ հօրեղբօր կինը։

Այս չափ միայն ասելով Աշտիշատի ժողովի կանոնադրութեան մասին, կարևոր ենք համարում նկատել, որ Խորենացու յառաջ բերած նախարարների մերձաւոր ամուսնութեան սովորութեան պատճառը՝ «զոր վասն ագահելոյ սեպհական ազատութեանն տանէին», որ և կրկնել և կրկնում են շարունակ մեր բոլոր պատմագիրները, ամենևին հիմք չունի։ Ոչ թէ միայն նախարարների մէջ էին տեղի ունենում մերձաւոր ազգակիցների ամուսնութիւններ, այլ ընդհանուր ազգի մէջ, քանի որ եկեղեցին դեռ. սահմանած չունէր նրանց համար արգելքներ[35]։ Աւելի հա-

[34] Բիւզանդ. տպագրութիւն չորրորդ գլ. Գ. եր. 148:

[35] Մեր կանոնագրքերում կան Ս. Գրիգոր Լուսաւորչի անուամբ կանոններ, զանազան խնդիրների նկատմամբ, իսկ ամուսնական չհասութեան մասին և. ոչ մի խօսք:

ւանական է կարծել՝ որ Աշտիշատի ժողովի մերձաւոր ամուսնութիւնը արգելող կանոնադրութիւնը չէր կարող գտնել նախարարների կողմից պատշաճաւոր ընդունելութիւն և գործադրութիւն, ըստ որում դժւարացնելու էր նրանց առաջւայ նման իրանց մօտիկ ազգականների հետ ամուսնանալով՝ պահպանել իրանց մէջ իրանց տոհմական արժանաւորութիւններն ու սեփականութիւնը[36]:

Աշտիշատի ժողովից 82 տարի անցած՝ մեր եկեղեցին հարկ է տեսնում Շահապիվանի ժողովում Յովսէփ կաթողիկոսի նախագահութիւնով սահմանելու.

---

[36] Աշտիշատի ժողովի կանոնադրութիւնը ամենից առաջ արհամարհեց ինքը Արշակ Թագաւորը, ամուսնանալով իր եղբօրորդու, Գնէլի Փառանձէմ կնոջ հետ: Արքայից պակաս չէին մնալու և նախարարները, որոնք ծանր էին համարում ընդհանրապէս այնպիսի մի կանոնադրութիւն, որ արգելում էր աւելի քան Նիկիական անուանեալ կանոնադրութիւնը: Այդ ապացուցանում է մեզ Շահապիվանի ժողովի 13-րորդ կանոնի այս խօսքերը. «Ապա թէ ոք ընդդէմ եկեալ ասիցէ թէ՝ ի Նիկիական կանոնսն ընդէր չէ այնպէս ծանր եղեալ» եւայլն: Նիկիական ասելով՝ այդ տըրտնջացողները ոչ թէ Նիկիոյ ժողովի 20 կանոններն են ունեցել աչքի առաջ, որոնցում ոչ մի խօսք չկայ այդ խնդրի մասին, այլ երկրորդ Նիկիական կոչւածների 33-րորդ յօդւածը. «Որ ամուսնացի երկուց եղբարց, մինչև ի վախճան որոշեսցի» (տես 27 ծանօթութիւն): Հ. Վ. Բաստամեանցը յիշեալ կանոնները ի նկատի չունենալով, դժւարանում է հասկանալ Շահապիվանի 13-րորդ կանոնի խօսքերը «թէ ի Նիկիական կանոնսն ընդէր չէ այնպէս ծանր եղեալ», ասելով թէ, «Նիկիոյ ժողովի 20 կանոնի մէջ ամենևին խօսք չկայ.... ամուսնական չհասութեան մասին»: «Փորձ», 1881, ապրիլ. եր. 56:

447 Թուին այս կանոնը. (յօդ. 13) «Որ զազգականն կին առնէ, այս պղծութիւնք և զզարշանք յայտնի լիցի և անուանեսցի մի՛ ի միջի ձերում... Արդ՝ մի ոք զքոյր և զքեռորդի, կամ զեղբօրորդի, կամ զհօրաքոյր որդի[37] կամ զայլ ոք յազգէ անդ իւրում մինչև ի չորրորդ զարմն կին զոք մի՛ իշխեսցէ առնել, զի մի՛ պատառումն լինիցի սուրբ հաւատոյն.... Արդ՝ եթէ ոք ընդդիմասցի այս կանոնացս, և հաստատ օրինացս, և ամբարշտեալ ի հեթանոսութիւն. և ի հրէութիւն կործանեսցի, ընդ նոսին եղիցի և բաժին նորա, և ի սրբոյ եկեղեցւոյն ստարացեալ եղիցի... մի ոք ընկալցի զպատարագն նորա քանզի պիղծ է առաջի տեառն պատարագ նորա... և եկեղեցի և կանոնք զապաշխարութիւն նորա ոչ ընդունին.... մինչև թողցեն և դարձցին յանզգամութենէն և ի պիղծ գործոյն։ Եթէ ոք այնպիսեացն պսակ օրհնեսցէ, կամ ի հարսանիսն երթիցէ, կցորդ եղիցի չարեաց գործոյ նոցա, և ի կարգէ պաշտօնէից հեռացեալ եղիցի և ի սրբութենէն և յօրէնս մի մերձեսցէ։ Եւ եթէ ոք եպիսկոպոս կամ երէց գացի ի խարհրդեանն, յաթոռոյն և ի քահանայութենէն անկեալ եղիցի, և ի կարգ պաշտօնէիցն մի՛ մերձեսցի։ Բայց որ խոտորեցան յօրինաց սրբոց և ի կարգէ

[37] Էջմիածնի գրադարան № 761 կրող կանոնագիրքը, որից առել է Ռ. Բաստամեանցը, դնում է հօրաքոյր և ոչ հօրաքոյր որդի, որպէս Սինօդի կանոնագրքումն է. և մենք ուղիղ ենք համարում վերջինս. հօրաքոյրը երրորդ աստիճան է, իսկ որդին չորրորդ:

եկեղեցւոյ, եթէ դարձցին ի պիղծ ամուսնութենէ՝ և մեկնեսցին ի միմեանց, ի ձեռն մեծամեծ սրոց, մինչև զկէս կենաց և յընչից իւրոց հոգոց իւրոց բաժին տացեն ի կարօտեալս և ի վշտագնեալս և ի ս. եկեղեցի. (և) զաւուրս կենաց իւրոց ապաշխարեալ, ի վախճանին թէ լինին հաղորդեսցի արժանի. ապա և գլխաւորք եկեղեցւոյն, որ ի խորհրդին են և որ զպսակն օրհնեաց, շ. (500) դրամ եպիսկոպոսն տուգանեսցի, և Ճ. տուգանեսցի երէցն (որ) պսակ օրհնեաց, և ապա մնասցեն յաթոռն ի քահանայութիւն։ Ապա եթէ նոքա ոչ մեկնեսցին ի պիղծ ամուսնութենէն, և պսակադիրն և քահանայքն, որ ի խորհրդին եղեալ են, մի՛ մնասցեն յաթոռն քահանայութեանն։ Թէ ապատ է, թէ շինական, օրէնք և կանոնք այդ կացցեն։ Արդ՝ եթէ ոք ընդդէմ եկեալ ասիցէ, թէ ի նիկիական կանոնսն ընդէ՞ր չէ այդպէս ծանր եդեալ — վասն զի ոչ ոք ունէր ակն, եթէ այդպիսի մեծամեծ չարիք և ոճիրք յաշխարհի գործիցին. այլ անդրէն մօտակտուր խզէին զչար արմատ կորստեանն»[38]։

Ճահապիվանի ժողովից ութսուն տարի յետոյ Ներսէս բ. Աշտարակեցի կաթողիկոսը 527 թւին գումարում է Դւնի երկրորդ ժողովը, որի սահմանած 21-րորդ կանոնը չհաստատուած ամուսնութեան առիթով ասում է. «Վասն որ զազգականն կին առնէ ցհինգերորդն մի՛ իշխեսցէ և զչորրորդն ապաշխա-

---

[38] Կանդնագիրք Սինոդի. եր. 270:

րեսցէ և երրորդք մեկնեսցին և ապաշխարեսցեն»։

Ուշադրութեան արժանի է այն տարբերութիւնը, որ սոյն կանոնի յիշած աստիճանների մասին ներկայացնում են մեր կանոնագրքերը։ Սինոդի օրինակը ասում է. «Վասն որ զողջականն կին առնէ զերրորդն մի՛ իշխեսցէ և զչորրորդն ապաշխարեսցէ, և երրորդք ապաշխարեսցեն»[39]։ Իսկ մեր միւս օրինակը, Շուշու կոնսիստորիայինը՝ տալիս է այդ կանոնը այսպէս. յօդ. 22. «Հինգերորդն մի իշխեսցէ և չորրորդն ապաշխարեսցէ և երրորդքն մեկնեսցին և ապաշխարեսցեն»։ Մենք աւելի ճիշտ ենք համարում Հ. Բաստամեանցի օրինակը և այն ենք յառաջ բերում, ընդունելով որ Դւնի ժողովը կամենում է միայն մի աստիճան աւելցնել Շահապիվանի ժողովի կարգադրութեան վրայ — բայց ոչ առանց ներողամտութեան դարձեալ. այսինքն՝ չորս աստիճան պահել և հինգերորդին թոյլ տալ ամուսնանալ վեցերորդի հետ։ Վասնորոյ չենք կարող համաձայնել Հ. Բաստամեանցի կարծիքին, թէ «ցհինգերորդն» ասելով ժողովը արգելում է և հինգերորդ աստիճանի ամուսնութիւնը։ Շահապիվանի ժողովի «մինչև ի չորրորդ զարմն» արդարև նշանակում է և չորրորդի արգելումը, ինչպէս ցոյց են տալիս նրա թւած մերձաւոր ազգականները, և «ի հրէութիւն կործանեցի» խօսքերը, որ նշանակում են մովսիսական օրէնքին հետևելը, բայց նրանով և Դւնի ժողովի «ցհինգ-

---

39 Նոյն. եր. 220։

երրորդն» ասելը, այսպէս բացատրելը կ՚նշանակէր կանոնի իմաստի պարզութիւնը շփոթել, ըստ որում բացայայտ է, որ այդ ժողովը անհնարին գտնելով միանգամայն արգելել չորրորդ աստիճանի արիւնակիցների ամուսնութիւնը, ստիպուած է մեղմացնելու Շահապիվանի կանոնը, այսինքն՝ վերջինիս նման այդ աստիճանի վրայ կատարուած ամուսնութիւնները ապօրինի և քակտելի չի հրատարակում, որպէս երրորդ աստիճանինը, այլ միայն ենթակայ ապաշխարութեան. «Չորրորդն ապաշխարեսցէ, և երրորդքն մեկնեսցին և ապաշխարեսցեն»։ Արդ՝ ի՞նչպէս կարելի է ընդունել, թէ մի ժողով, որ չորրորդ աստիճանը չի կարողանում քակտել, ժամանակի հանգամանքներին զիջանելով, մի նոր աստիճանով էլ արգելքն աւելացնում է[40]։

Վեցերորդ դարը Հայաստանի համար այն տագնապալից ժամանակներից է, երբ Հայաստանեայց եկեղեցուն մնում էր միայն մեծ զգուշութեամբ և

[40] Այդ իսկ պատճառով ճիշտ չենք համարում և Շուշու օրինակի ասելը. «Հինգերորդն մի իշխեսցէ»: Մենք հաւատացած ենք, որ եթէ համեմատուին զանազան քաղաքներում և վանքերում օրինակած կանոնները ցհասական խնդիրների մասին, պիտի տեսնուին նրանց ահագին տարբերութիւնը. և կարծում ենք, որ այդ լոկ պատահական, գրչի սխալներ չեն, այլ ցուցէ ունին իրանց ծագումը զանազան ժեմերի բռնած դիրքից ցհասական խնդիրների վճռելում, որոնք համարուել են ամեն ժամանակի համար օգտի անսպառ աղբիւր: Ներքևում կ'տեսնենք այս խնդրի առիթով և զանազան կեղծուած կամ անյայտ հեղինակների ծեփած ծեփծփած գրուածները:

մայրական գթով պահպանել իր զաւակներին սառչելու և օտարանալու ամէն դիւրութիւն ներկայացնող հրապոյրներից. այդ պատճառով և որ և է խըստութիւն կարող էր վատ հետևանքներ տալ։ Այդ ի նկատի ունենալով՝ Դւնի ժողովը վարւում է մեծ հեռատեսութիւնով — մի աստիճան աւելցնելով մի և նոյն ժամանակ խստութիւն չի գործ դնում հակառակ ընթացողների դէմ[41]։

Այդ հեռատես ներողամտութիւնով վարւում է Հայաստանեայց եկեղեցին և յետագայ Է-րորդ և Ը-րորդ դարերում։ Սիոն կաթողիկոսը զանազան բարեկարգութիւնների համար Աղւանից Պարտաւ քաղաքում ժողով կազմելով 768 թւին, ստիպւած է լինում դարձեալ մի կանոն սահմանել չհասական խնդրի մասին, ըստ որում տեսնում է, որ շատ յա-

---

[41] Յայտնի է, որ Աղւանից եկեղեցին ամենայն հպատակութիւնով ճանաչում էր Հայ Եկեղեցու իրաւասութիւնը. հետևաբար վերջինիս բոլոր որոշումներն ու կարգադրութիւնները պարտաւորական էին նրա համար. բայց 488 թւին Աղւանից Վաչագան թագաւորը և Շուփհաղիշէ կաթողիկոսը մի ժողով կազմելով Պարտաւում զանազան տեղական խնդիրներ կարգադրելու համար՝ սահմանում են նաև այս կանոնը. (յօդ. ժ). «Այր զերրորդ ազգի կին մի արասցէ, և զեղբօր կին մի արասցէ» (կանոն. Սինօդի, եր. 197)։ Ուրեմն Աղւանական ժողովը Դւնի ժողովից դեռ 40 տարի առաջ փոխում է Շահապիվանի ժողովի խիստ կանոնը և թոյլատրում չորրորդ աստիճանի արիւնակիցների ամուսնութիւն և հայ եկեղեցին զիջանում է այդ որոշման. ըստ որում մենք տեսնում ենք մեր կանոնագրքերի մէջ այդ ժողովի կանոնները, ուրեմն ընդունւած ի տեղեկութիւն և ի հրահանգութիւն։

ճախում են դէպքեր անխտիր ամուսնութիւնների եկեղեցական օրէնսդրութիւնով արգելած աստիճանների մերձաւոր ազգականների մէջ, մանաւանդ Հայ իշխանական տներում։ Բարեգութ Հայրապետը իր սրտի վիշտը յայտնելով այդ մասին՝ արգելում է չորրորդ աստիճանի ամուսնութիւնը, որով և վերստին ընդունում է Շահապիվանի ժողովի որոշումը։ Ահա Պարտաւի ժողովի կանոնը. յօդ. 16. «Առաջին սուրբ Հարքն իւրեանց ժամանակս արգելին զազատս և զանազատս յարեան մերձաւորութենէ. այժմ մեք լուծեալ տեսանեմք մանաւանդ ազատաց զկանոն սուրբ Հարցն. զի անխտիր խառնին յիւրեանց մերձաւորսն անարգ ամուսնութեամբ զուգեալք։ Արդ՝ յայսմհետէ մինչև ցչորրորդ զարմն մի իշխեսցեն ամուսնութեամբ զուգել. ապա թէ ոչ՝ նզովեսցին ի մէնջ, և ինքեանք տացեն պատասխանիս Աստուծոյ ի մեծութեան դատաստանի»[42]։

Պարտաւի ժողովից յետոյ մինչև երկոտասաներորդ

---

[42] Կանոնագիրք Սինօդի. եր. 195—196: Պարտաւի ժողովը ունի և մի կանոն (ժգ.) որով երկրորդ աստիճանի ամուսնութիւնը քակտելի է հրատարակում. «Երրորդաց զուգումն խառնակութիւն է, պղծագործ շնութիւն, անքաւելի յանցանք, այսպիսիքն, եթէ կամիցին ջնջել զմեղս, նախ որոշեսցին ի միմեանց իսպառ, ապա եղիցին ապաշխարութեան արժանի. և քահանայ որ զոգաւորութեան նոցին պատճառ լիցի, լուծցի և նզովեսցի»: Ուրեմն Պարտաւի ժողովը Դւնի ժողովի նման քակտելի է ընդունում երրորդ աստիճանը. իսկ չորրորդ աստիճանի նկատմամբ տարբերում է նրանով, որ վերջինը ապաշխարութիւն է սահմանում, իսկ Պարտաւինը՝ նզովք:

դարը Հայաստանեայց եկեղեցին ոչ մի նոր կանոն չի սահմանում չհասական խնդրի առիթով, որ ասել է թէ՝ բաւական է համարել վարուել վերոյիշեալ չորս ազգային ժողովների կանոնադրութիւններով. Իսկ ԺԲ-րդ դարում այդ խնդիրն ստանում է նոր, միանգամայն տարբեր կերպարանք, բայց ոչ թէ դարձեալ ազգ. եկեղեցական ժողովի որոշմամբ, այլ Ներսէս Շնորհալու: Այս հայրապետը իր ընդհանրական թղթի մէջ տալիս է քահանաներին հետեւեալ պատուէրը. «Մի ոք համաղղեսց, որոյ արեան մերձաւորութիւն իցէ, պսակ օրհնութեան դնել. այլ մինչեւ ի յերկուց կողմանցն զչորրորդ ազգին զխաւորութիւնն կատարեալ ունիցին»[43]: Տալով այսպիսի մի նոր պատուէր, այն էլ առանց ազգ. եկեղեցական ժողովի՝ միայն հայրապետական թղթով՝ Շնորհալին ինքն էլ զգում է, որ հարկաւոր է համոզել եկեղեցականներին և ժողովրդին նոր կարգադրութեան օրինաւորութեան մասին, ուստի աւելացնում է անմիջապէս. «Եւ թէ զի՞նչ պատճառաւ զչորեակ թիւն կանոնադրեցին հարքն սուրբք սահման ամուսնութեան՝ ծանուցուք զի գիտասջիք: Քանզի բնութիւն մարմնոյ ի չորից տարերաց գոլով, յիրաւի և մարմնական ազգակցութիւնն մինչեւ ի չորրորդ թիւն ժամանէ, որ է այսպէս. ի միոյ հօրէ երկուց եղբարց բաժանեալ, հաւասար ունին յինքեանս զհօրն զգյացութիւն. Իսկ առ ի նոցանէ ծնունդքն՝ զկէս ա-

43 Ընդհանրական. Վենետիկ, 1838. եր. 165:

րեան եղբայրութեանն. և երրորդ ծնունդն՝ որ եղբարցն որդւոց, զկիսոյն կէս առեանն միայն. իսկ չորրորդ ծնունդն՝ որ ի սոցանէ զչորեակ մասն առեանն հատցելոյ։ Եւ այս է սահման և կէտ առեան մերձաւորութեան[44]։

Այսպէս ահա Շնորհալին ընդարձակելով չհասութեան աստիճանները՝ կամենում է ընդունել առաջ՝ իբրև սուրբ Հայոց կանոնադրութիւն. երկրորդ՝ իբրև հետևանք այն համոզման, թէ չորս աստիճանից բաղկացած մարդկային մարմնի արիւնը սպառում է միայն չորս սերնդից յետոյ. ուրեմն պէտք է խոյս տալ արիւնապղծական ամուսնութիւնից։

Քննենք այս աստիճաններից առաջինը — սուրբ Հայոց կանոնադրութիւնը։ Բայց մեր յիշած չորս ազգային ժողովներից — Աշտիշատի, Շահապիվանի, Դւնի և Պարտաւի — հայ եկեղեցին չունի սահմանած այլ կանոն չհասական խնդրի մասին Շնորհալու առաջ։ Արդ՝ նրա խօսքերը «չորեակ թիւըն կանոնադրեալն հարքն սուրբք», պիտի վերաբերին այդ ժողովների «մինչև չորրորդ պորտն» ասելուն։ Սակայն ճի՞շտ կ'լինի այդպէս ասելը և իմանալը։ Ցիշեալ ժողովների ասելը «մինչև չորրորդ պորտն» սահմանում է երկու կողմի համար միասին չորս աստիճան և ոչ թէ իւրաքանչիւր կողմի համար չորս չորս[45]։

---

44 Նոյն. եր. 165—166։

45 Թէև հ. Բաստամեանցը ասում է, թէ Շնորհալին «արգելում է ամուսնութիւնը չորրորդ աստիճանը լրացրած. և այս կողմից կանոնս մտնում է Շահապիվանի և Պարտաւի ժողովների երկու կանոններին», («Փորձ», 1881. ապր. եր. 60).

Այս արդէն այնքան բացայայտ է, որ տարակուսութեան տեղիք չի թողնում[46]:

Արդէն տեսանք, թէ բոլոր քրիստնեայ եկեղեցիք մինչև չորրորդ դարը վարուել են մովսիսական և հռոմէական օրէնքներով. Նրանց թւում և Հայ եկեղեցին: Չորրորդ դարում Աշտիշատի ժողովը առաջին կանոնադրութիւնը սահմանելով չհասական աստիճանների համար՝ արգելում է թէ չորրորդ աստիճանի արիւնակիցների ամուսնութիւնը, որ տեղի էր ունենում մինչև այդ ժամանակ և թէ ամուսնութիւնը «մերձաւորական նուաց» հետ. իսկ ուր դեռ հոգատարութեան խնդիրը այդ տեսակ ամուսնութիւնների արգելումն էր, որ, սակայն, շուտով չիրագործուեց, այնտեղ այլ հեռաւոր աստիճաններ սահմանելու վրայ մտածելը և՝ անկարելի է և՝ անտեղի: Յետագայ — Շահապիվանի ժողովը պարզապէս թւում է այն ազգականներին, որոնց հետ չի կարելի ամուսնանալ. «քեռորդի, եղբօրորդի (երեք

---

բայց Շնորհալու խօսքերը «Մինչև ի յերկուց կողմանց զչորրորդ ազգի զլխաւորութիւնն կատարեալ ունիցին» Շահապիվանի և Պարտաւի կանոններին մօտիկ ընդունողը, պէտք է ընդունի, որ այդ կանոնները «մինչև ցչորրորդ զարմն» ասելով, երկու կողմի համար չորս չորս աստիճան են պահանջում. իսկ այդ մի այլ տեղ հերքում է ինքը հ. Բաստամեանցը. (տես ծանօթութիւն 76):

[46] Այսպէս բացատրում է և Գօշ Մխիթարը (կանոն 109). և ինչպէս կ'տեսնենք իր տեղում, ամեն կողմից չորս աստիճան ասողներին անւանում է անտեղեակ կանոնների բուն իմաստին:

աստիճան), հօրաքրոջ որդի» (չորս աստ.) կամ նրա նման «զայլ որք յազգի անդ խառնում մինչև ի չորրորդ զարմն». օրինակ՝ մօրաքրոջ որդի, մօրեղբօր որդի և այլն։ Սահմանած արգելքը թէև շատ մեղմ, դարձեալ տրտունջներ են լսում ժողովրդի և մանաւանդ իշխանների կողմից։ Դունի ժողովը մի քայլ միայն հեռու է գնում Շահապիվանի ժողովի կարգադրածից։ Բայց դարձեալ վերջինիս սահմանած չորրորդ աստիճանի ամուսնութեան քակտումն փոխում է և դարձնում ենթակայ ապաշխարութեան։ Նոյն ուղղութեան մէջ երևում է մեզ և Պարտաւի ժողովը. նա ոչ թէ նոր աստիճաններ է աւելացնում, այլ միայն վերանորոգում է նախկին ժողովների կարգադրութիւնները, «զորս լուծեալ տեսանեմք», ասում էր Սիոն կաթողիկոսը. իսկ ուր եղածն են լուծում, այնտեղ նորն աւելի ծանր չեն գնում։

Ուրեմն՝ Շնորհալու կարգադրութիւնը մեր «սուրբ Հարց» կանոնադրածը չէ. վանորդը մնում է բացատրել, թէ ուստի՞ է առնում նա իր հիմքը։

Թէ ինչ սահմանի մէջ էր ամուսնական չհասութեան խնդիրը յունական և հռոմէական եկեղեցիներում մինչև վեցերորդ դարը, տեսանք վերևում. տեսնենք այժմ այն փոփոխութիւնը, որ կրում է այդ խնդիրը նոյն ժամանակից յետոյ յիշեալ եկեղեցիներում։

Եօթներորդ դարում, 691—692 թ. Կ. Պոլսում գումարուած Տրուլեան կամ Հինգվեցեան ժողովը սահմանում է ամուսնական չհասութեան մասին երկու-

կանոն, 53 և 54: Կան. 53. «Որովհետև հոգևոր ազգակցութիւնն աւելի փոքր է քան մարմնաւորը, իսկ մենք տեսնում ենք, որ մի քանի անդերում երեխաների կնքահայրերը ամուսնանում են նրանց այրիացած մայրերի հետ, վասնորոյ սահմանում ենք, որ այսուհետև այդ չլինի. իսկ որոնք կանոնիս հակառակ կ'գտնուին, նրանց ամուսնութիւնը քակուի, և ենթարկուին շնացողների ապաշխարութեան» (եօթնամեայ ապաշխարութեան): Կան. 54. «Եթէ մէկն ամուսնանայ իր եղբօր աղջկայ հետ, կամ հայր և որդի՝ մօր և աղջկայ հետ, կամ հայր և որդի՝ երկու քոյրերի հետ, կամ երկու եղբայր՝ մօր և աղջկայ հետ, կամ երկու եղբայր՝ երկու քոյրերի հետ, արսակը քակել, և ենթարկել եօթնամեայ ապաշխարութեան»[47]:

Այսպէս ահա յունական եկեղեցին եօթներորդ դարում թէ՛ չորրորդ աստիճանի ազգակցական ամուսնութիւնն է արգելում, թէ՛ չորրորդ աստիճանի խնամիականն և թէ՛ երրորդ աստիճանի հոգևոր ազգակցականը[48]: Ասել է՝ որ յոյն-արևելեան եկեղեցին

[47] Опытъ курса церк. законов. եր. 432—435:

[48] *Հոգևոր ազգակցութիւնը առաջին անգամն է այդ ժամանակում եկեղեցու պաշտօնական կարգադրութեան խնդիր լինում:* Опытъ курса церк. законов. *գրքի հեղինակը ասում է, որ Թէև առաջին անգամ այս 6-րորդ տիեզերական ժողովումն ենք պատահում հոգևոր ազգակցութեան մասին դրական կանոնի, բայց այդ մասին արգելքը սովորական է եղել եկեղեցում առաջին իսկ դարերից սկսած. որան ապացոյց համարում է այն, որ ժողովն*

այդ ժամանակում այնքան ապահովութիւն է տեսնում իր կարգադրութիւնը խնամքական և կնքահայրական այդքան հեռաւոր աստիճանների վրայ տարածելու համար թէ՛ ժամանակակիցների հասկացողութեան և թէ՛ քաղաքացիական օրէնսդրութեան զիջողութեան կողմից, որ յիշեալ արգելուած աստիճանների վրայ կատարուած ամուսնութիւնները քակտելի և եօթնամեայ ապաշխարութեան ենթակայ է սահմանում:

Բայց մի ժամանակից յետոյ նոյն ժողովի սահմանած չհասական աստիճանները դեռ անբաւարար են համարում նոյն եկեղեցու համար և նա շուտով դարձեալ ընդարձակում է թէ՛ արիւնակցականը և թէ՛ խնամքականը: Եկեղեցու օգուտն և ուղղութեանը համակերպւում է քաղաքացիական օրէնսդրութիւնը, որ և 8 և 9-րորդ դարերում արգելում է արիւնակիցների հինգերորդ աստիճանի ամուսնութիւնը, իսկ 10—11-րորդ դարերում— վեցերորդինը: Եօթներորդ աստիճանի մասին երկար ժամանակ վիճաբանութիւններ են լինում. թէև 11-րորդ դարում այդ աստիճանում կատարուած պսակն էլ համարւում էր անթոյլատրելի, սակայն չէր քակւում. մինչև որ 12-րորդ դարում բոլորովին արգելւեց Կ. Պոլսի ժողովով, որի որոշումը հաստատեց Մանուէլ Կոմնենոս

«մի քանի տեղերում տեսնում ենք» ասելով՝ ցոյց է տալիս, որ եկեղեցուն արդէն յայտնի արգելքը խանգարւում է մի քանի տեղերում. (տես եր. 433):

կայորը[49]։ Խնամէական չհասութիւնը 10—11-րորդ դարերում եկեղեցական ժողովների վճռով տարածւում է նախ՝ հինգերորդ և ապա վեցերորդ աստիճանների վրայ, այնպէս որ երկու եղբայրներին արգելւում է ամուսնանալ երկու եղբօր աղջիկների հետ[50]։

Միաժամանակ արևելեան-յունական եկեղեցու հետ և Հռոմէական եկեղեցին ընդարձակում է չհասութեան աստիճանները։ Եօթներորդ դարում Հռոմի պապերը արգելում են նախ չորրորդ և ապա հինգերորդ աստիճանները. ութերորդ դարում Գրիգոր Բ պապը Հռոմում ժողով կազմելով՝ (721 թ.) արգելեց կողմնագիծ ազգականների եօթներորդ աստիճանի ամուսնութիւնը. (թէև նոյն պապը Գերմանացիների համար իբրև բացառութիւն թոյլ տւաչորրորդ աստիճանի ամուսնութիւնը)։ Այդ մի և նոյն արգելքը վաւերացրեց Հռոմի եկեղեցին 11-րորդ դարու ժողովներով[51]։ Սակայն Հռոմէական եկեղեցու չհասական աստիճանների հաշիւը բոլորովին տարբեր էր արևելեան եկեղեցիների հաշւից։ Վերջիններում ի սկզբանէ մինչև այսօր գործածական է ճիւղագրութեան ընդհանուր եղանակը, — որքան ծնունդ, այնքան աստիճան. իսկ արևմտեան եկեղեցին, որ մինչև վեցերորդ դարը նոյն եղանակն էր գործ դնում,

[49] Опытъ курса церк. законов. եր. 439—440 և ծանօթ. 399:

[50] Նոյն. եր. 441:

[51] «Փորձ» 1880. նոյեմ., դեկտ. եր. 160—161:

այդ ժամանակից յետոյ փոխում է և ընդունում կողմնակին գծերի համար ծիւղագրութեան նոր ձև[52]. որով երկու գծերից մէկը հաշւից դուրս է մնում. օրինակ՝ մէկ հօրից ծնած երկու եղբայր փոխանակ երկու աստիճան կազմելու, կազմում են մէկ աստիճան. նրանց որդիքը՝ փոխանակ չորս աստիճանի, կազմում են երկու աստիճան[53]: Թէպէտև այդ նոր հաշիւը շուտով գործադրութիւն չգտաւ ամեն տեղ, և շատ տեղերում, օրինակ՝ Իտալիայում և Սպանիայում և այլն մինչև իններորդ դարն էլ պահպանւում էր հին հաշիւը, բայց 11-րորդ դարում Հռոմի ժողովը (1065 թ.) վերջնականապէս հաստատում է նորը[54], որով արգելելով եօթներորդ չհասական աստիճանը՝ իսկապէս արգելում էր տասն և չորս աստիճան[55]:

---

[52] Հռոմէական եկեղեցու ծիւղագրութեան այս նոր եղանակը կոչւում է կանոնական կամ եկեղեցական. իսկ հին կամ ընդհանուր եղանակն—աշխարհական: Նոյն եկեղեցում այժմ էլ գործ է ածւում նորը:

[53] «Փորձ», 1880. նոյեմ., դեկտ. եր. 144—145:

[54] Նոյն. եր. 147:

[55] Այսպիսի խստութիւնը յարուցանում է շատ անյարմարութիւններ և դժւարութիւններ. ուստի նրա դէմ այնքան տրտունջ և անբաւականութիւն են յարուցանում թէ ժողովրդականք և թէ եպիսկոպոսներ ու քահանաներ, որ Իննովկենտիոս Գ պապը ստիպւած է լինում 1216 թւին գումարել Հռոմում չորրորդ Լատերանեան ժողովը, որ բառնալով խստութիւնը, սահմանում է արգելել թէ կողմնագիծ արիւնակիցների և թէ խնամիների միայն չորրորդ աստիճանի ամուսնութիւնը. (տես «Փորձ» 1880. նոյեմ. դեկտ. եր. 161—162):

Ներսէս Շնորհալու կարգադրութիւնը ուղղակի հետևողութիւն է վերոյիշեալ երկու եկեղեցիների ընթացքին. մինչև անգամ այն բացատրութիւնը, որ տալիս է նա այդպիսի կարգադրութեան հիմնաւորութիւնը ապացուցանելու համար՝ «քանզի բնութիւն մարմնոյ ի չորից տարերաց գոլով՝ յիրաւի և մարմնական ազգակցութիւնն մինչև ի չորրորդ թիւըն ժամանէ» առնուած է նրանցից. ըստ որում, ինչպէս տեսնում ենք, Շնորհալուց 42 տարի յետոյ հռոմում 1216 թ. գումարուած չորրորդ Լատերանեան ժողովը չհասութեան աստիճանները չորսի վերածելով՝ հիմնում է իր կարգադրութիւնը նոյնպէս մարմնի չորս տարրերից բաղկացած լինելու պատճառով չորս աստիճանն անխառն պահելու կարևորութեան վրայ[56]:

Ժամանակը և շրջապատող հանգամանքները միշտ մեծ ազդեցութիւն են ունեցել և ունենում մարդկանց մտաւոր և բարոյական կողմերի վրայ: Որքան էլ մի մարդ կամ մի ժողովուրդ սկզբում ձգտի ազատ մնալու իրան համար միանգամայն օտարոտի և խորշելի սովորութիւններից և մտքերից, այսու ամենայնիւ երկար ժամանակ շփւելով նրանց հետ կամ կանգնած լինելով նրանց հոսանքի առաջ, անզգալապէս ենթարկւում է նրանց ազդեցութեան, որպէս հանդիպակաց բաց պատուհանների մէջտեղում կանգնած մարդը աննկատելի կերպով ենթարկւում է օդի ներգործութեան:

56 «Փորձ». 1881. ապրիլ. եր. 63:

Շնորհալու յարաբերութիւնները յունաց հետ գիտենք[57]. նոյն չափ և աւելի յաճախ էին լինում նրա յարաբերութիւնները լատինականների հետ։ Այն ժամանակում, երբ նա նստեց հայրապետական աթոռի վրայ, Կիլիկիայի նշանաւոր քաղաքներն ու առևտրական կենտրոնները արդէն արևմտեան քրիստոնեայ ազգերով լցուած էին. նրանք ունէին բազմաթիւ եկեղեցիներ ու եկեղեցականներ, քաղաքներ ու բերդեր. Հայերի յարաբերութիւնը նրանց հետ մտերմական էր. մինչև անգամ ամուսնութեան կապերով միմեանց հետ կապուած. ուստի և լատինածէս կանոյք ազդեցութիւն էին վայելում Հայ արքունիքում և իշխանական տներում. նոյն իսկ Շնորհալու աթոռանիստ Հռոմկլան լատին քրիստոնեաներով լցուած պիտի լինէր, որովհետև լատին իշխանի դղեակ էր. էլ չենք խօսում Հռոմայ պապերի շարունակ բանակցելու մասին Կիլիկիայի Հայ արքունիքի և եկեղեցականների հետ։

Նկատելու արժանի է Շնորհալու յիշեալ կարգադրութեան գործադրութիւնը քահանայից յանձնելը։ Ինչու քահանաներն են ուղղակի այսպիսի հրաւէր ստանում և ոչ եկեղեցու առաջնորդները։ Արդեօք սրանից այն չէ՞ եզրակացւում, թէ Շնորհալին սկզբում միայն քահանաներին ուղղելով իր

[57] Հ. Բաստամեանցը Շնորհալուն իր վերոյիշեալ կարգադրութեան առիթով անւանում է ենթարկւած «Յունաց եկեղեցու կանոնի և բիւզանդական կայսրութեան օրէնքի ազդեցութեան», «Փործ», 1881, ապրիլ. եր. 62։

պատուէրը՝ կամենում է, որ դեռ արծարծուի ժողովրդի և եկեղեցականների մէջ այդ կարգադրութիւնը, և եթէ ընդունելու չափ կ'հասունանայ, այն ժամանակ ժողովով պարտաւորեցուցիչ ընդհանրական զօրութիւն տայ նրան։

Սակայն՝ թէ այդ կարգադրութիւնը որքան ընդունելութիւն և հաւանութիւն պիտի գտած լինի ազգի մէջ, դիւրին է հասկանալ, եթէ ի նկատի առնենք նախ՝ Շնորհալուն ժամանակակից մի այլ նշանաւոր եկեղեցականի — Գօշ Մխիթարի[58] կծու ակնարկը. «Զի ըղձագումն ի գրոյ տեսանեմք յարանց անտեղեակ այդմ լինելով. զի որքան ի միոջէ իսկ կողմանէ չորրորդն կամ հինգերորդն, գնոյն և ի միւսմէ պահանջէին կողմանէ, որ է դուն ուրեք գտանել. զի իւրն առէ օրէնքն ղաւակաւս մի յայտնեի. և գերրորդն թողով ի միջոյին՝ զչորրորդն հրամայէ առնուլ». երկրորդ՝ Սսի ժողովի կանոնը։

Յիշելով Գօշ Մխիթարի անունը՝ յառաջ բերենք նրա երկու կանոնները[59] չհասական խնդրի առիթով. որպէս պահանջում է և ժամանակագրական կարգը։ Կանոն 108. «Զի որպէս առ ամենայն մեր աթոռա-

[58] Շնորհալին վախճանեց 1173 Թ., իսկ Գօշ Մխիթարը՝ 1213 Թւին:

[59] Երկու կանոնն էլ յառաջ ենք բերում հ. Բաստամեանցի ուսումնասիրած «Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց» գրքից, որի տպագրութիւնը (Վաղարշապատ 1880) աւարտած տեսնելու ուրախութիւնից տարաբախտաբար զրկեց նրան անժամանակ և կսկծալի մահը:

կիսա հարկ եղև գրել ի նոյն ութուտասն ամի տէ-
րութեանն Խոսրովայ որդւոյ Որմզդի, զնոյն և առ.
քո սրբութիւնդ հարկեցաք գրել. պինդ ունել զպա-
տուէր հոգւոյն Սրբոյ ի ձեռն օրինաց և մարգարէից,
զորս առաքելական կանոնադրութեամբ հաստատե-
ցին սուրբ և ուղղափառ վարդապետքն։ Բայց մա-
նաւանդ զգուշանալ յանխծեալ ամուսնութենէ մեր-
ձաւորաց, որ ազգաւ մօտաւորութիւն է և կործանին
յայնքան չարիս։ Քանզի ոչ միայն զխառնակութիւն
ազգահամարութեանն գործեն այնպիսիքն, այլ և զա-
գահութիւն, զոր արմատ ամենայն չարեաց, ասաց
առաքեալն[60], զհեթանոս օրէնս անաստուածս լինել,
որպէս և նախամարգարէին ծանօթացոյց ամենայն
աստուածապաշտաց։ Եւ բիւր և այլ չարիս, որպէս
և իմաստնոց յայտնի է[61]։ Զի թէ աստուածային
բերանն անիծանէ զմարդիկ որ փոխեն զընկերի ս-
գեալ սահմանս, իսկ զԱրարչին զըլորեցուն զսահմա-
նադրութիւն և զպատուէր առ ամն հարսն և արհա-
մարհողք լեալք, մեծի բարկութեան արժանի է, այլ
վասն նոցա և այլք։ Եւ յայտ անաւի է՝ զի ի հնումն,
զորս ելից Աստուած, այսպէս ասաց թէ՝ ըստ կրօ-

[60] Երևի ակնարկութիւն է այն պատճառին, որով բացատրում էին հայ իշխանական տների մերձավոր արյունակիցների հետ ամուսնանալու սովորությունը. «Զոր վասն ագահելոյ սեպհական պայազատութեանն առնէին»:

[61] Երևի ակնարկութիւն է մերձավոր արեան խառնակութեան վնասակարութեան մասին կազմված համոզմունքին, որի մասին խոսել ենք իր տեղում:

նից ազգաց Եգիպտացւոց և Քանանացւոցն մի՛ երթայցէք. ես եմ Տէր Աստուած ձեր։ Եւ ի կարգ արկեալ՝ զայսպիսի անկողինս կոչեաց խայտառականաց առականս, որով ամբարիշտքն վարէին հրաժարեցոյց յառաջին ազգէն և ապա՝ յերկրորդէն. և հասեալ յայն՝ զոր մեք խորթս կոչեմք՝ և ասէ՝ մի՛ յայտնես, զի համհօրեայ քոյր քո է... դարձեալ երկրորդէ այսպէս թէ՝ զաւակսն կնոջ և զդստեր նորա— որ լինի մին կին և միւսն խորթ — մի՛ յայտնեսցես. և զդուստր ուստեր նորա, այսինքն է՝ զխորթին, կամ զդուստր դստեր նորա մի առնուցուս, քանզի ամբարշտութիւն է։ Աստ վերագոյն քան զայս նշանակէ, որ նոյն մեղ երրորդ ազգ կարծի ըստ յառաջ յայտնագոյնդ առնելոյ մեր, զաւակսն դստեր ուստեր քոյ կամ դստեր դստեր քոյ մի յայտնեսցես։ Բայց մի՛ ոք կարծեսցէ զառաջեալս ի վերայ ծնողին միայն, այլ և ոյք ի նմանէն. քանզի այս կատարեալ յիմարութիւն է. քանզի ոչ ուրուք եղբայր առանց հօր և կամ քոյր. այլ թէև հօրաքեռ որդի և կամ մօրաքեռ. քանզի և ազգակցութիւնն մի և նոյն է և որդւոց։ Զի որպէս առաջին և երկիր և երիր ազգ ասին, այսպէս և եղբօրորդւոյն և կամ այլոյ առ միմեանս առաջին ազգն և երկրորդն և երրորդն և քառորդ ազգ ասին։ Եւ ոչ այսչափ, բայց և այլ որոշումն արժանի վարմանելոյ ուսուցանէ աստուածազանն մեզ օրէնք՝ զաւակսն նուոյ մի՛ յայտնեսցես և զդուստր դստեր կամ զդուստր ուստեր նորա մի՛ առնուցուս, որ ցուցանէ զայս. իբր թէ մեռեալ

որդւոյն և նուոյն առն պղծում եղեալ և ծնեալ ուստր և նորա կին առեալ այլ դուստր ծննանիցի, մի՛ անուանեա զնա կնութեան, զի ամբարշտութիւն է։ Այսու զկատարեալն իսկ զսահմանն ցուցանէ և թէ ցո՞րս խորշելի է յանօրէնութենէ։ Իսկ սուրբ Հոգին Ովսեաւ մարգարէիւ զամենայն անհնարին և դժուարաչար մեղս փոքր համարէ առ այսու յանցմամբ և ամբարշտութեամբ։ Լուր որ զատուցեալս նշանակէ՝ եթէ լոկ անուամբ գոյ զի՞նչ հարազատութիւն ի միջի կայ, ասէ. դատաստան Տեառն է ընդ բնակիչս աշխարհի. զի ոչ գոյ ճշմարտութիւն և ողորմութիւն և գիտութիւն Աստուծոյ ի վերայ երկրի, այլ անէծք և ստութիւն և գողութիւն և շնութիւն և սպանութիւն հեղեալ ի վերայ երկրի[62]։ Իսկ աւելի ամբարշտութիւն և կսկծելի մեղք այն են, որ արիւն ընդ արեանս խառնեն, որ է ազգականաց անօրէնութիւն։ Եւ հաստատուն այնմ զայս պատմէ. վասն այդր, ասէ, սուգ առցէ երկիր և նուաղեսցի ամենայն բնակչօքն իւրովք. այլ և գազանք անտապատի և սողունք և թռչունք երկնից պակասեսցին, զի ոչ ոք էր, որ յանդիմանէր և դատէր[63]։ Արդ՝ մինչ քանն յանդիմանութեան և դատելոյ զայնպիսեան ձեզ հաւատացաւ և անփոյթ առնես՝ և՛ զանձն զատապարտես, և՛ որոց իշխեսն. բայց եթէ արեան յարիւն ոչ առս խառնիլ, որ մինչև անուն մերձաւո-

[62] Ովսէէ, Դ. 1—2:
[63] Նոյն, Դ. 3—4:

րութեան սպառի, արդարութեամբ կատարեալ զարգարես զքո վիճակդ: Իսկ յանդգնելոյն և պատերազմասիրաց ընդ Հոգւոյն Սրբոյ՝ բան կանոնին, զոր եղանելի Հայոց ի Քրիստոս հաստատեալ է և մինչև ցայժմ իբրև զարեգակն անշէջանելի պահի, նոցա զայս աւանդեսցես — Սկիզբն ի հինգերորդէն յառաջ[64], քանզի որ յանասնոյն բնութիւն սիրելի էր անկանել, այնց ողորմութիւն արարեալ զսահմանն Աւգմայուցին. բայց լուսոյն բնիկն է, որում տեղեակ է քո սրբութիւնդ»:

Մինչև այստեղ յառաջ բերածը Մխիթարի խօսքերը չեն. այլ նա նոյնութեամբ առնում է ուրիշ աղբիւրից[65], և ապա իբրև բացատրութիւն ինքն աւելացնում է հետագայ խօսքերս. «Ցամենայն գրեթէ ի կանոնս այսօրինկ եղաւ սահման, այլ լիովին առա, զոր առեալ է ցոյց յօրինաց և ի մարգարէից: Զոր

[64] Գուցէ պակասում է «ոչ» բառը, որով պիտի լինէր «Սկիզբն (ամուսնութեան) ի հինգերորդէն ոչ յառաջ»:

[65] Ուստի արդեօք պէտք է առած լինի Մխիթարը վերոյիշեալ կանոնաձև գրուածը, յայտնի չէ. այսքանը միայն կարելի է ասել, թէ որովհետև նրա հեղինակը մի և նոյն բովանդակութեան թղթեր, ինչպէս ասում է, գրել է իր բոլոր աթոռակիցներին «ի նոյն ութուտասն ամի տէրութեան Խոսրովայ որդւոյ Որմզդի» իսկ այդ Խոսրովը թագաւորեց 590 թուից մինչև 627 թ. ուրեմն այդ շրջաբերականը գրել է 608 թւին. և գրողը, ինչպէս իրաւացի կարծում է հ. Բաստամեանցը, պիտի լինի Աբրահամ Ա. կաթողիկոսը, որ աթոռակալեց 594—616 թ. իսկ թէ ովքեր են այն աթոռակիցները, կամ թէ ով է այն անձը, որին վերոգրեալն է ուղղած, յայտնի չէ:

և մեզ քննելի է զայսոսիկ թէ՝ ո՞ր արդեօք յաւելուած ըստ նորոյն եղև ի ձեռն կանոնացս։ Քանզի օրէնքն Հրաժարեցոյց զառ ի Հօրէ և զառ ի մօրէ քեռէ, որ է ըստ այսմ, թէ պատահի առնուլ կին և նորա իցէ դուստր, և եթէ զկնի առնելոյն ծնանիցի, և կանոնք ըստ այսմ՝ մի՛ տալ զխորթս միմեանց և մի՛ զառ ի նոյանէ ծնունդս մինչև ի զարմն երրորդ. ապա ծնեալ ի ծնողաց խորթուցն մինչև ցորդիսն որ առանց խորթուցն, որ լինին Հինգերորդ ազգ ապա ամուսնասցին։ Զխորթս միմեանց զխորթակիցսն առէ մինչև ցերրորդն. յայս է զի զչորրորդին Հրամայէ. և ծնեալ ի ծնողաց խորթուցն մինչև ցորդիսն, երրորդին առէ, որ խորթքն լինին չորրորդ և ծնողքն Հինգերորդ։ Եւ զայս ասէր՝ թէ պատահի մին ի խորթուցն և մին ի ծնողացն խորթուցն, և կամ ի խորթուցն ծնողաց չորրորդ և խորթն Հինգերորդ՝ ապա ամուսնասցին։ Եւ զի օրէնքն զՀօրաքոյր և զմօրաքոյր յիշէ, իսկ կանոնք զծնունդ սոցա և զծնունդ զեղբօր մօր և զայլոց միապէս Հրաժարեցուցանէ, զխորթոց և զթոռանց, որ յորդւոց և ի դստերէ. և զեղբարց ծնունդս կանոնք և օրէնք միաբանակ Հրաժարեցուցանեն. նմանապէս և զծնունդս որ ի նուէ»։ Ինչպէս երևում է Մխիթարի խօսքերից, նա այդ յառաջ բերած կանոնաձև գրուածի մէջ աւելի լիակատար սահման է գտնում չհասական ազգականների մասին քան բոլոր միւս կանոններում, որովհետև յառաջ բերած է տեսնում մովսիսական օրէնքը և մարգարէական խօսքերը. միայն

թէ նրանում յիշած խորթութեան չհասութիւնը բացատրութեան կարօտ գանելով՝ ինքն տալում է.— Մովսիսական օրէնքը չէ թոյլատրում ամուսնանալ հօրից կամ մօրից խորթ քրոջ հետ, որ ծնուած է մէկի կամ միւսի առաջին ամուսնութիւնից. իսկ կանոնները[66] ասելով՝ ոչ միայն խորթերին, այլ և նրանցից ծնուածներին էլ չի կարելի ամուսնանալ միմեանց հետ, մինչև հինգերորդը աստիճանը. բայց ինքը կարծում է, որ պէտք է երեք աստիճան պահել մէջ տեղում և չորրորդին թոյլ տալ ամուսնանալ հինգերորդի հետ «Զխորթս միմեանց զխորթակիցսն տալ մինչև ցերրորդն, յայտ է, զի զչորրորդին հրամայէ». մինչդեռ նրա յառաջ բերած կանոնաձև գրուածին նայելով՝ չորրորդն արգելում է և հինգերորդն է թոյլատրում (վեցերորդի հետ). «Սկիզբն ի հինգերորդէն (ոչ) յառաջ»[67]։ Մխիթարի

[66] Այստեղ հասկանալի են յունական և հռոմէական եկեղեցական կանոնադրութիւնները: Մեր եկեղեցին առանձին կանոններ չունի խորթութեան չհասութեան համար, բացի Մխիթարի յառաջ բերածից, որ ժողովական վճիռ չլինելով՝ միայն ցոյց է տալիս եկեղեցու հայեացքը, որ կազմած է եղել վեցերորդ դարում խորթութեան չհասութեան մասին և այդ խնդիրը որոշ կերպով պարզելու և կարգաւորելու փափագը:

[67] Ճիշտ չենք համարում հ. Բաստամեանցի կարծիքը, թէ «Մխիթար Գօշը իր յաւելուածի մէջ... սահմանում է թոյլատրելի համարել ամուսնութիւնը խորթերի մէջ նոյնպէս հինգերորդ աստիճանում» («Փորձ», 1881, ապրիլ, եր. 69): Մխիթարը թոյլատրելի է համարում չորրորդի ամուսնութիւնը հինգերորդի հետ. միայն նրա աղբիւրն է, որ չորրորդը արգելում է և հինգերոր-

այդ մասին ասածները պարզ են և հասկանալի՝ մանավանդ նրա 109 կանոնն ի նկատի առած. իսկ մութը և անհասկանալի մեզ համար այս խոսքերն են. «Եւ ծնեալ ի ծնողաց խորթուցն մինչև ցորդիսն երրորդին առ է, որ խորթօքն լինի (ուրիշ օր. խորթունք լինին) չորրորդ. և ծնողօքն (ուրիշ օր. ծնողք) հինգերորդ»: Ծնողք ծիւղագրութեան հաշւի մէջ չեն առնւում. Մխիթարը ինքն էլ յետագայ կանոնի մէջ նոյնն է ասում. «Ծնողք ի թիւ ոչ անկանին». ինչ է նշանակում ուրեմն առել «և ծնողօքն հինգերորդ»—թողնում ենք ուրիշ ձեռնհասների բացատրութեան:

Կանոն 109. «Գիտելի է զի կանոնք[68] հրամայէ՝ մի ոք իշխեսցէ խնամութիւն առնել մինչև ի չորրորդ և հինգերորդ զարմն զնոյն իսկ զօրինացն առ է,

դը թոյլատրում: Իրաւ է, Մխիթարն ասում է. «Իսկ կանոնք ըստ այսմ՝ մի տալ զխորթս միմեանց և մի զառ ի նոցանէ ծնունդս մինչև ի զարմն երրորդ, ապա ծնեալ ի ծնողաց խորթուցն, մինչև ցորդիսն որ առանց խորթուցն որ լինին հինգերորդ ազգ, ապա ամուսնացին», սակայն դրանով նա ցոյց է է տալիս միայն իր ակնարկած կանոնների օրէնսդրութիւնը. մովսիսական օրէնքն, ասում է, արգելում է խորթ քրոջ հետ ամուսնանալ, իսկ կանոնները հասցրել են այդ արգելքը մինչև հինգերորդ աստիճանը, որին հետևում է և իր աղբիւրի հեղինակը. իսկ իր կարծիքով չորրորդին թոյլատրելի է ամուսնանալ հինգերորդի հետ:

Այդ մասին աւելի բացայայտ է խօսում Մխիթարը յետագայ կանոնի մէջ:

[68] Այստեղ խօսքը Հայոց ժողովների կանոնների մասին է:

զի զերրորդն զծնունդն, զոր հրամայէ չառնուլ. յայտ է զի զչորրորդին հրամայէ առնուլ. և որ առնու լինի հինգերորդ։ Եւ զայս ամենայն ընտանութիւնս է իմանալ. և այս է չորրորդն և հինգերորդն։ Եւ թէ օրէնք և կանոնք զխնամիս ոչ յիշեն — յաղագս զմին ցուցանելոյ օրինակ նման այլոցն բաժանել ծննդոց. զի զայս ասէ օրէնքն՝ երկուս քորս ոչ առնուլ և կանոնք զքոյր կնոջ յընտանութիւն առնն փոխել ասեն[69]. Ուստի յայտ է՝ զի այսպէս ամենայն օրինակաւ խնամիք յընտանութիւն փոխին և ըստ այլոց մերձաւորաց՝ ծննդոց զատանին։ Եւ արդ՝ ըստ օրինաց և կանոնաց այսպէս զուգեն, թէ եղբարց ծնունդք լինին և թէ՛ այլոց, զի առաջին — ծնողքն ի թիւ ոչ անկանին, զի վասն այն իսկ զայրն ասէ չորրորդ և կամ հինգերորդ։ Եւ դարձեալ՝ զի մի՛ խոնարհագոյն քան զայս լիցէ. զի չորրորդ ի միոյ կողմանէ ասէ լինել, և թէ ի միւս կողմանէ մի պատահի՝ անխտրելի է. և այս յայտ օրինացն է՝ զատուկանս մի՛ յայտնեսցես. իւրն իսկ ասէ՝ զի երրորդին ոչ հրամայէ. և զչորրորդն առնու, և առոյն է հինգերորդ։ Նոյն է ըստ կանոնացն։ Եւ թէ հինգ պատահի լինել բարի է, և զարմիցն հինգ լինել նոյն է. և թէ որքան մի լիցէ և միւսն նոյն գտանի՝ առաւելութիւն է. ապա թէ ոչ գտանի, լիցի որպէս ցուցաւ։ Եւ թէ երեք ի մի կողմանէ լիցէ և երեք ի մի՝ լինելի է։ Եւ թէ երեք ի մի կողմանէ լիցէ և երկու ի մի, և այս ես լինելի է. զի որպէս հրամայեցաւ յօրի-

[69] Ս. Բարսղի 87 կանոն. տես Опытъ кур. церк. зак. եր. 90:

նացն պճղրորդն առնուլ հինգերորդին. զի յոր-ժամ առցէ մնասցէ երրորդն։ Նոյն է յորժամ երեք ի միոյ կողմանէ իցէ և երկու ի միւս. ի լինելն մնայ երեք. զի որպէս որ խառն առնու ըստ օրինացն և մնայ երեք. նոյն լիցի և որդւոյ, զի մի է հաւասարութեան օրինակն։ Սոյնպէս թէ երեք ի մի կող-մանէ իցէ և երեք ի մի, ի լինելն մնայ չորրորդ. և այդ ըստ հինգերորդ զարմիցն է, որպէս այն ըստ չորրորդին։ Այսպէս յամենայն խնամութիւնս այնո-քիկ լիցին. զի ի լինելն մնայ երեքն և կամ չորսն։ Բայց հինգերորդն լիցի քահանայից և չորրորդն աշ-խարհականաց ամենեցուն[70]. իսկ երեք ի մի կողմանէ և մին ի միոյ՝ ոչ է լինելի. նոյնպէս երկու ի միոջէ, և երկու ի միոջէ. զի ի լինելն մնան երկու և ոչ երեք։ Արդ այսա-ցիկ ոչ է համարձակելի. այլ թէ յանգէտս՝ քակե-ցին. ապա թէ ոչ կարասցեն, ապաշխարութեամբ ուղղեսցեն. իսկ թէ անգիտանալով արասցեն կամ զընտանութիւնն կամ զսաստ պատուիրանին, այսո-ցիկ այլ ազդ լիցի նոցին։ Ապա թէ երկու ի մի

[70] Ուշադրութեան արժանի է այս կէտը—քահանաներից ա-մուսնութեան համար մի աստիճան աւելի պահանջելը չհասական դէպքերում քան ժողովրդականներից: Ամեն ժամանակ, երբ եկե-ղեցին դժւարացել է ժողովրդին պահպանել տալ սահմանւած չհասական արգելքը, պահպանել է տւել քահաներին այն ի-րաւամբ, որ նրանք պիտի օրինակ լինին ժողովրդին եկեղեցու օրինադրութիւնը կատարելում: Առաքելոց անւան ընծայւած կա-նոնների մի յօդւածը արգելում էր քահանայ ձեռնադրել այնպիսի անձին, որ ամուսնացած էր իր քենու կամ քրոջ աղջկայ հետ:

կողմանէ իցէ և մի ի միոյ, բնաւին մի տայցեն Թոյլ. ապա թէ յամառեալ ստասցեն, քակեսցին. իսկ եթէ ոչ կարեն կամ յաղագս յանդգնութեան և կամ զի իշխանք իցեն, ծանր ապաշխարութեամբ սահմանեսցեն. իսկ թէ անգիտանալով ըստ ատացելոցն իցէ, այլ ազգ լիցի ներելն: Սակայն իշխանաց այլ օրինակ լիցին ներման յամենայնսն[71]: Ապա թէ մին ի միոյ կողմանէ իցէ և մին ի միոյ, բնաւին մի լիցի ներել, թէ գիտելով իցէ և թէ անգիտանալով, նզովիւք քակեսցեն. ապա թէ ոչ կարեն, մի՛ լիցի հաղորդիլ ընդ նոսա, այլ լիցին հեռացեալք իբրև զպոռնիկս մինչև զզջացեալ քակեսցին և ապաշխարութեամբ ուղղեսցին. զի ի լինելն՝ ոչ միոյ և ոչ մի, որպէս ի չորրորդին երկուս և յերրորդին մի: Եւ այդ է ըստ կանոնաց ներման, որ ասէ՝ քանզի որ յանասնոցն բնութիւն սիրելի է անկանել, այնց օղորմութիւն արարեալ զսահմանն մեղմացուցին, ըստ լուացն բնիկն է. յայտ է զի զչորրորդէն և զհինգերորդէն ասէ: Զայդ ըստ օրինաց և կանոնաց

[71] Աչքի առաջ ունենալով այն ժամանակի—12 դարու հայ ազգի դրութիւնը Հայաստան երկրում, հասկանալի է լինում այն դժւարութիւնը, որ պիտի եկեղեցին կրած լինի օտարահակ իշխաններին իր կանոնների գործադրութիւնն ընդունել տալու նկատմամբ. Նոյն իսկ Զաքարէ Սպասալարի պահանջը կաթողիկոսից և վարմունքը Լոռւայ ժողովում, իրան կամքին ընդդէմ կարծիք յայտնող եկեղեցականների հետ, ապացուցանում են իշխանական տների սանձարձակ ինքնակամութիւնները. վասնորոյ և զարմանալի չպէտք է լինի Մխիթարի ցոյց տւած այս զիջողութիւնը իշխանների նկատմամբ:

դատեցայք թէ ո՞րպէս զուգլին և կամ ներեսցին և կամ բաժանեսցին։ Եւ թէ ունէի յաղագս այդորիկ այլ ինչ ըստ տեսութեան դնել մտաց՝ ոչ կամեցայ, զի մի ընդդէմ ինչ կարծիցիմ կանոնաց. այլ որ ոչ թուին ի կանոնաց, ի կենդանի առաջ ձայնէ։ Եւ եթէ վարժ ոք գրոց սովորութեան իցէ, տեսցէ զամենայնսդ հաստատապէս յօրինաց և ի կանոնաց. զի զբազում ի գրոց տեսանեմք յարանց անտեղեակ այդմ լինելով. զի որքան ի միջէ իցէ կողմանէ չորրորդն կամ հինգերորդն զնոյն և ի միւսմէ պահանջեն ի կողմանէ, որ է դուն ուրեք գտանել. զի իւրն առէ օրէնքն զատականս մի՛ յայտնեւր. և զերրորդն թողլով ի միջոցին՝ զչորրորդն հրամայէ առնուլ։ Նոյն և Ծննդոցն ըստ կանոնաց։ Սակայն բազումք ի տգիտաց յառաջ բերեն զՅովհաննու Ոսկեբերանին զասացեալն եթէ՝ օրէնքն ի մերձաւորաց հրամայէ յազգականաց առնուլ կին՝ ոչ կամիլ յօտարս զսէրն տալ, իսկ Աւետարանն՝ առ հեռաւորս զսէրն լինել։ Եւ արդ՝ եթէ այդքան է պատճառն, ընդէ՞ր ճշտիւ խնդրեն ընտանիքն։ Գիտելի է, զի սուրբն աստուածոյն զզօրութիւն օրինացն և աւետարանին առէ, այլ ոչ զպահպանութիւնն. զի ոչ ասաց թէ՝ վասն այսորիկ ոչ է խառնելի ազգայինն, այլ գիտէ զի օրէնք է և պահելի է, զի ըստ ժամանակաց զանազանեցան այդորիկ օրէնք. զի ըստ բնութեան ոչ է մեղք, այլ ըստ օրինաց դրութեան յայտնելոյ գիտութիւն։ Յառաջ քան զօրէնս զքորս իսկ առնուին, և օրէնքն հրաժարեցոյց։ Օրէնքն զհօրաքուեր և զմօրաքուեր և

զեղբօր մօր դստերս ոչ հրաժարեցայց, իսկ կանոնք զայսոսիկ և որ նման սոցին իբրև զմերձաւորսն հրաժարեցայց ասելով՝ մի՛ ոք արասցէ խնամութիւն մինչև ի չորրորդ և հինգերորդ զարմն։ Եւ զայս աննշան ասէ ոչ ըստ օրինացն թուելով՝ թէ որոց իցէ և որոց չիցէ, զի յայտ արասցէ ամենայն ընտանութեանն ծննդօք բաժանել։ Եւ զի Հոգւոյն Սրբոյ է օրինադրութիւնս, զգուշութեամբ պահեսցուք, զի մի՛ դատապարտիցիք։ Եւ արդ՝ եթէ հաճոյ թուեսցին այս դատաստանն յեկեղեցի, զի որքան կար էր ի գրոց ճշմարտելով եդաք, ըստ այնմ վարեսցին. ապա թէ անհաճոյ, մի՛ իբր յանդգուն բամբասցէ, այլ իբր որդիտելոյ թողութիւն շնորհեսցէ մեզ, և ուղիղ դատաստանաւ վարելով ըստ գրոց, որպէս տեսանէ կարողի մտօք զանձն և զմեզ ազատէ ի մեծէ և յանաչառ դատաստանէ։ Միայն մի՛ լիցի կաշառօք կուրացեալ, որպէս զբազումս տեսանեմք, զի այնքան են վրէժխնդիրք այսպիսի օրինաց, որքան զձեռս լի առնեն կաշառօք, զորոց զէտան հատուցանելոց են»։

Գոշ Մխիթարը այս ընդարձակ կանոնով կամենում է բացատրել, թէ ինչպէս պէտք է հասկանալ մեր եկեղեցական կանոնների «մինչև ցչորրորդ և հինգերորդ զարմ» ասելը[72]։ Խնդիրն սկզբից պարզ և հասկանալի կացուցանելու համար նա ասում է. թէ մեր կանոնները մովսիսական օրէնքի կրկնութիւններն

[72] Շահապիվանինը՝ «ցչորրորդ», Դւինինը՝ «ցհինգերորդ» և Պարտաւինը՝ դարձեալ «ցչորրորդ:

նն. «Գիտելի է, զի կանոնք հրամայէ՝ մի ոք իշխեսցէ... մինչև ի չորրորդ և հինգերորդ զարմն, զնոյն իսկ զօրինացն ասէ». Ըստ որում՝ ինչպէս յիշեալ օրէնքը ազգակցութեան երրորդ աստիճանն արգելելով՝ չորրորդին լռուանք է, սակայն հինգերորդի հետ ամուսնանալ. «Զի զերրորդն զծնունդն, զոր հրամայէ չառնուլ, յայտ է զի չորրորդին հրամայէ առնուլ, և որ առնու լինի հինգերորդ». Նոյնպէս են և կանոնների սահմանածները, փոքր զանազանութեամբ միայն. այսինքն՝ վերջիններս չորրորդ աստիճանն էլ արգելել են. «Օրէնքն զհօրաքուեր և զմօրաքուեր և զեղբօր մօր (քեռու) դստերս ոչ հրաժարեցոյց, իսկ կանոնք զայսոսիկ և որ նման սոյին իբրև զմերձաւորան հրաժարեցոյց»: Այս հիման վրայ նա կանոնների բուն իմաստին անտեղեակ է համարում այն մարդկանց, որոնք ասում են, թէ «ցչորրորդ կամ ցհինգերորդ» խօսքերը նշանակում են ամեն մի կողմի համար չորս չորս կամ հինգ հինգ աստիճաններ. «Զբաղումն ի դրոց տեսանեմք յարանց անտեղեակ այդմ լինելով»: Մխիթարը չի մերժում աւելի հեռու աստիճանների վրայ կատարուող կամ մինչև անգամ ամեն կողմից հինգ հինգ աստիճանով հեռացող ամուսնութեան առաւելութիւնը, միայն թէ կանոնների անունով չպահանջեն այդ. կանոնների համաձայն՝ «Եթէ երեք ի մի կողմանէ իցէ և երեք ի մի» օրինաւոր է, որովհետև մէջ անցում չորս աստիճան մնում է իբրև կատարումն «ցհինգերորդ» օրինադրող կանոնի «Եւ այդ ըստ հինգերորդ զարմիցն է». Նոյնպէս «եթէ երեք ի մի

կողմանէ լիցէ և երկու ի մի, և այս ևս լինելի է», ըստ որում մէջ տեղում երեք աստիճան կայ, որ «չորրորդ» տող կանոնի պահանջն է։ Այսպէս էլ, ասում է նա, վարուելու է ամէն չհաստական խնամութիւնների մէջ. այնպէս որ մէջ տեղում միայն երեք կամ չորս աստիճան։ Սակայն լաւ հասկանալով՝ թէ որքան հակառակորդներ պիտի յայտնուին իր կանոնի դէմ թէ՛ ժամանակակից և թէ՛ յետագայ սերունդների մէջ[73], հակառակորդներ, որոնք իրանց

[73] Եւ խեղճ Մխիթարը չի սխալում: Հ. Բաստամեանցը ասում է (Դատաստանագիրք. եր. 229—230. «Փորձ», 1881, ապրիլ, եր. 73) թէ՝ Ս. Էջմիածնի մատենադարանին սեփական Դատաստանագրքի մի ընտիր օրինակի (№ 492) մէջ Մխիթարի սոյն կանոնի տակ ընդօրինակողի ձեռքով գրւած է այսպիսի ծանօթութիւն. «Եւ որ ընթեռնուող աստ զգոյշ կաց, մի որպէս սա ասէ թէ երեք ի մէկն և երեք ի միւսն լինելի է. և ոչ զայն թէ երեք ի մէկն և երկու ի միւսն լինելի է, զի չէ այս ըստ առաքելական կանոնաց որ մինչև ի չորսն անլինելի ասէ և զհինգն ապա լինելի. և այն ոչ ի ծնողաց առեալ այլ յեղբարց: Տես և զՆերսիսի կաթողիկոսի Հռոմկլայեցւոյ յաղագս այսորիկ գրեալն. զի յերկման (երկու կողմից) չորս պահանջէ և ապա ի հինգն առնուն»: Բացի այս ծանօթութիւնից նոյն կանոնի լուսանցքի վրայ, ասում է նոյն յօդւածագիրը, երեք տեղ դրած է. «չէ, չէ, չէ»: Մի որ և է օրինակողի կամ ընթերցողի յաւելւածը կամ մակագրութիւնը մեզ համար չի կարող ունենալ նշանակութիւն Մխիթարի անտարակուսելի փաստերի զօրութիւնը թուլացնելու համար. մեզ համար ցաւալի կ՚լինէր տեսնել հ. Բաստամեանցի նման ուսումնական մարդուն այդպիսի ծանօթութիւնների ազդեցութեան տակ ճնշւած. բայց ուրախութեամբ պիտի յայտնենք, որ այդ ճնշումն երկար չի տևում: Այդ բազմաշխատ

շահերի տուտուտհոս ազգիւներից մէկն են համարել միջոց հաս ու չհասի խնդիրը, նա շտապում է խոնարհութիւնով աւելցնել.—որքան մեր կարողութիւնը ներեց մեզ, «ի գլուխ ճշմարտելով եղաք» . եթէ հաւանելի է եկեղեցուն, թող ըստ այսմ վարուին. իսկ եթէ ոչ՝ թող մեզ չմեղադրեն իբրև յանդուգն. այլ իբրև օգտակար թողութիւն շնորհեն. և ով որ

---

ուսումնականը Գոշ Մխիթարի Դատաստանագրքի ուսումնասիրութեան միջոցին արդարև այն կարծիքն է կազմել, թէ Մխիթարը ոչ թէ իսկապէս հայ կանոնների պահանջած սահմաններն է դնում իր կանոնի մէջ, այլ շատ պակասեցնում է նրանց սահմանածից կամ մեղմացնում. սակայն ժամանակից յետոյ, «Ամուսնութիւնն ըստ Հայոց եկեղեցական իրաւաբանութեան» յօդուածը գրելիս բոլորովին փոխել է իր կարծիքը: Առաջին կարծիքին լինելով՝ նա վերոյիշեալ ծանօթութիւնից յետոյ ասում է. «Առ այս պէտք է նկատենք, որ Մխիթարը յիրաւի շատ մեղմացրել է չհասութեան կանոնը: Ընդհանուր եկեղեցական կանոնով արիւնակիցների ամուսնութեան համար պահանջւում է եօթը ցեղ կամ պորտ. որպիսի կանոնը ընդունւեցաւ յետոյ և աշխարհական օրէնքների մէջ...

Այն առաքելական կոչւած կանոնը, որը ակնարկում է սոյն ծանօթութիւնը, և որը յիշւած է նաև նախընթաց ձը. և ներկայ ձթ. կանոնի մէջ (ձթ. կանոնի մէջ այդ կանոնը չի յիշւում), ասում է մինչև ի չորրորդ զարմ, չորոշելով թէ ինչպէս պէտք է հաշւել. արդեօք՝ չորս չորս ամեն կողից, որ կանէ ութ, թէ՝ չորս երկու ամուսնացողի մէջ, որ կանէ վեց. թէ՝ չորս ամուսնացողներով միասին, որ կանէ իսկապէս երկու: Նոյն անորոշութիւնը տեսնում ենք թէ մեր և թէ արտաքին ժողովների և հարանց կանոնների մէջ, որք սովորաբար ասում են՝ ցչորրորդ, ցհինգերորդ զարմ, եայլն. բայց և այնպէս ընդունւած է իբրև

իր կորովի մտքով՝ աւելի լաւ է հասկանում գրոց իմաստը, թող այնպէս վարուի. միայն թէ չլինի «կաշառք կուրացուցանէ, որպէս զքաղաքումն աւանդեմք. զի այնքան են վրէժխնդիրք այդորիկ օրինաց, որքան պճնեալ լի աննեն կաշառօք»։

Մինչև այժմ ասածը արիւնակցական չհաստա-

---

ընդհանուր կանոն ծիւղագրութիւնը համարել այնպէս, որ բացի ամուսնացողներից—մէջ տեղում մնայ եօթը և այլն աստիճան: Իսկ Ներսէս Շնորհալին. . . պարզ կերպով պահանջում է երկու կողմից չորս չորս, չհաշւելով նախահայրը և ամուսնացողները, որով բոլորը միասին դառնում է տասն և մէկ անձ»:

Երկրորդ կարծիքը կազմած միչոցին, այսինքն մեր եկեղեցական կանոնները առանձին ուշադրութիւնով ուսումնասիրելուց յետոյ, նա իր ծանօթութիւնից դուրս է թողնում վերոգրեալ կտորը (համեմատել Դատաստան. և «Փորձ») և մի և նոյն յօղւածում («Փորձ», 1881, մայիս—յունիս, եր. 22—23) ասում է. «Ի՞նչպէս պէտք է հաշուել աստիճանները ասելով օրինակ ցչորրորդ աստիճան. երկու կողմի համար միասին մինչև չորրորդ աստիճան, թէ ամեն մի կողմի համար առանձին առանձին: Առ այս պէտք է նկատենք որ՝ որովհետև ընդհանուր եկեղեցական կանոնը ծիւղագրութեան աստիճանները համարելու համար ընդունել էր հռոմէական հաշիւը, որ և պահպանւում է մինչև այսօր արևելեան եկեղեցիներում. . . Ուրեմն կանոնի հաշիւը՝ մինչև ի չորրորդ, պէտք է հասկանանք երկու կողմի համար միասին, և ոչ թէ իւրաքանչիւր կողմի համար առանձին: Այդ մասամբ ուիք երևում է նոյն իսկ կանոնից (Շահապիվանի ժողովի կանոնի մասին է խօսքը), որը նախ յիշում է չհասութեան մի քանի օրինակները. «Մի ոք զքոյր, զքեռորդի, կամ զեղբօրորդի, կամ զհօրաքոյր» և յետոյ դնում է ընդհանուր կանոնը, «կամ զայլ ոք յազգի անտի իւրում մինչև ի չորրորդ աստիճան»;

թեան մասին էր. այժմ յառաջ ենք բերում նոյն կանոնի խօսքերը և խնամքականի մասին:

Մխիթարի կարծիքով՝ թէև մովսիսական օրէնքն ու կանոնների ծննդաբանութիւնը չեն յիշում առանձնապէս, որպէս ազգակցներինը, բայց քանի որ առաջինն ասում է «երկուս քորս ոչ առնուլ, իսկ կանոնք զքոյր կնոջ յընտանութիւն առն փոխել սանն», նշանակում է, թէ խնամիքն էլ ընտանիք են համարւում և միւս մերձաւորների նման ծնունդներով կամ զարմերով հեռանալու են, այսինքն՝ նրանց համար էլ պիտի հասկանալ սահման ամուսնութեան չորրորդ և հինգերորդ աստիճանները, «ուստի յայտ է, զի այսպէս ամենայն օրինակաւ խնամիք յընտանութիւն փոխին, և ըստ այլոց մերձաւորաց ծննդոց զատանին: Եւ արդ՝ ըստ օրինաց և կանոնաց այսպէս զուգին, թէ եղբարց ծնունդք իցեն և թէ այլոց... զի վասն այն իսկ զարմ ասէ չորրորդ և կամ հինգերորդ»: Եւ որովհետև ազգակիցների աստիճանները միշտ հաշւում են երկու գըծով մի արմատից իջնող ծնունդների մէջ, և մի գիծը միւսից կամ սովորաբար չի տարբերւում աստիճաններով (երեքը մի կողմ, երեքը միւս) կամ շատ փոքր է տարբերւում (երեքը մի կողմ, երկուսը՝ միւս), այն ինչ խնամքական չհասութեան մէջ շատ տարբեր կարող են լինել աստիճանները, որովհետև տարբեր են լինում ծնունդները. ուստի տարակուսութեան տեղիք չտալու համար նա կարգում է վերջինիս բարդ ձիւղահաշւի մի օրինակ. «Զորրորդ

*ի միոյ կողմանէ սակս լինել. և թէ ի միւս կողմանէ մի պատահի՝ անխտրելի է»*[74]։

*Գօշ Մխիթարի մահից երեսուն տարի յետոյ՝*

---

[74] Որովհետև Մխիթարը արիւնակցական և խնամէական չհասութեանց մասին միասին է խօսում և մէկի ու միւսի համար նշանակած աստիճանները խառն են դասաւորած նրա կանոնի մէջ ուստի այդ ծիւղահամարը—«Չորրորդ ի միոյ կողմանէ... և ի միւս կողմանէ մի», հ. Բաստամեանցը արիւնակցականի համար ընդունելով՝ զանազան ենթադրութիւնների մէջ է ընկնում, մինչդեռ այդ մի պարզ խնամէական ծիւղահաշիւ է: Օրինակ՝

| մի կողմի եղբարք | միւս կողմի եղբարք |
| --- | --- |
| Գրիգոր, Վարդան. | Արամ, Տիգրան, |
| | Շուշան, Մարգարիտ. |

Վարդանը առել է Շուշանին

Գրիգորը առնում է Մարգարիտին

Վարդանն առել է Շուշանին, և Գրիգորը կամենում է առնել Մարգարիտին. մի կողմը՝ չորս աստ. միւս կողմը—մի:

Իսկ եթէ արիւնակցական չհասութիւն ընդունէի Մխիթարի յիշեալ ծիւղահաշիւը, այն ժամանակ պէտք է ներկայել մի այսպիսի աղիւսակ.

**եղբարք.**

Արմենակ —— Վահան
Մխիթար
Հրահատ
Սաթենիկ

Վահանն առնում է Սաթենիկին. այսինքն՝ եղբօր թոռնորդուն:

Արդեօք աշխարհում քանի օրինակ պատահած կ'լինի, որ մի մարդ ընդունակ լինի ամուսնութեան՝ այն հասակում, երբ իր եղբօր թոռան աղջիկը հանդէս է գալիս իբրև հարսնացու:

1243 թուին Կոստանդին Ա. կաթողիկոսը գումարում է Սսի մէջ եկեղեցական ժողով, որ զանազան խնդիրների համար կանոններ սահմանելով՝ տալիս է և արիւնակցական չհասութեան համար մի կանոն, որ մեզ համար նշանաւոր է թէ՛ այն պատճառով՝ որ մեր ազգային եկեղեց. ժողովների չհասական աստիճաններ որոշող կանոններից վերջինն է (այն թըւականից մինչև այսօր այլ ևս ոչ մի ժողով այդ խնդրով չի զբաղուել) և թէ՛ այն պատճառով, որ փաստապէս ցոյց է տալիս, թէ Շնորհալու առ դասս քահանայից ուղղած պատուէրը նոյն իսկ Կիլիկիայում չի դառել հաւանութիւն եկեղեցականների կողմից կամ թէ վերջիններս անկարող են եղել գործադրել ժողովրդի մէջ[75]։ Կոստանդին կաթողիկոսի շրջաբերականը, որ ուղղուած է զանազան տեղեր ցրուած հայ ժողովրդին յիշեալ ժողովի որոշումները ընդունելու համար իբրև օրինական կարգադրութիւններ, ասում է. «Յառաջ քան զերիս ամս գնացաք... առ քրիստոսապսակ թագաւորս մեր Հեթում, և մերով հրամանաւ և նորին ձեռնտուութեամբ ժողովեցաք զեպիսկոպոսունս և զվարդապետս և զմիանձունս, և վանաց առաջնորդս, զիշխանս և զիշխեցողս, այս երևելիս, և այլաբար հանդէս մեծ, քննեցաք զպատուէր Աստուծոյ

---

75 Կիրակոս պատմագրի յետագայ խօսքերն առիթ են տալիս մեզ պնդելու, թէ հայ ժողովուրդի մէջ մինչև այդ ժամանակ դեռ ևս Շնորհալու կարգադրութիւնը անգործադրելի էր. «Զի կարգ ամուսնութեան սուրբ օրինացն բարձաւ, և հեթանոսօրէն արիւն ընդ արիւն խառնէին, զազգականս առնելով»։

և Աստուծոյ մերձակայից առաքելոց և Հայրապետաց, և գտաք զմեզ բազում մասամբք մոլորեալք և դատապարտք, և անպատասխանիք... Զկնի հոլով քըննութեանն՝ ամենեցուն կամակցութեամբ և ձեռնագրով գրեցաք սահման և կանոն չափաւոր և դիւրընթաց և կարելի գործելոյ, ի զօրութենէ գրոց հաւաքեալ»[76]:

Եւ գրոց զօրութիւնից քաղած և հաւաքած կանոններից Է-րորդն այս է. «Զպսակն ընդութեամբ արասցեն, վեց ծննդովք հեռացեալ յազգակցութենէ արեան. փեսայն մի պակաս քան զչորեքտասան ամն և հարսն զերկոտասան»[77]:

Ժողովիս կանոնն իսկապէս քանի՞ աստիճանի ամուսնութիւնն է արգելում։ Հինգը պարտաւորաբար, կ՚պատասխանենք մենք: Նրա խօսքերի համեմատ թոյլատրելի պիտի համարել վեցերորդի ամուսնութիւնը եօթներորդի հետ[78]. ըստ որում նա չի պատւիրում

[76] Կիրակոս պատմագիր. Մոսկւա, 1858, եր. 179—180:

[77] Նոյն. եր. 181. Սսի ժողովի կանոնները չկան մեր կանոնագրքերում, այլ յառաջ է բերում միայն Կիրակոսը, Թւով 23. իսկ հ. Չամչեան նրանից առնելով և համառօտելով, դնում է Թւով 25. Պատմ. Հայ. հատ. Գ. եր. 227: Տատերը Չամչեանից են առնում այդ կանոնների Թիւը: Հ. Բաստամեանցը կարծում է, որ եԹէ Սսի ժողովի կանոնները չկան մեր կանոնագրքերում, պատճառը այն պիտի լինի, որ կանոնագրքերը կազմւած են եղել ժողովից առաջ («Փորձ» 1881, Ապրիլ. եր. 61): ԵԹէ այդ էր պատճառը, այն ժամանակ չպիտի մտնէին կանոնագրքերի մէջ Երզնկացու և Վրիմեցու գրւածները, որոնք Սսի ժողովից յետոյ են յայտնւել:

[78] Սսի ժողովը արգելում է արիւնակիցների մէջ ամուսնու-

վեց աստիճան մէջ տեղում պահել, այլ որ ամուսնացող ազգականները «վեց ծննդով հեռացեալ (լինին) յազգակցութենէն արեան» . օրինակ՝ եղբօր թոռը արեան ազգակցութիւն ունի միւս եղբօր կամ քրոջ թոռան հետ, չի կարող ամուսնանալ նրա հետ — մէկը միւսի համար վեցերորդ աստիճանի արիւնակից է — իսկ եթէ մի կողմը թոռն է և միւս կողմը թոռն-որդի, ուրեմն մի կողմի չորրորդը արիւնակից չէ այլ և միւս կողմի երրորդի հետ, ըստ կանոնի. Հետևաբար արգելքը չի տարածւում նրանց վրայ։ Բայց այն իմաստից, որ ամեն մի ուշադիր անձը կարող է դուրս բերել այդ կանոնի խօսքերից, մեր կարծիքին հաստատութիւն է տալիս և Երզնկացու խօսքը։ Այս նշանաւոր եկեղեցականը ժամանակակից էր Սսի ժողովին և հրաւիրւեց էլ մասնակցելու նրան, թէև չգնաց. մի և նոյն ժամանակ և աշակերտ էր Վարդան վարդապետի, որ շրջեցնում էր ամեն ուրեք Կոստանդին կաթողիկոսի շրջաբերականն ու Սսի ժողովի կանոնները, ընդունել տալու համար եկեղեցականներին և ժողովրդին։ Արդ՝ սա իր «խրատի» մէջ, որ

---

Թիւնը վեց ծննդով հեռու, այսինքն՝ երկու ամուսնացողի մէջ պէտք է լինի վեց աստիճան, որով բոլոր աստիճանների Թիւը կ'դառնայ ութ. Վ. վ. Բաստամեանց. «Փորձ». 1881, ապր. եր. 62: Մի և նոյն հեղինակը՝ մի այլ տեղում. «Մենք վերը տեսանք որ՝ Սսի երկրորդ ժողովը փոխեց Շնորհալու այդ խիստ կանոնը, Թոյլ տալով ամուսնութիւնը վեցերորդին եօթներորդի հետ կամ եօթներորդին ութներորդի հետ». «Փորձ». 1881, մայիս—յունիս եր. 25:

կազմել է «ի կանոնական սահմանաց Առաքելոց սրբոց, և Հայրապետաց և վարդապետաց, և սուրբ հօրն մերոյ Վարդանայ վարդապետի» ասում է Յաղագս պսակի յօդուածում. «Եթէ մէկ գլխն երեք լինի և մէկն չորս՝ լինի և այն»[79],—մէջ տեղում մնում է հինգ աստիճան։

Յառաջ ենք բերում Երզնկացու յօդուածը, որի և կարգն է հետևեալ. «Եւ պարտ է քահանային որ քննէ յառաջ՝ որ չի լինին կարևորք (արիւնակիցներ), այլ յերկու գլխէն մինչ ի ծնունդն չորրորդ հեռացեալ լինի, որ է այսպէս. երկու եղբօր կամ երկու քրոջ թոռներն խնամիք լինին, որ զուրեանց ծնունդքն իրերաց տան. և որ խնամութեամբ հետ մի իրար խառնեալ լինին այլ օտարքն։ Նոյնպէս չորս ծնունդ հեռանան, և ապա այլ խնամենան[80]. և եթէ մէկ գլխն երեք լինի և մէկն չորս՝ լինի և այն։ Եւ եթէ քան զայս պակաս լինի ի սուրբ Հայրապետաց[81] անէծքն և բանադրանքն մնացեալ են այնպիսեացն և քահանայքն և ժողովուրդն».....

Այս յօդուածի նիւթն հեղինակը երկու կանոններ

---

[79] Կանոնագիրք Սինօդի. կան. ռնժա. եր. 303:

[80] Այստեղ «խնամենան» խօսքը գործ դրած է ամուսնութիւնով միանան, նշանակութիւնով. նախընթաց նախադասութիւնը չորրորդներին ամուսնանալ է ասում. և յետագայ նախադասութիւնը՝ չորրորդին երրորդի հետ. ուրեմն այլ կերպ հասկանալ՝ հեղինակին հակասութեան թուլութեան մէջ ձգել կ'նշանակէ, որ իրաւացի չի լինիլ:

[81] Սսի ժողովի հայրերին է ակնարկում:

է յառաջ բերում. առաջինը, որ կրում է այս վերնագիրը «Կանոնք ս. Հարց» Թադէոս Առաքեալին ընծայւածն է[82]. «Եթէ ազգականք ամուսնանան, զինչ տրասցուք» և այլն. երկրորդը «Կանոնք ս. Հայրապետաց» վերնագրով՝ ս. Բարսեղի կանոնն է. «Եթէ ոք առնուցու կին ի մերձաւորէն մինչև ի վեցերորդն և յեօթներորդն, նզովեալ եղիցի» և այլն։

Այս կանոններից յետոյ Երզնկացին աւելացնում է. «Այր կամ կին, որ միոյն եղբօր պսակին լինի և միոյն եղբօրն որդի, մի՛ տալ իրերաց և մի՛ պսակել. նոյնպէս եթէ քրոջ ծնունդն լինի զհարսնացուն» (խնամիական հինգ աստիճանի չհաստութիւն)։

Այստեղ կարևոր ենք համարում յայտնել, որ Սինօդի կանոնագրքում գտնում ենք և երկու առանձին յօդւածներ չհասական խնդրի մասին։ Մեր յառաջ բերածը (կան. ռնժա), գրւած է 303 երեսում, զանազան խնդիրներին վերաբերեալ յօդւածների կարգում, որոնք կրում են վերնագիր՝ «Նուաստ վարդապետ Յովհաննէս Երզնկացի, խրատ հասարակաց քրիստոնէից քահանայից և ժողովրդեան» և այլն։ Նրա այդ խրատական յօդւածների շարքից յետոյ

[82] Ուշադրութեան արժանի է, որ Երզնկացին վերոյիշեալը ոչ Թադէոս Առաքեալի, այլ սուրբ հարց կանոն է անւանում, և որովհետև իր ժողովածուի մէջ նա բերում է Թադէոս Առաքեալի անւամբ նրան ընծայւած կանոններից մի քանիսը, ուստի կարծում ենք, որ նա Թադէոսի չի համարում միայն հարց ու պատասխանով կազմած յաւելւածը, որ դրւած է միւսների վերջի «փառք ամենայն»-ից յետոյ:

գրուած է (եր. 341) մի ճառ «Կիրակոս վարդապետի ասացեալ» որին հետեւում է մի կանոնաձեւ գրուած (եր. 350) այսպիսի վերնագրով «Բան վասն հաւատոյ և օրինաց, պատերազմ պարզ և համառօտ, ի Յովհաննէս վարդապետէ». որի յօդ. 1521 ասում է. «Եւ որք կամին զայս անցաւոր կեանքս ամուսնանալ, նախ պարտ է որ քահանայն քննէ որ կարեւորք չլինին, կամ կնքաւորք, այլ մինչ ի եօթն պորտն հեռանան, որ է այսպէս՝ հայր, և մայր, եղբայր, և դուստր, եղբօր տղայն, դստեր տղայն, եղբօր թոռն, դստեր թոռն, երկրորդ թոռն եղբօրն, (թոռնորդի) երկրորդ թոռն դստերն. չորրորդ թոռն եղբօրն, չորրորդ թոռն դըստերն. չորրորդին տղայքն զիրար առնուն որ մինչ յամեն դիհ չորս պորտ ի մէջն, որ լինի երկու դիհն ի յեղբօրն և ի քրոջն 14 գլուխ. նոյնպէս և խընամիքն հեռանան հինգ գլուխ յամեն դիհէն»: Իսկ յօդուած 1522... «Երկու մարդ կնքաւորք լինին և լինի յերկու դիհն եղբայր և քոյր, և նոցա որդիք, թոռներն խնամիք լինին, և զիւրեանց ծնունդն թոռներն մէկ մէկի առնո»... Ո՞ր Յովհաննէս վարդապետի գրուածն է այս—չենք կարող ասել. բայց պնդում ենք, որ Երզնկացունը չէ, որպէս սխալմամբ կարծում է Հ. Բաստամեանցը[83], այլ կամ մեզ անծանօթ մի Յովհաննէս վարդապետի, կամ թերեւս մի անյայտ հեղինակի, որ օգտուել է կամեցել համբաւաւոր ա-

83 «Փորձ». 1881, մայիս—յունիս, եր. 27:

*նունից*[84]*։ Միւս գրուածը (կան. ուշև. եր.* 389) *կրում է վերնագիր «Կանոն պատկերաց և պորտ թուելոյ» սկզբում դնելով, որպէս և Երզնկացին, տղայի և և աղջկայ ամուսնութեան խրատունք տուող տարիքը՝ ասում է՝ «Եւ պարտ է քահանային որ քննէ առաջ՝ և գիտենայ որ չլինին կարևորք, և կամ կնքաւորք և կամ խնամիք, զի կարևորն, որ է ազգականն, ի չորս պորտն անցանի, և ի հինգ ապա խնամենան։ Եւ կնքաւորն երեք անցանի և ի չորսն խնամենան։ Եւ խնամութիւնն երկու անցանի, և երեքն խնամենան... ի միոյ հօրէ երկու եղբարք միապէս բովանդակ զարիւն հօրն իւրեանց ինքեանս ունին և նոցա որդիքն զերեք մասն արեան ունին յինքեանս և նոցա որդիքն զերկու բաժինն արեանն, և նոցա որդիքն զմին մասն արեանն, և սոցա որդիքն աւարտեցան և ի չորս տարերացն ի միմեանց մեկնեցան. ժամ է նոցա դառնալ միանալ խնամութեամբ, զի վասն չորս տարերացս պարտին հեռանալ ի միմեանց, որ ամենևին սպառի արիւն ազգականութեան...*

*Եւ կնքաւորութեան յերեք ազգն վասն այն անց-*

---

[84] *Այնքան պարզ է երևում մեզ այդ գրուածի Երզնկացունը չլինելը, որ մինչև անգամ աւելորդ ենք համարում նրա քննութեանը միջամտել, այլ միայն բաւական ենք համարում ընթերցողին յայտնել՝ որ վերոգրեալը երևում է միայն Սինոդի կանոնագըրքում. իսկ Ս. Էջմիածնի մատենադարանի այլ ձեռագիր կանոնագրքերը չունին, որպէս վկայում է հ. Բասամեանց («Փորձ»,* 1881. *մայիս—յունիս, եր.* 28), *որոնցից մի երկուսը մենք ևս բաղդատեցինք:*

նի, զի հոգին հռամանեայ է, և չէ որպէս զմարմինն և ի չորս տարերաց, և է կնքաւորութիւնն հոգևոր ազգակցութիւն... իսկ խնամութիւնն ոչ մարմնաւոր ազգակցութիւն է և ոչ հոգևոր, այլ ի միոյ կողմանէ ի դրուց ընտանութիւն, և ոչ ի ստեանց է. վասն այնորիկ երկու պորտ բաւական է հեռանալ... ապա թոռներուն, որ երեք պորտ են, համնի փեսայանալ, և առաւել որ չի լինի թէ մէկ մօր կաթն կերեալ լինին հարսն և փեսայն. և թէ կերեալ են, այլ և զայս պարտ է գիտել, թէ փեսայցուն ումեմն որդեգիր եղեալ է, չկարէ նմա փեսայ լինել և ի դուստր և ի քոյրն և ի կին հօր գրին (հայրագիր, հոգևոր հայր) (որ) որպէս զմայր է որդեգրին, և ազգակցութիւն, թէ ի մօրէ դիհացն երեք լինի անցեալ որ կուհանի ու փեսայանայ։ Եւ թէ քան զայս պակաս լինի, և առնուն, ի սուրբ հայրապետաց անէծքն և բանադրանքն մասնին այնպիսի քահանայքն։ Ցառաջին ժամանակին սուրբ հարքն արգելին զապատս և զանապատս յարեան մերձաւորութենէ, բայց այժմու ժամանակս լուծեալ տեսանեմք զկնի սուրբ հայրապետացն, մանաւանդ յազատաց, զի անխտիր խառնին յիւրեանց մերձաւորան (ան)-կարգ ամուսնութեան (թեամբ)»... Եւ այր և կին, որ միոյն եղբօր դուստր լինի և միոյն եղբօր որդի, մի՛ տալ իրերաց և մի՛ պսակել. նոյնպէս զքոյրոչ (քուրոջ) ծնունդն»...

Որովհետև նախ՝ հ. Բաստամեանցն այս գրուածն էլ ընդունում է Երզնկացունը և նրա վրայ հիմ

նում իր կարծիքը, անտես առնելով իսկականն[85]. երկրորդ՝ Էջմիածնի գրատան մի քանի կանոնագրքեր ունին այդ գրուածը, որ նոյնպէս նշանակութիւն ունի, ուստի հարկաւոր ենք համարում որոշել մեր յառաջ բերածի և այս վերջինի նմանութիւններն էլ, տարբերութիւններն էլ. և ցոյց տալ, թէ որքան հիմնաւոր է Երզնկացուն համարել մի այդպիսի գրուած: Նմանութիւններ: Առաջինի խօսքերը շատ տեղ կրկնւում են բառացի ճշտութեամբ. նոյնպէս մէկի բերած կանոնները բերում է և միւսը. այն զանազանութեամբ միայն, որ առաջ դնում է Պարտաւի ժողովի կանոնը. «Յառաջին ժամանակին սուրբ հայրքն արգելին զպղատս և զանապատս» եւայլն, որ չկայ առաջինում:

Տարբերութիւններ: Առաջինը խօսում է արիւնակցական և խնամիական չհասութիւնների մասին. երկրորդը՝ այդ երկուսի վրայ աւելացնում է և՛ կնքահայրականն և՛ որդեգրականն: Առաջինն իր յիշած չհասութիւնների համար ասում է՝ պահել մէջ տեղում վեց աստիճան և երկու կողմի չորրորդներին թոյլ տալ ամուսնանալ. իսկ եթէ այդքան հեռանալը դժուար լինի՝ մի կողմի երրորդին ամուսնացնել միւս կողմի չորրորդի հետ: Վերջինը պահանջում է արիւնակցականի համար պահել մէջ տեղում ութ աստիճան և երկու կողմի հինգերորդներին միայն թոյլ տալ ամուսնութեան. այն ինչ խնամիականի

[85] «Փորձ», 1881, մայիս—յունիս. եր. 28:

համար բաւական է համարում չորս աստիճան պահել և հինգերորդին․վեցերորդի հետ ամուսնացնել, և այլն։ Երկրորդում յառաջ բերած բացատրութիւնը կնքահայրականի համար «Զի հոգին նուամանեայ է» չկայ առաջինում, այլ Տաթևացու գրածի մէջ. իսկ խնամեականի համար ասածը «Զի խնամութիւնն ոչ մարմնաւոր ազգակցութիւն է և ոչ հոգևոր, այլ ի միոյ կողմանէ ի դրուց ընտանութիւն» և այլն չկայ նոյնպէս առաջինում։ Այս բոլորից պարզապէս տեսնւում է, թէ այդ գրածը Երզնկացունը չի կարող լինիլ։ Ո՞ւմը պիտի համարել ուրեմն։ Ուշադրութեան արժանի է, որ Շուշու կանոնագիրքը, որպէս և Ս. Էջմիածնի մատենադարանի 736 համարը կրող կանոնագիրքը[86] այս գրածը իբրև Ղրիմեցունը դնում են միացրած նրա կանոնական գրածի հետ միասին. որից կարելի է եզրակացնել, թէ կանոնագրքերը երբէք Երզնկացունը չեն կարողացել համարել, բայց իսկական հեղինակին էլ ճանաչել չկարողանալով՝ ոմանք Ղրիմեցու գրածին են միացնում, նրան վերագրելով. իսկ ոմանք նրանը չհամարելով՝ դնում են առանձին, առանց հեղինակի անուան։ Այս բոլորից յետոյ մեզ իրաւունք ենք համարում պնդելու, թէ, այդ գրածը կազմել է 15 կամ 16 դարում մի անյայտ հեղինակ Երզնկացու, Տաթևացու և Ղրիմեցու գրածներից քաղուածներ անելով ըստ հա-

86 «Գրեալ ի Թղթի ի չուղայեցի Գալուստ դպրէ յամի ռմզ և փրկչական 1757 ի Հաշտարխան»:

ծոյից[87]։ Երջանկայիշատակ Ներսէս Ե-ի կոնդակից,— որ կարգելու ենք յետոյ — ընթերցողները կտեսնեն, թէ այդ մեծ Հայրապետը ինչ նշանակութիւն է տալիս այդ գրւածքին։

Յովհան Երզնկացուց յետոյ մնում են միայն երկու եկեղեցական հեղինակներ, որոնք տւել են չհասական ճիւղագրութիւններ — Գրիգոր Տաթևացին և Յակոբ Ղրիմեցին. երկուսն էլ 14—15 դարու մարդիկ։ Տաթևացին թւում է երեք տեսակի չհասական աստիճաններն և կարգում այն պատճառները, որոնք կարևոր են կացուցանում այդ աստիճանների պահպանութիւնը, ասելով. «Գիտելի է, զի նախ առաջին բաժանի ազգն ի բնականն՝ (արիւնակցական) և յօրինացն՝ և ի հոգևորն։ Արդ՝ բնականն է մարմնոյն, և օրինացն խնամութեամբ և հոգևորն որդեգրութեամբ. վասն զի ունիմք զմարմին և հոգի և օրէնք... Արդ՝

[87] Հ. Բաստամեանցը այդ վերջին յօղւածն ընդունելով իբրև Երզնկացու գրւած («Փորձ», 1881, ապր. եր. 74) մի սխալից մի այլ սխալի մէջ է ընկնում ասելով, թէ «Այսպէս ուրեմն Յովհաննէս Երզնկացին հետևելով եկեղեցական կանոններին և մանաւանդ Պարտաւու ժողովին և Ներսէս Շնորհալուն, օրինաւոր է համարում ամուսնութիւնը արիւնակիցների մէջ հինգերորդ և վեցերորդ աստիճանում»: Մեզ զարմացնում են այս խօսքերը նրա համար, որ գիտենք և տեսանք վերևում, թէ նա ինչպէս է հասկանում կանոնների «մինչև ցչորրորդ զարմ» ասելը. և այժմ այդ կանոններին և Շնորհալուն միաժամանակ հետևելը կարելի համարելով յառաջ բերած գրւածի և կանոնների մէջ կարողանում է նմանութիւն գտնել աստիճանների որոշման կողմանէ:

Հաստատուն կանոնք այսպէս եդին հարքն սուրբք[88], եթէ ի հոգևոր ազգն ոչ լինի խնամութիւն մինչ ի երեք ծնունդն այսպէս։ Զի կնքահայրն և սանամայրն ծնունդ մի, և նոցա զաւակն երկու և նոցա թոռն երեք. և չորսն որ է թոռին թոռն լինին խնամիք[89]։ Որոյ պատճառն է, զի հոգին եռամասնեայ է, այսինքն՝ բան՝ ցասումն՝ և ցանկութիւն. իսկ որդեգիրն որ բանիւ կամօք լինի, ոչ լինին խնամիք մինչ ի կրկին ծնունդն. վասն զի բանից և կամաց են զաւակք... Իսկ օրինաց ազգն որ են խնամիքն և բնականն, որ են մարմնականքն, ոչ լինին խնամիք մինչ չորս ծնունդն. վասն զի մարմինն ի չորս տարերց է և ի չորս ծնունդ փոխին չորս արիւնք տարրականք ըստ այսմ օրինակի։ Զի եղբայրն և քոյրն ունին զբոլոր արիւն ծնողին և նոցա որդին, որ է թոռն հօրն՝ ունի զկէս արեանն և թոռին որդին զերրորդ մասն, և թոռին թոռն զչորրորդ մասն. և աստ վճարեցաւ արիւնն և ազգն. յետ սոցա ի հինգերորդ ծնունդն խնամութիւն լինի։ Նոյնպէս և օրինաւոր ազգն խնամութեան պահի մինչ ի չորս ծնունդն. զի և նա ևս

[88] Ո՞վ են այդ հայրերը, որոնց ակնարկում է, — յայտնի չէ:

[89] Ծնունդները թէև նշանակում են եզակի թւով, բայց պէտք է հասկանալ երկու կողմի համար առանձին առանձին. իսկ թոռին թոռն հասկանալու է թոռնորդին: Որպէս տեսնում է նրա յետագայ խօսքից արիւնակցութեան աստիճանների հաշւի մէջ, առաջին աստիճանի ծնունդը որդի ասելու փոխանակ անւանում է նրա հօր թոռը, որով իսկական թոռնորդին կոչւում է թոռան թոռը:

մարմնոյ և արեան ազգակից լինի»[90]։ Տաթևացին այդ խոսքերով իսկապես քանի՞ աստիճանի վրայ կատարելիք ամուսնությունն է համարում թույլատրելի։ Նրա ասելը, «ոչ լինին խնամիք մինչ ի չորս ծնունդն», պիտի հասկանանք այն մտքով, թե չորրորդներն էլ չեն խնամենում այլ նրանց որդիքն—հինգերորդները. «Յետ սոցա ի հինգերորդ ծնունդն խնամութիւն լինի». բայց այստեղ ծագում է մի խնդիր.— եթե չորս ծնունդ պահել պետք է, որովհետև մարմինը չորս տարրերից է բաղկացած, ուրեմն հինգերորդները կապ չունեն նրանց հետ և պիտի ամուսնանան. էլ ինչո՞ւ նրանք նոր պիտի խնամենան[91]. նույնն է և կնքահայրության մասին. եթե, ինչպես ասում է, այդ չհասության մեջ երեք աստիճան (ամեն կողմից) պահելու է մեջ տեղում, ըստ որում «հոգին եռամասնեայ է», ուրեմն այդ հաշվով երկու կողմի չորրորդներն այլ ևս մասնակից չեն «եռամասնեայ» հոգու յատկութեան, և պիտի ամուսնանան միմեանց հետ. բայց նա այդ չորրորդների համար էլ ասում է դարձեալ «լինին խնամիք». «Զի կնքահայրն և սանամայրն ծնունդ մի (ամեն մի կողմից), և նոցա զաւակն երկու, և նոցա թոռն երեք. և չորսն... լինին խնամիք»։

---

[90] Գիրք հարցմանց Գրիգորի Տաթևացւոյ, Կ. Պոլիս Թւին Հայոց ռծհը. պրակ լգ. եր. 611—612:

[91] Ուշադրութեան արժանի է, որ Ղրիմեցին էլ ճիշտ այսպէս ընդունելով՝ խնամական չհասութիւնը՝ չի հաւանում այսպէս կարծողներին, որպէս կտեսնենք փոքր ինչ յետոյ:

Տաթևացին արիւնական չհասութեան ծիւղապլութիւնն և նրան կարևոր կացուցանող բացատրութիւնն առնում է Շնորհալու կանոնից. Հետևաբար և շատ լաւ գիտէ, թէ նրա զօրութիւնով իսկապէս քանի՛ աստիճան պիտի պահուի մէջ տեղում, որ չորս տարերքի սերնդական արեան մէջ ունեցած բաղադրութիւնը լուծուի, անհետանայ։ Սակայն նա չի կարողանում այդ ասել, քանի որ ժամանակակից, մեծ ույժ ստացած սովորութիւնն ոչ միայն այդ չհասութեան աստիճաններն էր Շնորհալու սահմանածից շատ աւելի ընդարձակել, այլ և խնամէական ու կնքահայրական այնպիսի նշանակութիւն տւել, որ հաւասար էր առաջինին. ուստի նա ստիպուած լինելով խօսելու չհասութեանց մասին, անկարանում է ուղղակի իր կարծիքը կամ հայեացքը յայտնել, այլ բաւականանում է միայն յիշել և՛ կանոնը և՛ սովորութիւնը։ Նոյնն ենք տեսնում և նրա «եօթն պորտի» բացատրութեան մէջ. ուր աշխատելով ազատ մնալ հակառակորդների ընդհարումներից՝ հինգ տեսակ ծիւղահամար է դնում, որպէս զի ամեն կերպ գոհացում տւած լինի ժամանակակիցներին։

Այդ հինգ տեսակ ծիւղահամարները նրա խօսքերով այս են. «Արդ մարմնոյ ազգն բաժանի յերեք դէմս, ի վեր, ի վայր. և ի կողմ. ի վերն այսպէս. Առաջին մեք, և հայրն, և պապն մեր, հօր պապն, և պապու հայրն, և պապուն պապն, և ապպապն, որ է եօթն. նմանապէս և ի մօր կողմն։ Իսկ ի վայր

ի խոնարհ. Առաջինն՝ մեք, և որդին, և թոռն, և թոռին որդին, և թոռին թոռն, և նորա որդին, և թոռնեայն որ է եօթն[92]. իսկ ի կողմանէ՝ որպէս եղբայր և քոյր մեր, և նոցին ծնունդքն, և հօր եղբայր և քոյր, և մօրաքոյր և եղբայր, և ծնունդք նոցա մինչև ցեօթն ազգն։ Այս է մին եղանակ եօթն պորտից պարզապէս։ Երկրորդ եղանակն այսպէս. Զի երկու են Հայր և մայր մեր[93] և երկու ծնունդ որդին և դուստրն և երկու եղբայրն և քոյրն, և մեք ի մէջն եօթներորդ։ Երրորդ եղանակն այսպէս. Զի Հայրն և որդին և թոռն, որ է երեք. և թոռին թոռըն, ուր չորս որ լինի եօթն և եզր արենակցութեանն[94]։ Չորրորդ եղանակն այսպէս. Զի չորս ազ-

[92] Այդ եղանակներից առաջինը վերընթաց և վայրընթաց գըծերի համար համէական հաշիւն է և իսկապէս միտ չունի յառաջ բերել. ըստ որում պահանջուած եօթն աստիճանը ինքն ըստ ինքեան անկարելի է, կացուցանում ամուսնութիւնն ուղղագիծ վերընթաց կամ վայրընթաց այդքան հեռու աստիճանների մէջ. փոքր ինչ յետոյ կասենք, թէ ինչից ստիպուած է եղել Տաթևացին այս հաշիւը դնելու:

[93] Այս հայր և մայր կոչուածներին հասկանալու է, եղբայր և քոյր—մէկը մի կողմի համար հայր, միւսը՝ միւս կողմի մայր:

[94] Եթէ այսպէս հաշուած, այսինքն հայր կոչուածին հայր ընդունած լինինք, կունենանք վեց աստիճան և ոչ եօթը. ուրեմն հայր կոչուողին պէտք է իմանալ որդի, որպէս նախընթաց եղանակի մէջ յիշած հայրն և մայրն նշանակում են—մի կողմից եղբայր, միւս կողմից քոյր: Ներկայ հաշւիս մէջ միայն մի գիծն է առնուած, նրա համար էլ ծնողը չի յիշում, այլ որդուց է սկսում. միմիայն այս հաշւով կունենանք մէջ տեղում եօթն աստիճան:

դակցութիւն մարմնական, զի մարմին է ի չորից տարերց, և երեքն հոգեկան, զի հոգին եռամասնեայ է։ Եւ սոքա լինին եօթն ազգ ըստ մեծին Ներսէսի։ Հինգերորդ ի նորս վեց ազգ է[95], որպէս ասէ մեկնիչն Վարդան այսպէս. Զի չորս ծնունդ ի մէջն է ըստ չորից տարերց կատարմանն։ Եւ առաջին ծնողքն ուստի յառաջ եկին չորս ծնունդքն. և հինգերորդն որ լինի խնամութիւն, լինի այս «վեց ազգ»[96]։ Այդ եղանակներից չորրորդը Շնորհալու հաշիւն է յառաջ բերում, որպէս տեսանք վերևում. բայց որովհետև ամեն մի կողմից եօթն պահանջող ժամանակակից սովորութիւնը նրան դժւարութեան մէջ է ձգում, ուստի Շնորհալու ազգակցական չորս աստիճանի վրայ երեքն էլ հոգեկան ազգակցութիւն է աւելացնում։ Հինգերորդ եղանակում էլ Սսի ժողովի մէջ արդէն յայտնի կանոնի մասին խօսելով յիշում է, որ վեց աստիճան է սահմանւել, սակայն ինքը դարձեալ այդ վեց աստիճանը գնում է մի գծի հա-

[95] «Ի նորս» ասելով կամենում է ասել մեզանից ոչ շատ յառաջ սահմանւած: Յիշած Վարդան մեկնիչն Սսի ժողովի կանոնները շրջեցնող Վարդան վարդապետն է: «Ի նորս» խօսքը տեղիք է տւել հ. Բաստամեանցին կարծելու, թէ Երզնկացու կանոնի մասին է ակնարկում («Փորձ», 1881, մայիս—յունիս, եր. 35), մինչդեռ բաւական է միայն Վարդան մեկնիչի անունը իբրև փաստ, թէ խօսքը Սսի ժողովի կանոնի մասին է: Երզնկացին Վարդանի «Սահմանից» կամ գրւածից է օգտւում, ուրեմն Վարդանը իր աշակերտի կանոնի մասին չի խօսել:

[96] Հարցմանց. եր. 611:

մար. և այդպիսով երկու կողմի հինգերորդներին խնամութեան իրաւունքն յայտնելով՝ մէջ տեղում թողած է լինում ամբողջ տասն աստիճան (այդ հաշուով ամուսնանում են երկու վեցերորդներ). Հետևաբար ոչ մի նմանութիւն և ոչ մի կապ չունի նրա ձիւղահաշիւը Սսի ժողովի կանոնի հետ և ոչ հարկաւ Վարդան վարդապետի կանոնական սահմանի հետ. որին ի միջի այլոց հետևելով Յովհաննէս Երզընկացին, երկու կողմի համար մէջ տեղում հինգ աստիճանն էլ բաւական է համարում։

Այս բոլորից յետոյ մենք մեր յարուցած հարցին պատասխանում ենք, ասելով. թէ Տաթևացին մի որոշ կարծիք չի յայտնում չհասական աստիճանների նկատմամբ[97]։ Նա այդ չի կարողանում անել. և չի կարողանում ոչ թէ նրա համար, որ նրան պակասում է հմտութիւն և կանոնների խորին ուսումնասիրութիւն, այլ որովհետև ձնշուած է ապառում ժամանակից, որի մէջ ինքն այնքան ծանր գործ էր յանձն առել կատարելու։

Յայտնի է ի հարկէ, թէ եկեղեցու այդ անմահ մեծ

[97] Սխալ է հ. Բաստամեանցի ասելը. «Տաթևացին բոլորովին հետևում է Ներսէս Շնորհալուն թէ ազգահամարութեան մէջ, թէ արինակցութեան բացատրութեան մէջ և թէ չհասութեան աստիճանների մէջ, որպէս և աստիճանների հաշուի մէջ»: «Փորձ». 1881. մայիս—յունիս, եր. 21:

Տաթևացին միայն մէջ է բերում Շնորհալու կանոնն ու բացատրութիւնը, բայց ինքը նրան չի հետևում, որպէս չի հետևում և Սսի ժողովին, յիշելով նրա կանոնը:

վարդապետը կեանքի մեծագոյն մասը անցկացրեց շարունակ պատերազմի մէջ Հայ եկեղեցու կատաղի թշնամի Ունիթոռական խմբի դէմ, որ անշուշտ տասնապատիկ աւելի շատ ժողովուրդ կ՚կորզէր Հայ եկեղեցու գրկից, քան որչափ կորզեց, եթէ Որոտնեցու և Տաթևացու նման քաջարթուն դիմադիրներ չունենար։

Հանճարաւոր ուսմնագէտն աշխատում է իր գրքի անապահով թոյլ կողմերի մասին աւելի զգուշանալ, որ խափանէ թշնամու գործունէութիւնը։ Գործ ունենալով այնպիսի ուժեղ և մոլեռանդութեամբ ահարկու թշնամու հետ, որ շատ դիւրութեամբ որսում էր ոչ միայն տգէտ ժողովրդին, այլ ազի-տագոյն Հայ եպիսկոպոսներին, Հայ վարդապետներին, Հայ քահանաներին յանուն ճշմարիտ բարեպաշտութեան և ուղղափառ քրիստոնէութեան, որից ամեն մի քայլում շեղուած էր ներկայացնում Հայ եկեղեցին՝ Տաթևացին թէ գրաւոր և թէ բերանացի հակաճառութիւնների մէջ թշնամիների հետ և թէ քարոզութիւնների մէջ իր ժողովրդին աշխատում էր՝ ապացուցանել, թէ Հայ եկեղեցին անթերի է բարեպաշտութեան և ուղղափառութեան բոլոր մասերում էր. և որովհետև զէնքի դէմ՝ զէնք, խօսքի դէմ՝ խօսք, փաստի դէմ՝ փաստ է հարկաւոր, ուստի սխոլաստիքական առարկութիւնների մէջ տոգորուած կրօնաւորներին մի կողմից հնարագիտ պատասխաններ տալով՝ միւս կողմից պէտք էր ոչ մի տեղիք չտալ մեղադրելու եկեղեցին մի որ և է պակասաւոր կամ թոյլ կողմից. իսկ իրան, եկեղեցու պաշտպա-

նին, Թիւրիմացութեան կամ տգիտութեան մէջ. որով հեշտութեամբ կարող էին նրա հեղինակութիւնը վայր ձգելով ամբոխի աչքում՝ թուլացնել նրա հակաճառութիւնների և քարոզութիւնների ազդեցութիւնը[98]։

Այսպիսի տեղիք տալու կարեւորութիւն ունեցող խնդիրներից մէկն անշուշտ պէտք է համարուէր ամուսնական հաս ու չհասի խնդիրները, որի մասին արդէն բազմացած ենք տեսնում քննահաճոյ կարծիքներ և տարբեր հայեացքներ այն ժամանակներում. Տաթեւացին ստիպուած լինելով այդ մասին էլ խօսելու՝ չի կամենում որոշ կերպով կարծիքը յայտնել, ու թէ՛ ժամանակակից եկեղեցականների շահադիտական ընթացքն այդ խնդիրներն վճռելում սխալ և անկանոն ցոյց տալով՝ իր սկսած գործի յաջողութեան չվնասէ և թէ կազմ և պատրաստ կանգնած թշնամիներին ասելու առիթ չտայ, թէ հայ եկեղեցին այդ խնդրումն էլ շեղուել է ընդհանուր եկեղեցու ուղիղ սահմաններից. ուստի և բաւական է համարում լոկ յառաջ բերել բոլոր տեսակ հաշիւները, մինչև ան-

[98] Տաթևացու «Հարցմանց»ը մասամբ արդիւնք է այդ հեղինակութիւնը պահպանելու ջանքի, որ այնքան կարևոր էր ազդեցիկ դեր կատարելու համար. և մասամբ սխոլաստիկ Ունիթորների յարուցած խնդիրներին պատասխանելու անհրաժեշտ հարկի. այս պատճառով գրքի երախտաշատ հեղինակը մինչև անգամ հարկ է տեսել Քրիստոսի խաչափայտի երկայնութիւնն էլ նշանակել, Քրիստոսի ոտների և ձեռների բևեռների անուններն էլ գիտենալ—Ատուր, Թատուր, Գատնատուր, Սատնատուր:

գամ հռոմէական վերընթաց և վայրընթաց ուղիղ
գծի մասին ձիւղագրութիւնն էլ, որ թէև ունի-
թոռնիրը խօսք ու վրայի տուարկայ արած կ՚լինէին։
Այժմ անցնենք Յակոբ վարդապետ Ղրիմեցու ձիւ-
ղագրութեան։ Արիւնական ազգակցութեան մասին
սա համաձայն Ներսէս Շնորհալու պահանջում է,
ամեն կողմից չորս չորս աստիճան մէջ տեղում ու-
նենալ և հինգերորդներին տալ իրաւունք ամուս-
նութեան։ Այդպիսի պահանջի հիմն համարում պատ-
ճառն էլ նա առնում է Ներսէսից, որպէս և Տաթևա-
ցին — չորս տարերքի բաղադրութիւնը։ «Յայտնի է,
ասում է նա, զի ծնողքն ոչ են ազգականք, այլ են
այր և կին և մի մարմին. ազգականութիւնն ի սո-
ցանէ առնու սկիզբն ըստ չորս կերպի — ի վերուստ՝
որպէս սոցա հայրն. ի ներքուստ՝ որպէս սոցա որ-
դիքն. յաջմէ ընտանիք առն. ի ձախմէ՝ որպէս ըն-
տանիք կնոջն, քորք և եղբարք նոյն։ Իսկ որդիք որ
ի սոցանէ յառաջ գան, ունին զբոլոր արիւն ազ-
գականութեան, և թոռունքն զերրորդ մասն, և որ-
դիք թոռանցն զերկրորդ մասն և թոռունք թո-
ռանցն, որ է թոռնիքն՝ զմի մասն. և սոսա վճարեցաւ
արիւն ազգականութեան, սոքա խնամենան, և սոցա
որդիքն, որ են ձագ թոռնիքն՝ առնուն զերար»[99]։

[99] Կանոնագիրք Սինոդի, եր. 392: Ձեռագրի կէտադրութիւնը միշտ ճշտութեամբ չենք պահում:

Աւելի բացայայտութեան համար յետագայ Ճիւղա-հաշւի աղիւսակն ենք դնում, որ Ղրիմեցունն իրանն է։

Այր և կին մի մարմին են, հայր և մայր զաւակացն և պապոյ պապն, և պապոյ ձագթոռնեանցն։

| | | |
|---|---|---|
| Եղբայր | | Եղբայր |
| Որդի | | Որդի |
| Թոռն | | Թոռն |
| Թոռնային | | Թոռնային |
| Ձագթոռնայինքս առնուն զերար. | 100 | Ձագթոռնայինքս առնուն զերար. |

Վերոգրեալը հարազատ արիւնակցութեան համար է. խորթերի համար հեղինակն ասում է. «Այնոցիկ,

[100] Ղրիմեցին պահանջելով ամեն կողմից չորս չորս աստիճան՝ կասկածում է, թէ մի գուցէ իր պահանջը հասկանան բառացի նշանակութեամբ, ուստի շտապում է յայտնել որ եթէ մէկ կողմից մի աստիճան պակաս լինի, իսկ միւս կողմից մին աւելի, «դարձեալ ութն լինի» և կարելի է: Հ. Բաստամեանցը յիշելով Ղրիմեցու ութ աստիճան լրացնելու համար սոյն բացատրութիւնը թէ՝ եթէ մի կողմից մի աստիճան պակաս է, միւս կողմի առաւելութեամբ կլրացուի, թոյլ է տալիս իրան ասելու. «բայց այստեղ, չգիտեմ ինչի, հեղինակը խախտում է իւր կանոնը և պակասացնում է ամեն կողից մի մի աստիճան՝ թոյլ տալով ամուսնութիւնը երկու ութերորդի մէջ, այսինքն, եօթներորդի և

որոց մայրն երկու է և հայրն մէկ, սոքա հարազատ եղբայրք են, և զարիւն ազգականութեան ի հօրէն բոլոր ունին»։ Ուրեմն, ասում է, սրանց համար կանոնը նոյնը կ'լինի, ինչպէս հարազատների համար ասացի. «Ապա թէ երկու հօրէ լինին և ի մէկ մօրէ, սոքա զկէս արեան ունին. զի կինն կէս է և զաւակքն ի նմանէ ոչ կարեն առնուլ զարիւն ազգականութեան ի լման». ուստի մի աստիճան պակասեցնում է այնպիսի խորթերի համար. «Սոցա թոռունքն խնամենան և թոռնեանքն առնուն զիրար»։

Ղրիմեցին չի հաւանում այն մարդկանց կարծիքին, որոնք պահանջում են հարազատ արիւնակիցների ազգահաշուի դէպքում պահել մէջ տեղում տասն աստիճան և տասնևմէկերորդին տասներկուերորդի հետ ամուսնացնել. «Զի են ոմանք որ ի մարմին (արիւնակցութիւն) զհինգերորդ զլուխն ասեն խնամենալ... և ապա վեցերորդն առնուն զիրար... բայց այս ոչ է հաւանելի հասարակ տեսութեան մերոցս և օտարաց[101], մանաւանդ զի որպէս առնեն

---

ութերորդի մէջ, որով մէջ տեղում մնում է վեց աստիճան, մինչդեռ իւր աղիւսակի զօրութեամբ մէջ տեղում պէտք է մնայ ութ աստիճան» («Փորձ», 1881, մայիս—յունիս, եր. 31)։ Ութ աստիճան պահում է Ղրիմեցին, և իր կանոնն էլ անխախտ։ Մեր հանգուցեալ եղբայրը այդպիսի սխալ ենթադրութեան մէջ է ընկել հեղինակի խորթերի համար ասածը հարազատ արիւնակիցների համար ընդունելով. ի հօրէ խորթերի համար նա մի աստիճան պակասեցնում է, որովհետև արիւնը պակասած է գտնում։

101 Հ. Բաստամեանցը Սինօդի կանոնագրքի ոջլն կանոնն

*և արհամարհեն զասացեալսն... զի չորրորդ զգ-լուխն... վճարեցաւ ամիսն, և հինգերորդն, որ ի սոցանէ ծնան... Նոքա օտարք են. ընդէ՞ր ոչ առ-նուն զերար. և այս իրաւի է, զի օտարքն առնուն զերար... Նոքա առանց ամենայն խղճմտանաց առ-ցեն զերար»։*

*Բացի արիւնակցական ազգականութիւնից հեղի-նակը սահմանում է աստիճաններ և հոգևոր ազգա-կցութիւնների — կնքահայրական և որդեգրական չհա-սութիւնների համար։*

*Առաջինի համար պահանջում է վեց աստիճան պահել մէջ տեղում և հրաման տալ եօթներորդին ամուսնանալու ութերորդի հետ։ Կնքահօր «մար-մնաւոր որդին, ասում է նա, և հոգևոր որդիքն, որք են սանքն, նոքա հոգևոր եղբարք են չինամենան, և ոչ որդիքն իւրեանց, այլ թոռունքն խնամենան, և թոռնայինքն առնուն զերար»* [102]. *իսկ երկրորդի—*

---

*ընդունած լինելով Երզնկացունը՝ Ղրիմեցու այս ակնարկն էլ հա-մարում է նրա դէմ, ասելով. «Ղրիմեցին անյարմար է համա-րում և մերժում է այն հաշիւը, որ կարող ենք կոչել Երզնկա-ցու հաշիւ և որ պահանջում է ամեն կողմի համար հաւասար Թւով չորս չորս աստիճանից աւելի»* (*«Փորձ»*, 1881, *մայիս—յունիս, եր.* 31):

*Թէ այդ կանոնն Երզնկացունը չէ, ասացինք իր տեղում. այս-տեղ կասենք միայն, որ Ղրիմեցու ակնարկը մի մարդու դէմ չէ, այլ ընդհանրապէս այդպէս ասող շատ ժամանակակիցների, ո-րոնց պահանջը տալիս է արդիւնք յիշեալ յօդւածը մեզ անյայտ մի հեղինակի գրչի միջնորդութեամբ:*

102 *Կնքահայրական չհասութեան ամեն կողմից երեք աստի-*

որդեգրական կամ, ինչպէս նա է անուանում, օրինաւոր ազգականութեան մասին ասում է. «Օրինաւոր ազգականութիւն է որ մարդ զայլոյ տղայ իւրն որդեգիր առնէ, որ է Հոգեզաւակ. սա միայն է ազգակից առն այնորիկ, որում որդիացաւն, և ընտանեաց նորա։ Զի թէ ուստր է և կամ դուստր որ եղև Հոգևոր որդի, ոչ կարէ առնել նմա զմարմնաւոր ուստր իւր և կամ դուստր որ արար զնա Հոգեզաւակ։ Նաև ոչ Հոգևորին, որ լինենայ սան նմա. զի նոքա Հոգևոր և մարմնաւոր զաւակ են նմա, և սա օրինաւոր (օրինաց) որդի իւր. թէ նորա այլ եղբայրք և քորք լինին, կարէ Հարսնացուցանել և փեսայացուցանել ի տղայս իւր. զի Հոգեզաւակն միայն է նմա օրինաւոր որդի, և քորք և եղբայրք նորա օտար են ի նմանէ և ընտանեաց նորա որ արար զնա Հոգեզաւակ։ Զորօրինակ առեալ ուղէշ մի ի ծառոյ և պատուաստեալ զնա ի յայլ ծառ, նա որ պատուաստեցաւ ի ծառն ինքն միայն միացաւ ի ծառն այն... իսկ այլ ուղէշքն որ իւր ծառն մնացին՝ նոքա օտար են ի ծառէն յայն, յորս ինքն պատուաստեցաւ. նոյնպէս և Հոգեզաւակն ի յիւր ծնողացն, միայն ինքն եղև օրինաւոր որդի այնմ, որում որդիացաւն. իսկ այլ քորքն և եղբայրքն, որ առ իւր մարմնաւոր ծնողքն մնացին՝ նոքա օտարք

ծան պահելու պահանջը Ղրիմեցին էլ բացատրում է հոգու «եռամասնեայ» յատկութիւնով. «Վասն երից մասանցն հոգւոյն դրոշմեցի երեք երեք գլխով»:

են ի Նմանէ, ուրում ինքն որդիացաւ... Դարձեալ... Թէ լիցի առն այն ուստր կամ դուստր որ որդիացոյցն նա նաև իւր մարմնաւոր տղայքն և որդեգիրն ոչ կարեն խնամենալ, այլ իւր թոռներն խնամենան և թոռնեայքն առնուն զիրար... երրորդն խնամենան, և չորրորդն որ օտարացան, առնուն զիրար»[103]:

Ղրիմեցու ասելով՝ ուրեմն որդեգրողը չի կարող ամուսնացնել իր որդեգրին թէ իր իսկական որդիների հետ և թէ իր սանի հետ. որովհետև թէ իր որդիքը, թէ իր սաներն և թէ որդեգիրն եղբայրացած են միմեանց հետ. այս պատճառով որդեգրի և սանի, որդեգրի և որդեգրողի հարազատ զաւակների սերունդների համար կնքահայրական չհասութեան չորրորդ աստիճաններն են սահմանւում ամուսնութեան համար. այն ինչ որդեգրողի զաւակներն և որդեգրի քոյրն ու եղբայրը կարող են ամուսնանալ միմեանց հետ իբրև օտարներ:

## Ե.

Մինչև այստեղ յառաջ բերինք ժամանակագրական կարգով այն բոլոր կանոնները, որոնք սահմանւել են ամուսնական հաս ու չհասի համար. այժմ մի երկու խօսք նրանց նշանակութեան մասին եկեղեցական իրաւաբանական տեսակէտից:

Բոլոր քրիստոնեայ եկեղեցիների համար առաջին

103 Կանոն. Սինոդի, եր. 396—398:

օրէնսդրական աղբիւրը Ս. Գիրքն է. նրանից յետոյ առաքելեան եկեղեցիների հետեւաբար և Հայաստանեայց Եկեղեցու համար օրէնսդրական հեղինակութիւն ունեցողն եկեղեցական ժողովներն են, որոնց տուած կանոնները անհերքելի օրէնք են. իսկ մասնաւոր անձանց — եկեղեցական հարց սահմանածները չունին պարտաւորիչ նշանակութիւն, եթէ որ կամ սահմանող անձն իր անսահման երախտիքով և բացարձակ սրբութեան փառքով եկեղեցու համար անպայման հեղինակութիւն չի համարւում, որպէս օրինակ մեզանում Թադէոս և Բարդուղիմէոս առաքեալները, Ս. Գրիգոր Լուսաւորիչն և այլն. և կամ եթէ ինքն եկեղեցին պաշտօնապէս չի ճանաչել նրա գրուածն իբրև պարտաւորիչ կանոն։ Այս հիման վրայ վերակարգեալները պէտք է բաժանենք երկու մասի, մինն անուանելով ժողովական կանոններ կամ պարտաւորիչ օրէնսդրութիւններ և միւսը մասնաւոր հրահանգներ կամ եկեղեցական հարց կարծիքներ։ Առաջինում զետեղում ենք Աշտիշատի, Շահապիվանի, Դւնի, Պարտաւի և Սսի ազգ. եկեղեցական ժողովների կանոնները. երկրորդում՝ Շնորհալու, Գոշ Մխիթարի, Յովհան Երզնկացու, Գրիգոր Տաթեւացու և Յակոբ Ղրիմեցու գրուածները։

Առաջին մասը պարզապէս պատկերացնում է մեր եկեղեցու ինքնուրոյնութիւնն և անկախութիւնը։ Նա, ինչպէս ասացինք, տածելով հանդերձ ընդհանուր եկեղեցուն յատուկ մերձաւոր արիւնակիցների ամուսնութիւնը խափանելու փափագը, կանգնում է

*դարձեալ մի որոշ սահմանի վրայ ապա անհաշիւ հետեւողութիւնից.—երկրորդը, ընդհակառակն, ներկայացնում է մասամբ իբրև արդիւնք արտաքին ազդեցութեան։ Մէկով երեւում է եկեղեցու ազատ, անյողդողդ ուղղութիւնն ու անսխալականութիւնը. միւսով՝ մասնաւորների ընկճւող բնաւորութիւնը։ Աւելի պարզութեան համար կազմում ենք երկու մասերի համար յետագայ զուգընթաց աղիւսակները։*

### ԱՌԱՋԻՆ ԱՂԻՒՍԱԿ.

*Հարազատ արիւնակիցների կամ ազգակիցների չհասութիւն.*

| Դար. | Եկեղեցական ժողովներ. | Եկեղեցական հարք. | Դար. |
|---|---|---|---|
| 4-րդ | Աշտիշատի—արգելում է չորրորդ աստիճանի (ըստ Մովսիսական օրինաց) ամուսնութիւնը. այնուհետև չորրորդին թոյլատրւում է ամուսնանալ հինգերորդի հետ: | Ներսէս Շնորհալի — «Յերկուց կողմանցն զչորրորդ ազգին զլխաւորութիւնն կատարեալ ունիցին (մէջ տեղում թողնել ութ աստ.) քանզի բնութիւն մարմնոյ ի չորից տարերաց գոլով...» | 12-րդ |
| 5-րդ | Շահապիվանի—նոյնն է հաստատում և կանոնին հակառակ ամուսնացածներին օրինադրում է բաժանել միմեանցից: | Գօշ Մխիթար — «Թէ երեք ի մի կողմանէ իցէ և երեք ի մի լինելի է (մնում է չորս). Թէ երեք ի մի կողմանէ իցէ և երկու ի մի՝ այս ևս լինելի է... զի ի լինելն մնայ երեք»: | 12-րդ |

| Դար. | Եկեղեցական ժողովներ. | Եկեղեցական Հարք. | Դար. |
|---|---|---|---|
| 6-րդ | Դւնի—չորս աստիճան պահել մէջտեղում և հինգերորդին վեցերորդի հետ ամուսնանալու իրաւունք տալ: Սակայն կանոնի հակառակ ամուսնացածներին չի բաժանում, այլ ապաշխարութեան է ենթարկում: | Յովհան Երզնկացի — «երկու եղբօր կամ երկու քրոջ Թոռներն զիւրեանց ծնունդքն իրերաց տան»: Եւ եթէ մէկ դիհն երեք լինի և մէկն չորս՝ լինի և այն» (հինգ աստ. մէջ տեղում): | 13-րդ |
| 8-րդ | Պարտաւի — վերստին ընդունում է Շահապիվանի ժողովի կանոնը, թոյլատրելով չորրորդին ամուսնանալ հինգերորդի հետ, հակառակ կանոնի ամուսնութիւնը նզովում է: | Գրիգոր Տաթևացի — ( Արիւնակիցներն ) «Ոչ լինին խնամիք մինչ ի չորս ծնունդն» (մէջ տեղում Թողնել ութ աստ.) Դարձեալ նա. «ի հինգերորդ ծնունդն խնամութիւն լինի» (վերջինիս համեմատ մնում է մէջ տեղում տաս աստիճան): | 14-15 |
| 13-րդ | Սսի — «վեց ծննդովք հեռացեալ յազգակցութենէ արեան» (հինգ աստիճան պարփաւորապէս պահել): | Յակոբ Ղրիմեցի—«Հինգերորդն (երկու կողմի) օտարք են... առնուն զիրար» (Թողնել ութն աստ.): | » |

Խորթ արիւնակիցների համար առանձին աղիւսակ չենք կազմում. ըստ որում մեր եկեղեցական ժողովների կանոններն այդ մասին չեն յիշում. եկեղեցական հայրերից էլ միայն երկուսն են խօսում— Գօշ Մխիթար և Յակոբ Ղրիմեցի։

Առաջինը խորթերի չհասական հաշիւն էլ այնպէս է ընդունում, ինչպէս հարազատներինը. այսինքն՝ երեք աստիճան մէջ տեղում պահել և չորրորդին հինգերորդի հետ ամուսնանալու հրաման տալ. իսկ վերջինը խորթութիւնը երկու տեսակ է ընդունում.— խորթ՝ հօր կողմից և խորթ՝ մօր կողմից։ Նրա կարծիքով՝ որոնք մի հօրից են և երկու մօրից «զարիւն ազգականութեան ի հօրէն բոլոր ունին». ուստի նրանց համար չհասական կանոնը, ասում է, նոյնը պիտի լինի, ինչ որ հարազատների համար. իսկ որոնք մի մօրից են և երկու հօրից, նրանց համար երկու աստիճան պէտք է պակասեցնել. «Զի կինն կէս է և զաւակքն ի նմանէ ոչ կարեն առնուլ զարիւն ազգականութեան ի լման»։

ԵՐԿՐՈՐԴ ԱՂԻՒՍԱԿ.

Խնամէական չհասութիւն.

| Եկեղեց. Ժողովներ. | Եկեղեցական Հարք. | Դար. |
|---|---|---|
| Չեն յիշատակում. | Գօշ Մխիթար. Խնամէականի համար էլ այն աստիճաններն է ընդունում, ինչ որ արիւնակիցների համար (չորրորդը ամուսնանում է հինգերորդի հետ): Յովհան Երզնկացի. «Որ խնամութեամբ հետ մի իրար խառնեալ լինին այլ օտարքն, նոյնպէս չորս ծնունդ հեռանան, և ապա այլ խնամենան» (մէջ տեղում մնում է վեց աստիճան): Գրիգոր Տաթևացի. «Օրինաց ազգն որ են խնամիքն... ոչ լինին խնամիք մինչ ի չորս ծնունդն» [109]): | 12-13 |

104 Մինչև հինգերորդ դարը ինչպէս տեսանք յունական եկե-

անձին աղիւսակ չենք կազմում և հոգևոր ազ-
ւթեան համար. ըստ որում եկեղեցական ժո-
րն այդ մասին սահմանած կանոն նոյնպէս չու-
իակ եկեղեցական հայրերից միայն Տաթևացին
իմեցին են, որ խօսում են կնքահայրական և
րական չհասութիւնների մասին և երկուսի էլ
ները փոքր ինչ յառաջ կարգւած լինելով՝
ւթեան հարկ չեն թողնում։

ս ամենից յետոյ կարգում ենք այժմ օրինակ-
ստենական գործերից, որպէս զի ցոյց տւած լի-
թէ մեզ մօտիկ անցեալում և ներկայումս
ական հաս ու չհասի խնդիրներն որպիսի վը-
ր են առել և առնում։

թերցողներին ձանձրութիւն չպատճառելու հա-
հարիւրաւոր օրինակներից յառաջ ենք բերում
Ղարաբաղի Կոնսիստորիայի գործերից և չորս՝
սի։ Առաջինների գործերի տարեթիւն և №№-
էլ ենք նշանակում. երկրորդների՝ միայն այն
աններինը, որոնցից պատճէններ ենք հանել։

ր բերած օրինակներից մինը կնքահայրական
ւթեան է և տասնևմէկը՝ խնամէականի։[*] Ա-
ւկցական կամ ազգակցական չհասութեան օրի-
ր չենք կարգում, որովհետև սակաւ են պա-
լ մեզ գործերի մէջ. եղածներն էլ՝ եթէ ոչ

---

[*] սահմանած խնամէական չհասութեան արգելքն է երկու
ին առնելու մասին.—Առաքելական կոչւած (19-րդ) Նէո-
ւայի ժողովի (2-րդ) և ս. Բարսեղ Կեսարացու (76-րդ)
եր։

եկեղեցու, գոնէ մեր եկեղեցական հայոց սահմանած աստիճանների վրայ են գտնուել, շատ աննշան բացառութեամբ և միանման—8—10 աստիճանների. և այդ տեսակէտից չեն ներկայացնում անկանոնութեան փաստեր։ Բայց թէ ինչ որ գործերից չի երևում, ինչպէս տեղի չի՞ ունեցել և ունենում արդեօք ժողովրդի մէջ։ Կան շատ օրինակներ[105] նոյն իսկ մեզ շատ մօտիկ ժամանակից վերջին երկու տասնեակ տարիներից. սակայն կ'յիշենք մի երկուսը միայն։

«Մշակի» 1879 թուի համարներից մէկում Մողդոկի թղթակցութիւնը հաղորդեց նոյն քաղաքում տեղի ունեցած անսովոր չհասական նշանադրութեան մասին—մի եղբօր որդին կին է առնում միւս եղբօր թոռին.—թղթակիցն ասում է թէ՝ չնայելով որ այսքան ծանր և անօրինակ բան է այս արիւնակցական չհասութիւնը, բայց պարզեալ տղայի հայրը հաստատուն հաւատացած է, թէ կարող է էջմիածնից հրաման բերել տալ, որովհետև հարուստ մարդ է[106]։

---

[105] 1879 Թւին Ղարաբաղի վիճակի Վարանդ և Դիզակ գաւառների վրայ կարգած վերահասութիւնը ցոյց տւեց, որ շատ արենական մօտիկ չհաս պսակներ կատարւել են ծխական քահանաների տւած պարզ, անճիւղագիր յայտարարութիւնների հիման վրայ:

[106] 1880 Թւին Մայր Աթոռի Ղազարապատ հիւրանոցի սենեակներից մէկում վիճակւել էր մեզ բնակիլ Ղարաբաղի Թեմի կառավարչի պաշտօնը Թողնելուց յետոյ: Հիւրանոցի Սրբազան հիւրընկալը մի օր յերդմպատառ վազում է մեզ մօտ և պահան-

Նոյն լրագրի 1879 թ.ւի 150 համարում տպած Կալկաթայի Թղթակցի նամակը խօսելով այնտեղ կատարուած չհաստական պսակների համար՝ ասում է. «Ոչ սակաւ գայթակղութեանց պատճառ տուեց (առաջնորդը)... Թոյլ տալով կատարել այնպիսի չհաս պսակներ, որոնց օրինակը մինչև այսօր տեսնուած չէ մեր կողմերում. ինչպէս՝ երկու հարազատ քոյրերի զաւակները միմեանց հետ պսակելը (պ. Մարգար Գրիգորի դուստրը պսակվում է Պինանենդեցի պ. Յովսէփ Անտօնի որդու հետ, որոնց մայրերն հարազատ քոյրեր են»): Եթէ ճիշտ է Թղթակցի տուած չհաստական ճիւղագրութիւնը, ուրեմն պսակը կատարուած է Մովսիսական օրէնքով: Այդ մասին այսքան. այժմ տեսնենք չհասութիւնների միւս երկու տեսակը:

## ՕՐԻՆԱԿՆԵՐ.

### Ա.

(Գործի տարեթիւը 1849, № 39).

Նուխեցի Մ. Մանուկեան կամենում է ամուսնանալ Մարիամ Յակոբեանի հետ. Նրանց մէջ լինում է

---

ջում Թողնել սենեակը և հեռանալ, որ այդ տեղ պիտի ընդունի Մոզդոկից եկած մի պատուաւոր հիւրի: Այդ պատուաւոր հիւրը մի հարուստ վաճառական էր: Առատ աջահամբոյրի ակնկալութիւնը խլեց-մեզ պէս մի խեղճ կրօնաւորից սենեակը: Այդ ժամանակ իմացանք, որ Ղազարապատի սենեակների մէջն էլ պատուաւորը կայ. ինչ և իցէ. այդ պատուաւոր հիւրի գալստեան Նպատակն էր յիշեալ պսակի կատարման հրամանն ստանալ. բայց բանակցող կողմերը համաձայնութեան չեկան գումարի քանակութեան մասին.—այդ պատճառով գտնուեցաւ քահանայ, որ կատարեց պսակն առանց հրամանի:

կնքահայրական ուխտ ատրճանի չհասութիւն[107]. Կոնսիստորիայն դժուարանալով լուծում տալ՝ դիմում է Սինոդին, որ տալիս է հրամանը, ասելով. «Օրէնք Հայոց եկեղեցւոյ հրամայեն ի յօդ. ուղղ. Ազգականն ի չորս պորտն անցանի ի հինգն խնամենայ. կնքաւորքն երեքն անցանեն և ի չորսն խնամենան և խնամութիւնն երկուքն անցանեն և երեքն խնամենան»[108]:

---

[107] Ներսէս Ե կաթողիկոսը մի մակագրութեամբ, որ արել է 1852 թւին հոկտ. 10-ին Սինոդի 1851 թւի № 105 գործի թերթերից մինի վրայ, ասում է. «Առաքեմք ի Սինոդն Ս. Էջմիածնի զայս գրութիւն վասն կնքահայրութեամբ խնամութեանց... թէ Վարդան Պօպով մկրտեալ է զԱռաքել որդին Աննայի, և որդին Վարդան Պօպովի Գրիգորն կամի առնուլ զՄարիամ դուստրն եղբօր Աննայի ի կին. այլ Սինոդն արգելեալ է որպէս ընդդէմ կնքահայրութեան օրինաց: Ոյր աղագաւ մեզ անյայտ գոլով այսպիսի կանոնք կամ օրէնք կնքահայրութեանց, մեք վասն կնքահարց կանոն զայն համարիմք, զի կնքեալն նորա համարեսցի վասն որդւոց յինքենէ իբրև եղբայր և ազգակցութիւն նոցա ըստ հոգևոր և մարմնաւոր որդւոց կնքողացն յարաձգեսցին մինչև ցերրորդ ծնունդսն նոցուն հոգևոր և մարմնաւոր հայրութեանց կնքողին. իսկ եղբարք կամ քորք և կամ հօր եղբայրք և հօրաքոյր կամ մօրաքոյրք կնքողին և կնքելոյն չունիցին պարտաւորիլ ընդ ազգակցական մերձաւորութեանց պարտաւորութեամբ. և ըստ այսպիսի մերում մտահաս հասողութեանց մեք գրեալ եմք առ ոմանս Կոնսիստորեայս զծիւղահամարութիւն կնքահայրութեանց առնել միայն ըստ որդւոց կնքողին և օտար համարել զեղբայր և զքոյր և զայլ ազգականսն կնքողին ըստ արենակցութեան ըստ որոց առաջադրեմ Սինոդին խնամակալութիւն (թեամբ) ժողովըրդեան կարծել զնեղութիւն նոցա, վասն պսակի որդւոց դստերաց նոցա ի մասին հոգևոր ազգակցութեան կնքահարց»:

[108] Սինոդն այն անանուն հեղինակի յօդւածն է բերում իբրև

## Բ.

(1853 Թ. № 4)

*Նուխու Հոգևոր Կառավարութիւնը ներկայացնում է Կոնսիստորիայի տնօրէնութեան Ա. Հայրապետեանի պսակի խնամէական չհաստութիւնը, որ այս է.*

| | |
|---|---|
| *եղբայր և քոյր.* | *եղբայր և քոյր* |
| *Յակոբ Եսթեր* | *Յովակիմ Հերիքնազ* |
| *որդի որդի* | *դուստր դուստր* |
| *Աթասի Ղահրամանն* | *Մարգարիտ Նախշուն* |

*Կ · ա է Լ*
*ա ո ե Լ ւ*
*մ ո*
*ի ա ռ ն*

*Այս չհաստութեան մէջ եօթն աստիճան կայ. և թէև նախընթաց օրինակի մէջ յառաջ բերած Սինոդի հրամանն ասում է. «Խնամութիւնն երկուքն անցանեն և երեքն խնամենան» (մէջ տեղում վեց). բայց Կոնսիստորիայն աններելի գտնելով արգելում է. նրա հետ միասին արգելելով մի և նոյն աստիճանի խնամէական մի այլ չհաստութիւն — Եաղուբլուեցի Պետրոս Գաբրիէլեանի* [109]։

---

*Հայոց եղեղեցու օրէնք, որի մասին իր տեղում խոսեցինք և ապացուցինք թէ ոչ Երզնկացունն է և ոչ Ղրիմեցունը:*

[109] *Արգելելուց մի երկու ամիս յետոյ Եաղուբլուի ծխատէր քահանան յայտնում է Հոգ. Կառավարութեան և Կոնսիստորիային, թէ Գաբրիէլեանի հարսնացուն գնալով փեսայի մօտ՝ ապրում է նրա հետ անպսակ:*

Գ.

(1853 Թ. № 99).

Ազգախեցի Ա. Արղամանեանի պսակի մասին սկսւում է գործ։ Նրա և իր հարսնացուի մէջ կայ խնամէական չհասութիւն վեց աստիճանի։ Նախընթաց երկու եօթն աստիճանի խնամէական չհասութիւնների արգելող Կոնսիստորիայն այժմ վեցը—Արղամանեանինը ներելի է համարում. միայն չվստահանալով ուղղակի հրաման տալ՝ իր եզրակացութիւնը ներկայացնում է Բաղդասար մետրապօլտին, խնդրելով կամ հրաման տալ պսակի թոյլտուութեան կամ միջնորդել Ծայրագոյն Հոգևոր Իշխանութեան առաջ. և նա յայտարարութիւնով դիմում է Ներսէս Կաթողիկոսին։ Յառաջ ենք բերում այդ յայտարարութեան մեզ համար կարևորութիւն ունեցող մի քանի մասերը... «Նախ՝ թէ ժողովրդականք Հայոց երկրիս, նա մանաւանդ բնակիչք գիւղօրէից, ի խնամենալն ընդ միմեանս արգելք ինչ համարեն ըստ վաղեմի սովորութեան զմերձաւորութիւնս արենական ազգակցութեան և կրնքաւորութեան. իսկ ի մասին խնամէական բարեկամութեան զնշանադրութիւնս զաւակաց իւրեանց կատարեն առանց նախընթացաբար հարցանելոյ ուստեք առ այն գոնէ բանաւոր յայտնութեամբ զլուծումն. և գլխաւոր պատճառն այսորիկ է առածն ծնացեալ ի նախնեաց իբրև աւանդութիւն, թէ «խնամութիւն է, ո՞նչ կայ, ո՞նչ չհաս է, ոչ արիւն կայ ոչ մեռոն». ուստի և հոգան զամենայն կարևոր պատրաստութիւնս և զծախս հարսանեաց և ապա ե-

կեալ խնդրեն, աղաչեն, թախանձեն և նեղեն անգամ ի տալ զթոյլտուութիւն... Գործակատարն ունելով զկարծիս յայսպիսի դէպս... խնդրէ զարժանապատուն տնօրէնութիւն ատ. ընդունելոյ ի Ծայրագոյն Հոգևոր իշխանութենէն զպարզ և զյայտնի կանոնս վասն պսակաց ի խնամեական աստիճանս եղելոց... Վիճ. Կոնսիստորիայն ստացեալ զայս յայտարարութիւն գործակալին գաւառակաց... և ի խնդիր լեալ եկեղեցական կանոնի համեմատ աստիճանի խնամութեան յիշեալ Ազոխեցի երկուց տանցն, եգիտ զմին գրեալ օրինակ զայս. «Խնամութիւնն ոչ մարմնաւոր ազգակցութիւն է և ոչ հոգևոր, այլ ի միոյ կողմանէ ի դլուց ընտանութիւն, և ոչ ի սմենէ, վասն այնորիկ երկու պորտ բաւական է, անցանելը... Համեմատեալ զայս կանոն ընդ խնամական հաղորդութեան յիշեալ երկուց տանց, եգիտ Կոնսիստորիայն զներկայ մատդրեալ պսակն... Թոյլատրելի: Սակայն տարակուսեալ, թէ մի գուցէ չէ հրահանգելի յիշեալ կանոնն... խնդրեաց յինէն իբրև ի վիճակաւոր արքեպիսկոպոսէ զփութանակի կարգադրութիւն կամ ինքնին ուղղակի տալոյ կամ ի Ծայրագոյն Հոգ. իշխանութենէն խնդրելոյ զլուծումն վասն հրահանգութեան յայսմ հետէ վերոնշանակեալ կանոնաւն ի դիւրութիւն ժողովրդականացն ի պատահեալ և ի պատահելի դէպս... Աստուածարեալ Հայրապետ... որպէս նկատեմ և ես ի ներկայ ժամանակի աստ ի վիճակիս Ղարաբաղայ, կարծեմ թէ և յայլ վիճակս ժողովրդականք մեր Հայոց ի քաղաքս և ի գիւղօրէս

այնքան են շաղկապեալք յիրերաց միջի կապակցու-թեամբք ազգականութեանց, կնքաւորութեանց և խնամութեանց, մինչ զի ի կամիլն ուրուք նշանել զոք ինքեան ամուսին, ի վեր երևի գրեթէ միշտ անդէն առ նմին յօդ ինչ մերձաւորութեան... մանաւանդ զի ոչ ոք գրեթէ յօժարի մտանել յամուսնութիւն ընդ օտարի, այլ ընդ իւրում քաղաքակցի կամ գիւղակցի։ Եւ ի չներելն պարագայից խափանելոյ զշարունակութիւնն տարաձայնին տրտունջք զքահանայից և զգործակատարաց... և բազում այն է, զի մի անգամ նշանեալք... այլ և ոչ կարեն և ոչ կամին դառնալ ի միմեանց... և ժամանակս չէ ժամանակ, ցուցելով գրեմ, ընտրելոյ զգեղեցկութիւն և զվայելչութիւն հոգւոյ և առաքինութեան, այլ միայն թէ հաւասա՞ր է ինքեան փողով, ունի՞ գչայ, զսամօվար, ունի՞ զշարեկամս, ևայլն։ Եւ այսպէս առնեն զխնամական բարեկամութիւն յընթացս շատ կամ սակաւ ժամանակի և ի մերձենալն աւուրց հարսանեաց և պսակի յայտնեն զայնմանէ գործակատարաց—այլ ընդ լսելն՝ թէ այդ պսակ ոչ կարէ կատարիլ ի պատճառս այս ինչ կամ այն ինչ մերձաւորութեանց, սկսանեն տրտնջել զհոգևորականաց և զեկեղեցական կանոնաց, և ապա կամ ինքնին կամ ի ձեռն ազգականաց և կամ այլուց պատուաւոր անձանց, այլազգեաց իսկ անգամ, սկսանին գալ և գնալ, խնդրել, աղաչել, և և սպառնալ բանիւք ի փախուստ տանելոյ զխօսեցեալն, որպէս գիտելի է քանիցս... Աստուածարեալ Հայրապետ...

8

կարևոր դատեցայ առաջարկել զայսմանէ ուղղակի ի տեսութիւն Աստուածարեալ Հայրապետիդ, խընդրելով ամենախոնարհաբար զբարեհաճութիւն Վեհափառ կամաց Ձերոց վասն շնորհելոյ զլուծումն առ ի հրահանգել վերոգծագրեալ եկեղեցական կանոնաւն, որով ունիք խնամարկել ժողովրդեանն, կարծելով զնեղութիւնս նոցա վասն սոյնօրինակ պսակաց, զորպիսի խնամարկութիւն ժողովրդեան արարեալ է Հայրապետական բարեհաճութիւն Ձեր նաև ի մասին կնքաւորական մերձաւորութեանց, որ յայտնի է մեզ արդէն հրամանաւ Սիոդին Ս. Էջմիածնայ»։

Ներսէս Կաթողիկոսը մերժելով յիշեալ չհասական պսակի իրաւունքը՝ ասում է. «Օրէնք Հայոց վասն խնամութեանց. «Երկուց կողմանց խնամութեանց երրորդքն զորդիս և զդստերս իւրեանց կարեն պըսակել օրինօք (ութ աստիճան). իսկ ինքեանք երրորդքն չունին զիրաւունս ընդ միմեանց մտանելոյ ի պսակ» (Ներքևում նրա կոնդակը ամբողջութեամբ ենք յառաջ բերում)։

Դ.

(1856 Թ. № 143).

Նուխու հոգ. Կառավարութիւնը ներկայացնում է Կոնսիստորիային մինչև տասնևչորս չհասութեանց ճիւղագրութիւններ խնամիական վեց աստիճանի։ Թեմ. ատեանը բացասում է բոլորին, իբրև աններելիների։ Մի քանի ամսից յետոյ անձամբ գալիս և խնդրում է Նուխու յաջորդն և այդ պսակներն ան-

ներելի համարող Կոնսիստորիայն այժմ մի պատճառաբանութեամբ բոլորին էլ հրաման է տալիս մի օրագրով։

## Ե.

(1859 Թ. № 18).

Աւետարանոցեցի Փ. Ա—բեկեանը կամենում է ամուսնանալ Ե. Աղամեանի հետ. Կոնսիստորիայն ներկայացրած ճիւղագրութեան մէջ գտնելով հինգերորդ աստիճանի խնամիական չհասութիւն, աններելի է համարում. բայց կարճ ժամանակից յետոյ այնքան քաղցրանում է, որ կամենում է ինչպէս որ լինի մի հնարք գտնել և այդ պսակի հրամանը տալ. և ահա յառաջ է գալիս մի զարմանալի և տարօրինակ հնարագիտութիւն։ «Որովհետև յայտնի եղև տեղիս», գրում է 1859 թւի յունուարի 19-ի օրագիրն, «զի յիշեալ Եղիսաբէթն այրի է և ունի բաց յայրիութենէն և զդուստր մի Աննա երից ամաց, ծնեալ յառաջին առնէ իւրմէ, մանաւանդ զի Եղիսաբէթն այժմ ոչ համարի այնչափ դուստր Աղամբէկին, որչափ կին հանգուցեալ Իւան-բէկին.... Վասնորոյ զայսոսիկ հանգամանս համարել ի տեղի միոյ ներելի աստիճանի. ուստի և թոյլատրելի զպսակն նոյն անձանց»։ Ո՞վ կարող էր մտածել այսպիսի սքանչելի հնարք գործին յաջող ընթացք տալու համար — ոչ ոք, բայց կոնսիստորիական Յակոբ-խալիֆաներից։ Այդ անող Կոնսիստորիայն երկու տարուց յետոյ կամենում է մի լուրջ վճիռ էլ տուած լինել, որպիսին է յետագայ օրինակը։

## Զ.

(1861 Թ. № 140).

Նուխու Հոգևոր Կառավարութիւնը ներկայացնում է Կոնսիստորիայի վճիռն Բեգլարբեկանդեցի Խ. Միրզոյեանի ամուսնութեան չհասական ճիւղագրութիւնը խնամական հինգերորդ աստիճանի. վերջինը գտնելով այդ չհասութիւնն «անթոյլատրելի ըստ կանոնաց Աստուածայնոց Եկեղեցւոյ մերոյ» արգելում է. բայց մի քահանայ պսակում է ինքնագլուխ: Կոնսիստորիայն իր օրագրի մէջ (1863 թ. սեպտ. 23) յառաջ բերելով պետական օրէնքի յօդուածներ և Ս. Բարսեղի 71-րորդ կանոնն—եթէ ոք կին առնու ի մերձաւոր յարենէ իւրմէ մինչև ի վեցերորդն և յեօթներորդն, նզովեալ եղիցի», եզրակացնում է—ապօրինի պսակը քակտել և պսակագիր քահանային «ընկենուլ ի կարգէ». սակայն եզրակացութիւնը դեռ չկատարած ներկայացնել Սինոդի հաստատութեան: Վերջինիս հրամանից (ի 26 յունիսի 1865 ամի) երևում է, որ նա կամեցել է հաստատել Կոնսիստորիայի եզրակացութիւնը. բայց «Վեհ. Կաթողիկոսն (Մատթէոս) վերանկատեալ զգըծագրեալ ճիւղագիր խնամական ազգակցութեան Խաչիի Միրզոյեան ընդ Գայեանեայ եգիտ թոյլատրելի համաձայն կանոնաց սրբոյն Բարսղի և Գօշ Մխիթարայ». ուստի և հրամայում է պսակը թողնել անխախտ:

## Է.

(1867 Թ. № 93).

Շամախու Կոնսիստորիայն ներկայացնում է Սինոդի վճռին խնամէական հինգերորդ աստիճանի չհասական մի ճիւղագրութիւն։ Սինոդը նրա վրայ հիմնուած՝ այսպիսի շրջաբերական հրաման է գրում առաջնորդներին. «Ի նկատելն վեհ. Ատենապետի Սինոդիս զվերոգրեալ ճիւղագրութիւնն... գտեալ աններելի ըստ կանոնաց եկեղեցւոյ Հայոց, հաճեցաւ յայտնել, զի վիճակաւոր առաջնորդք գոլով ըստ կարգի պաշտաման իւրեանց պարտաւոր գիտել քաջ զկանոնս հայաստանեայց եկեղեցւոյ ի գործս չհասութեանց, չէ անկ նոցա բնաւ ելանել ի խնդիր լուծման պսակաց որ յանկարելեաց համարի սակի. այլ պարտաւոր են յաւէտ անդէն անդ առնել զբացասութիւն»[110]։ Այս շրջաբերականը յանձնում է Կոնսիստորիային հրահանգութեան համար և նրա գործի մէջն է պահւում. բայց չնայած նրան՝ նա նոյն թւին տալիս է նոյնպիսի աստիճանի խնամէական մի չհաս պսակի իրաւունք. և իր վճիռը իրաւացի համարե-

---

[110] Ցայտնի է սակայն գործերից, որ եԹէ Առաջնորդներից մէկն ու մէկը շրջաբերականիս համաձայն բացասել է նոյն աստիճան չհասների Թոյլտուութիւնը խնդրողներին, նրանք ուղղակի Էջմիածին են դիմել և ստացել Թոյլտուութիւն: Այդ տեսնելով Թեմականները՝ մի երկու ամսից յետոյ մոռացան յիշեալ հրամանը: Այդպէս լինում է միշտ. հրամանը նշանակութիւն ունենում է այնքան ժամանակ, որքան նրան տուող իշխանութիւնն ինքը յարգում է իր կարգադրութիւնը:

լու համար ասում է օրագրի մէջ[111] թէ՝ որովհետև Սինօդը 1865 թուի յունիսի 26-ի և 1866 թուի սեպտեմբերի 13-ի հրամաններով թոյլատրելի է համարել երկու չհասական պսակ նոյնպէս խնամական հինգերորդ աստիճանի — Բեգլարբեկանզեցի Խ. Միրզոյեանի (որ. Զ-րորդ) և Շուշեցի Ա. Քոլեանցի, վասնորոյ և ներկայ չհասական ամուսնութիւնն համարել ներելի։

## Ը.

(1868 Թ. № 133).

Նախընթացի նման խնամական հինգերորդ աստիճանի չհասութիւն — Ց. Ղօն... եանցինը Կոնսիստորիայն ներելի է համարում. բայց երկու դժւարութիւն է ունենում աչքի առաջ. առաջին՝ Սինօդի յիշեալ շրջաբերականը. երկրորդ՝ նոյն ժամանակի փոխանորդի գրաւոր առաջադրութիւնը, որ անթոյլատրելի է համարում այդ չհասական ճիւղագրութիւնը։ Ինչ է անում Կոնսիստորիայն այդ դժւարութիւններից դուրս գալու համար, քանի որ անպատճառ կամենում է պսակի հրամանը տալ.—ահա թէ ինչ. նախ՝ Սինօդի 1867 թուի շրջաբերականն օրագրի մէջ լռելուց յետոյ լռութեամբ խոյս է տալիս նրանից և հանում Սինօդի մի այլ հրամանին, (ի 26 հոկտ. 1857) որով հրամայած է իրաւունք

[111] Օրագիր, 1867 Թ. նոյեմբ. 22: Այդ ժամանակ մենք արդէն թողած էինք վիճակի փոխանորդութիւնը:

տալ խնամական վեցերորդ աստիճանի ամուսնու-
թեան (որ կայ չունի հինգերորդի հետ). երկրորդ՝
անթոյլատրելի համարող փոխանորդին համարում է
«օրինազրութեամբ ակար և փակեալ յառաջնորդա-
րանի». և այնուհետև համակամ անդամների հա-
ճութեամբ վճիռը կայացնում է։

Թ.

(1887 Թ. № 87).

Տփխիսի Կոնսիստորիային ներկայացուում է Խ....
եանցի և իր նշանածի մէջ գտնուող չորս աստիճանի
խնամական չհասութեան ճիւղագրութիւն, որին պի-
տի բացատէր Կոնսիստորիայն, բայց զիջանելով Խ...
եանցի թախանձանքին, ներկայացնում է Սինոդի վճռ-
ոյին. վերջինս տալիս է այդ պսակի հրամանն ասե-
լով. «Թէև աստիճան խնամական բարեկամութեան,
եղեալն ընդ մէջ Խ...եանցի և խօսեցելոյ նորա...
յանդի ի չորրորդում աստիճանի, բայց ունելով ի
նկատի զի քոյր Ա...-ի Եփեմիայն և այրն Եփե-
միայի Դուրիթն վախճանեալք են անզաւակ, որով և
արիւն խնամական բարեկամութեան դադարեալ է և
վերջացեալ, ուստի և հրամանագրել Կոնսիստորիայիդ
թոյլատրել զպսակ վերոյիշեալ խօսեցելոցն ի ներելի
աւուրս և ոչ յօրինակ այլոց»։

Այս օրինակ մի վճիռ շատ չի տարբերում ի հար-
կէ Ե-րդ օրինակի մէջ ներկայացրածից. որովհետև
սրանում էլ եկեղեցական կանոնք չէ, որ չհասական
աստիճաններ կազմողներից այս կամ այն անձի ան-

զաւակ մեռնելով համարում է «այրին խնամէական բարեկամութեան դադարեալ և վերջացեալ», այլ միայն բարեհաճ կամքը. և պատճառն էլ այդ է, որ Ս. Սինոդը տալով այդ հրամանը՝ աւելացնում է «ոչ յօրինակ այլոց». այլապէս անհասկանալի կ՚լինէր, թէ ինչու համար մէկի համար հասը միւսների համար չհաս կ՚լինի, եթէ և վերջիններս ազգականներից անզաւակ մեռնողներ լինին։

Ժ.

(1888 Թ. № 3003).

Ռ. Ղ...եանցի և նրա երկրորդ հարսնացուի մէջ խնամէական հինգերորդ աստիճանի չհասութիւն գըտնելով Կոնսիստորիայն ներկայացնում է Սինոդին և վերջինս անթոյլատրելի համարելով՝ բացասում է։ Ղ...եանցը դիմում է առանձին խնդրով Նորին Վեհափառութեան տնօրէնութեան, որ բարեհաճում է նրա խնդիրն այսպիսի մակագրութեամբ յանձնել Սինոդին. «Գթացեալ ի նեղսակիր հանգամանս խընդրատուիս, պատուիրեմք Սինոդին թոյլատրել պսակ սորին ոչ յօրինակ այլոց, եթէ չունի նա զաւակ յառաջին կնոջէն»։ Եւ որովհետև խնդրատուն ինքն արդէն յիշեալ խնդրում բացատրել էր, թէ կամենում է ամուսնանալ իր առաջին կնոջից մնացած զաւակներին հոգատար ունենալու նպատակով, ուստի Կոնսիստորիայն չկարաց հրամանը տալ. և միայն մի տարուց յետոյ Ծայրագոյն Իշխանութեան հաճութիւնը հեռագրով խնդրել ստիպուած եղանք, և տուեցաւ պսակի հրամանը։

## ԺԱ.

(1889 Թ. № 2272).

Ծալկայի Դարա գիւղի բնակիչ Խ... Մ...եանը կամենում է ամուսնանալ Շողակաթ Ղ...եանցի հետ։ Ներկայացրած ճիւղագրութեան մէջ Կոնսիստորիայն հինգերորդ աստիճանի խնամիական չհասութիւն գտնելով՝ մերժում է. խնդրատուն դիմում է Սինոդին, որ նոյնպէս մերժում է, գտնելով նրանց ամուսնութիւնն «ըստ կանոնաց Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ անթոյլատրելի»։

## ԺԲ.

(1889 Թ. № 3852, նոյեմբ. 15).

Նոյն թւին Ախալցխայից ստացած մի խնդրի խնամիական չորրորդ աստիճանի չհասութեան համար, որ մերժւած էր Կոնսիստորիայից, Սինոդում վճռւում է յօգուտ խնդրատուի. «Որովհետև ըստ այսմ ճիւղագրութեան բարեկամութիւն խօսեցեալոցն գտանի ի չորրորդ աստիճանի ի մէջ երկուց խնամութեանց, ասում է Ս. Ատեանն, ուստի պատուէրել Կոնսիստորիայիդ թոյլ տալ նոցա մտանել յամուսնութիւն»։

Որքա՜ն դեռ այսպիսի օրինակներ մենք նկատել ենք յիշեալ երկու Կոնսիստորիաների գործերում. որքան էլ պիտի լինին Ռուսաստանի Հայոց միւս չորս վիճակների Կոնսիստորիաների և Հոգ. Կառավարութիւնների դիւաններում։ Բերած օրինակներն էլ

բաւական են ապացուցանելու համար, թէ այդպիսի մի կարևոր խնդիր, որ եկեղեցական իրաւունքների շարքում ամենից ընդարձակ և գլխաւոր տեղը բռնելով ամենից աւելի կանոնաւորուած և ձևաւորուած պիտի լինէր, որպիսի անկանոնութեան և անձև դրութեան մէջ է գտնւում։ Առաջին օրինակում տեսնում ենք Թեմական արքեպիսկոպոս և Թեմ. Ատեան կնքահայրական ութերորդ աստիճանի ամուսնութեան հրաման տալ դժուարանալով՝ Սինոդին են դիմում, և վերջինս հրաման տալով մի կանոն է մէջ տեղ բերում, իբրև «Օրէնք Հայոց Եկեղեցւոյ», որի հեղինակին ինքն եկեղեցին չի ճանաչում. և այդպիսի կանոն իրան հիմք առնելով՝ իր վճռի մէջ նրան հակառակում է. ըստ որում կանոն համարուածի ասելով «կնքաւորքն երեքն անցանեն և ի չորսն խնամենան», որով պիտի ամուսնանայ իններորդը տասներորդի հետ, այն ինչ Սինոդի թոյլատրածն է եօթներորդն ութերորդի հետ։

Երկրորդ և երրորդ օրինակները ցոյց են տալիս, թէ Կոնսիստորիա և առաջնորդ խնամական եօթն աստիճանը աններելի գտնելով՝ մի այլ անգամ ներելի են գտնում վեց աստիճանն. ընդհակառակն Ներսէս Կաթողիկոսն ասում է որ եօթներորդն ամուսնանում է ութերորդի հետ։

Չորրորդում տեսնում ենք, որ կաթողիկոսի այդ հրահանգն աչքի առաջ ունեցող Կոնսիստորիայն սկզբում մերժում է վեց աստիճանի խնամական չհասութիւններ, բայց յետոյ բոլորն էլ ներելի

գտնելով թոյլատրւում է. իսկ հինգերորդ աստիճանի խնամիական չհասութիւնը մի դէպքում (օր. Ե-րդ) երբ այրութիւնն և առաջինից մարդուց զաւակ ունենալը համարւում է մի աստիճան, թոյլատրւում է. միւսում՝ (օր. Զ-րդ) անթոյլատրելի է թէև ըստ Կոնսիստորիայի և Սինօդի, բայց թոյլատրելի ըստ Մատթէոս կաթողիկոսի.—երկուքն էլ, թէ Սինօդ և թէ կաթողիկոս իրանց եզրակացութիւնը հիմնում են Բարսեղին ընծայւած մի և նոյն կանոնի վրայ, կանոն, որը ոչ միայն չի ճանաչում այն եկեղեցին, որի պաշտօնեայ էր Ս. Բարսեղը, այլ որ չի էլ վերաբերում խնամիական չհասութեան. Նոյն աստիճանը մի ուրիշ անգամ Գէորգ կաթողիկոսի հրամանով Սինօդը հրատարակում է աններելի և նրա մասին մնած խնդիրները բացասելի. բայց դարձեալ ամենուրեք վճռւում են իբրև ներելիք. ներելի է համարում մի Կոնսիստորիա, որովհետև աչքի առաջ ունի Սինօդի հրամաններ (օրինակ Է-րդ). կամ միայն նրա համար, որ այդպէս սովորել է (օր. Ը-րդ). ներելի է համարում և Սինօդն, եթէ ամուսնացողը չունի առաջին կնոջից զաւակ (օր. Թ-րդ). և աններելի երբ նկատի են առնում այս կամ այն պատճառով «Կանոնք Հայաստանեայց Եկեղեցւոյ» (օրինակ ԺԱ-րդ)։

Մենք ունեցանք երկու տեսակ օրինակ և չորրորդ աստիճանի խնամիական չհասութեան թոյլտւութեան։ Այդ աստիճանում կատարւել է պսակը, եթէ ճիւղեր կազմող անձերից մէկը մեռել է «անզաւակ»

(օր. Թ-րդ) կամ եթէ չորս աստիճանն եղել է մի մէջ երկուց խնամութեանց։ Ինչ կարծէք, որ այսպիսի խառնաշփոթ և անորոշ դրութիւնը նախ դժուարութիւններ պիտի պատճառէ միշտ Հոգ. Ծայրագոյն Իշխանութեան. երկրորդ՝ ստորադրեալ անձանց կամ Հոգևոր ատեանների համար ակամայ սխալելու կամ մինչև անգամ երբեմն գիտմամբ խոտորելու դիւրութիւններ և առիթ ներկայացնէ. որ և ահեղէք է տալիս ժողովրդին անբաւականութեան և տրտունջ յարուցանելու [112] և մինչև իսկ յուսահատելու. իսկ յուսահատութիւնը, յայտնի է, որ շատ անգամ անկշռադատ և անհաշիւ քայլեր է անել տալիս մարդուն. ապա ուրեմն և միշտ վտանգաւոր ու կորստաբեր թէ՛ մասնաւորի և թէ՛ ընդհանուրի համար։

Վերոգրեալ օրինակներից վերջին չորսը, որպէս և

---

[112] «Ամուսնական չհասութեան հարցը մեր մէջ դեռ ևս շատ թերութիւններ ունի և կարօտ է հիմնաւոր մշակութեան և որոշ ու ճիշտ կանոնների: Այդ թերութիւններն են պատճառը որ՝ այսօր չհասութեան դէպքերը այնպէս յաճախ (են) մեր մէջ ամեն տեղ և յարուցանում են ոչ սակաւ տրտունջներ, անբաւականութիւններ և խռովութիւններ աշխարհականների և հոգևորականների մէջ: Աշխարհականները զանգատվում են քահանաների և հոգևորականների հարստահարութեան, կամայականութեան, կաշառառութեան վերայ, եկեղեցական կանոնների անճշտութեան, անհաւասարութեան վերայ և այլն. իսկ հոգևորականները զանգատվում են աշխարհականների կանոնազանցութեան, յամառութեան վերայ և այլն: Ու յիրաւի, մի տեղ չհաս է համարվում այնպիսի պսակ, որ ուրիշ դէպքերում թոյլատրվում է միշտ իբրև հաս և օրինաւոր, միւս տեղ ամենամերձաւոր արիւնակիցները, մինչև անգամ երկու եղբօր կամ

*նրանց նմանները, որոնք շատ են պատահում Սի-նօդի հրամանների մէջ, պարզապէս ապացուցանում են առաջինը — Ծայրագոյն Իշխանութեան կրած դժուարութիւնները։ Որչափ էլ նա կամենում է մեր-ժել անհերքելի չհաստական պատկառելութիւնների ի-րաւունք խնդրողների աղաչանքը, որչափ էլ Թղթա-տրածները «ոչ յօրինակ այլոց» ասելով սահմանա-փակում է իբրև բացառութիւններ, այսու ամենայ-նիւ՝ քանի որ ժողովուրդը պարզ և որոշ կանոն չունի իր ձեռքում օրինակ առնելով «ոչ յօրինակ այլոց» տուած հրամանները՝ յոյսը դնում է Իշխա-նութեան ողորմածութեան վրայ և դիմում է նրան, որ ստիպուած է լինում մի որ և իցէ ելք գտնել նը-րանց գոհացնելու համար։*

*Իսկ Նախընթաց ութ օրինակները մեզ իրաւունք չեն տալիս այդպէս բացատրելու և ստորադրեալ ա-ռաջնորդների կամ հոգևոր ատեանների ընթացքը։ Նրանց պարտականութիւնն է միանման վարուել ի-*

---

*եղբօր ու քրոջ զաւակները ամուսնանում են միմեանց հետ ոտնակոխ անելով ոչ միայն եկեղեցական կանոնները, այլ և բնական ամօթը և պատկառանքը։ Այս պատճառով շատ ցանկալի է որ մեր եկեղեցին շուտով մշակէր և հաստատէր մի լիակատար պարզ և ճիշտ կանոն ընդհանուր օրէնքի զօրութեամբ Ռուսաս-տանի, Տաճկաստանի և բոլոր ուրիշ տեղերի հայերի համար ամուսնական չհասութեան մասին և առհասարակ ամուսնութեան մասին, որ այնպիսի մեծ նշանակութիւն ունի ընտանեկան, բարոյական և քաղաքացիական կեանքի մէջ»։ Հ. Բաստամեանց, «Փորձ», 1881, մայիս—յունիս, եր. 44—45։*

րանց վճիռների մէջ, և իրաւասութեան սահմանից դուրս չգալ. իսկ եթէ այդպէս չեն վարւում, ուրեմն կամ ակամայ սխալներ են գործում, չաւնենալով իրանց ձեռքում պարզ կանոններ, կամ դիտմամբ թոյլ են տալիս իրանց խոտորումներ։ Անկարծիք երբ մի ատեան այս կամ այն կանոնն ընդունելով ի հրահանգութիւն տալիս է մի սխալ եզրակացութիւն, թերութիւնը միայն նրանումն է, որ չի կարողացել զանազանել կանոնականը ոչ-կանոնականից. իսկ երբ մի կնոջ այրիութիւնն և առաջին մարդուց զաւակ ունենալը համարում է «ի տեղի միոյ ներելի աստիճանի», կամաւ խոտորւած լինելու կասկած չի թողնում. նմանապէս՝ եթէ մի փոխանորդ խնամէական վեցերորդ աստիճանները չհաս է համարում և բարձր Իշխանութիւնից է լուծումն խնդրում. իսկ հինգերորդ աստիճանի մի քանի առանեակ չհասներ առանց Իշխանութեան գիտութեան թոյլատրում է ծածկաբար, և յայտնելիս պատասխանում է, թէ «վասն խնամէական աստիճանաց անուանութեան չէք հրահանգութիւն ինչ և կանոն ի թուղթս նախնեաց մերոց»[113], չի կարող ի հարկէ համոզել, թէ արդարև անմեղ տգիտութիւնն է եղել ծածկաբար հրամաներ տուողը։

[113] 1874 Թւին Հ. Նախիջևանի Փոխանորդն էր գրում իրան արդարացնելու համար, երբ որ իշխանութեան հրամանով քննում էինք նրա հրամանով կատարւած չհաս պսակների մասին ուղղած գանգատները:

## Զ.

*Ծոթը ֆլորին, սիպտակ ջորին,*
*Մեռնի կինն, առնի քենին:*

Ամաչում ենք թէև խօսել մի հնացած և արմատացած սովորութեան վրայ, որով զգածուած են եղել և լինում են եկեղեցու հովիւներից շատերը, բայց որովհետև մեզ համար պաշտելի և նուիրական է Հայաստանեայց Առաքելական Եկեղեցու անարատութիւնը, ուստի տանում ենք այդ ամօթն ու անբախտութիւնն այն յուսով, թէ քաջահմուտ բժիշկներ գուցէ լսելով մեր ձայնը՝ շտապեն սովորութեան առաջն առնել, քանի որ դեռ մահ պատճառելու չափ անբուժելի կէտին չի հասել։ Եւ այդ սովորութիւնը շահասիրութիւնն է, որ շատ վաղուց արդէն առատ նիւթ գտնելով ամուսնական խնդիրների մէջ, ցեցանման կրծում և մաշում է մեր բարոյական կենդանութիւնը։

Դեռ ևս երկոտասաներորդ դարում Շնորհալի հայրապետը (Ընդհանրական. եր. 214) ամուսնական մի խնդրում զեղծումներ կատարող շահասիրութեան մասին ասում էր. «Լսեմք զոմանց յեպիսկոպոսաց...

արհամարհելով զօրէնս Աստուծոյ... սակս սակաւ ինչ կուրացուցիչ մամոնայի», իսկ նրա ժամանակակից եկեղեցու անմահ վարդապետը Գօշ Մխիթար տեսնելով այդ ախտի ճարակումն՝ ասում էր. «Մի՛ լիցի կաշառօք կուրացեալ, որպէս զբազումս տեսանեմք. զի այնքան են վրէժխնդիրք այդորիկ օրինաց, որքան զձեռս լի առնեն կաշառօք» 114): Հին է և ժողովրդական կծու յանդիմանութիւնը, որ արտայայտւում է վերոյգրեալ առածով, որ կրկնւում է այսօր էլ ամենուրեք հայ ժողովրդի մէջ. որ այսպէս է բացատրւում:

Մի անգամ մի այրիացած մարդ դիմում է առաջնորդին և խնդրում իրաւունք ամուսնանալու իր քենու հետ: Եկեղեցու իրաւանց նախանձախնդիր

114 Եւ միթէ իրաւունք չունէինք ենթադրելու, թէ որպիսի ուղղութեան արդիւնք են լինելու այն աղաւաղումները, յաւելւածներն ու խծբիծները, որ երևում են մեր կանոնագրքերում: Մի տեղ վերջացած կանոնի սովորական «Փառք յաւիտեանս, ամէն» բառերից յետոյ աւելացւում է. «Որ մի մօր կաթամբ սնեալ են Օտարք ի միմեանց արժան է ամուսնանալ. — Չէ արժան, զի ծնող և մնուցող մի համարին». և դարերի ընթացքում այս էլ համարւում է չհասի տեսակներից մէկը, մինչև որ դարուս Մեծ Մարդն և Մեծ Հայրապետն անվաւեր է հրատարակում այդպիսի մի արգելք: Դւնի ժողովի կանոնն ասում է. «ցհինգերորդն մի՛ իշխեսցէ» և կանոնագրքեր օրինակողներից ոմանք դնում են. «Հինգերորդն մի՛ իշխեսցէ»: Գօշ Մխիթարի նման մի ծեռնհաս եկեղեցական կանոններ է բացատրում. և որ և է մէկը նրա բացատրութիւնը սխալ համարելով՝ ընթերցողին զգուշացնում է չհաւատալ նրան, այլն այլն:

հոգեւորականը սաստիկ բարկանում է ստահակ մարդու վրայ, որ յանդգնում է այդպիսի աններելի միտք յայտնել. բայց ճարպիկ խնդրարկուն հասկացնում է, թէ մէջ տեղում փլորիններ և սպիտակ ջրի կայ. և այդ լսելով՝ առաջնորդն՝ սկսում է կանոնագիրքը ձեռք առնել ու քննել ուշադրութեամբ և տեսնում է, որ առաջարկուած չհասը ներելի է ըստ կանոնի։

Որքա՜ն յաճախ կրկնւող երեւոյթներ պիտի եղած լինին զեղծումները, որ առիթ են տուել ժողովրդին կազմելու այդպիսի կծու առած։

Այդպիսի մի օրինակ գիտենք և մեզ մօտիկ անցեալից։ Մի գիւղացի այրիացած մարդ ամենամօտիկ չհաս պսակի իրաւունք է խնդրում և առաջնորդը մերժում է բարկութեամբ, բայց երբ լսում է առատ աջահամբոյրի ձայնը՝ մեղմանում է և կամենում է խնդրողի խաթեր համար լաւ քննել կանոնագիրքը. և ահա ծառան, նախապէս ընդունած պատւէրի համաձայն, իջեցնում տալիս է մեծածաւալ Ցայսմաւուրքն իբրև եկեղեցական կանոնագիրք և առաջնորդը՝ գիւղացու ներկայութեամբ՝ կէս ժամ թերթելուց յետոյ, վերջապէս գտնում է նրանում մի կանոն, որ տալիս է խնդրած իրաւունքը։ Բաւական է։

Այս է պատճառը, որ մեր ժողովուրդն այնքան կասկածով է նայում մեզ վրայ և չի հաւատում. և եթէ մէկը պահելով մի որոշ սահման՝ յայտնում է խնդրողին, թէ չի կարող տալ այդպիսի չհաս

պսակի հրամանը, խնդրողն ուրիշ մտածմունքի մէջ է ընկնում. և կարծէք թէ դլպանի հաշիւ է անում. ժամանակ է պահանջում, մինչև որ ժողովուրդը համոզուի, թէ նրա հետ խօսում են անկեղծ կերպով։

Եւ նա մեղաւոր չէ։

Նա այնքան տեսել է օրինակներով, թէ այսօրուայ չհասը վաղը հաս է դարձել, որ անկասկած լինելով որ և է չհասական պսակի հրամանը ձեռք բերելու կողմանէ՝ խնամութիւն է սկսում կամեցած տան հետ, իսկ եթէ ժամանակին մի տեղում մերժումն է լսում, իսկոյն մի այլ տեղ է դիմում։ Եւ որովհետև ներկայումս մեր ժողովրդի միջից վերացել է այն նահապետական՝ ամօթխած զգուշաւորութիւնը, որ ունենում էին նշանադրուածները մինչև պսակուելը, և նշանադրուած օրից սկսում են տղայի և աղջկայ մէջ ազատ յարաբերութիւններ, վասնորոյ և բոլորովին մերժումն լսած դէպքերումն էլ անկարող են լինում միմեանցից բաժանուել. և ահա յառաջանում են նոր չարիքներ. կամ աղջիկն անպսակ գնում կենակցում է իր նշանածի հետ, կամ դիմում են կրօնափոխութեան։

Գուցէ գտնուին այնպիսիք, որ չափազանցութիւն նկատեն մեր խօսքերը ամուսնական խնդիրների ներկայ դրութիւնից յառաջացած կրօնափոխութեան յաճախ դէպքերի մասին, վասնորոյ հարկաւոր ենք համարում մեր ասածներին իբրև պաշտօնական վկայութիւն կարգել այստեղ Սինօդի հրամանի խօսքերը, որ ուղղուած է Տփխիսի Կոնսիստորիային.

(16 դեկտ. 1861 ամի № 2685) «Ի Սինօդիս լուան զյայտարարութիւն Կոնսիստորիայիդ ի 14 ապրիլի տարւոյս համարաւ 653, որով ծանուցանէ Սինօդիս թէ Սարգսին Պէպանեան և Կէկէլն Պօղոլեանց իւրնայօժար կամօք են ընկալեալ զվրաց դաւանութիւն... Հրամայեցին։ Ընկալեալ ի կշռադատութիւն, զի ամանք ի Կոնսիստորիայից Հայոց հանդիպեալ դժուարութեանց ի տուչութեան լուծման ինչ ինչ պսակաց, ի պատճառս մերձաւոր ազգակցութեան պսակելեացն խնդրին յայն դէպս զլուծումն Սինօդիս Ս. Էջմիածնի, որ ըստ իւրումն կարգի հիմնեալ ի վերայ սկզբանց այնց կանոնաց, ոյք հաստատեալք են ի Սրբազան Առաքելոց Եկեղեցւոյ[115], և յարգեալք են ի յոյն ռուսաց եկեղեցւոյ, զի մի՛ թոյլատրեսցի ազգապղծութիւն, որ կարէ լինել օրինակ գայթակղութեան և այլոց, առնէ ընդ լուծումն այնպիսի պսակադրութեանց զբացասութիւն. Նորապսակեալք (հասկանալու է՝ նշանադրեալք) առ ի հասանել բաղձանաց իւրեանց ոչ բաւականացեալ կարգադրութեամբք Սինօդիս ձեռնամուխ լինին ի գժրումն Հայրենի հաւատոյ... Հոգևորականք յոյն ռուսաց առանց հասու լինելոյ պատճառանաց համոզելոց ի հաւատափոխութիւն... դարձուցանեն զնորապսակեալսն

---

115 Մենք տեսանք վերևում Առաքելական կոչւած կանոնները. մինը Մովսիսական օրէնքի կրկնութիւնն է, միւսն արգելում է ամուսնանալ քենու և քեռորդու կամ եղբօր որդու հետ: Սինօդի արգելական ձանաչած աստիճաններն ամենևին այդ կանոնների վերայ հիմնւել չեն կարող:

ի դաւանութիւն իւրեանց, Թոյլատրելով զպսակս նոցա ի մերձաւոր աստիճանի ազգակցութեան, որ ըստ կանոնաց եկեղեցւոյ իւրեանց նոյնպէս արգելեալ է[116], ուստի խնդրել զտնօրէնութիւն փոխարքային Կովկասու, զի ընդ ձեռն որոյ հարկն է պատուորեսցէ զնոսա յայսպիսի դէպս ի ճիշտ պահպանութիւնս սահմանեալ օրինօք եկեղեցական կանոնաց»:

Մեր յիշած պատճառից յառաջացած կրօնափոխութեան դէպքեր տեղի են ունենում և Տաճկաստանում և այլ տեղերում[117]. և կարծում ենք, որ նոյնպէս հաւատագիւտ երևոյթներ չպիտի լինին այդ տեղերում և անպսակ կենակցութիւնները: Երկու դէպքումն էլ վնասն ընդհանրական է. մէկում՝ երբ

[116] Ռուսաց եկեղեցու ընդունած կանոններն արգելւող չհասութիւնների մասին. «Ամուսնութեան խորհրդին արժանանալու համար... ամուսնութիւնը պիտի արտաքոյ լինի այն մարմնաւոր և հոգևոր ազգակցութեան աստիճաններից, որոնք որոշւած են եկեղեցու կանոններով—վեցերորդ տիեզերական ժողով (Տրուլեան կամ Հինգ-վեցեան) կան. 53 և 54 Նէոկեսարեայի՝ 2. Մեծն Բարսեղի՝ 23, 78, 87, Տիմոնի՝ 11». Православно-Догматическое Богословіе, Макарія еписк. Виннецкаго, հատ. 5-րդ. Ս. Պ. Բուրգ 1853. եր. 20—21:

Որքան ուրախալի պիտի լինէր ամեն մի բարեմիտ հայի համար, եթէ մեր Ս. Սինօդը այսպիսի մի փափուկ խնդրի համար փոխարքային դիմելուց առաջ լաւ ուսումնասիրած լինէր թէ 'իր և թէ պետական եկեղեցու կանոնները. և այն ժամանակ շատ բան ասելու փոխարէն կարելի է արած լինէր:

[117] Իր գրաւոր վաստակներով և գործունէութեամբ հայ ժողովըրդին յայտնի արժ. Յովհաննէս աւագ քահանայ Մկրեանից այս օրերս ստացած մի նամակ սոյն աշխատութեան առիթով մի

այդպիսիք կամ իրանց ճնշող հասարական դիրքից դուրս գալու և կամ ունենալիք զաւակները քաղաքացիական օրէնսդրութեան իրաւունքներից չզրկելու համար օտար եկեղեցիների մէջ են փնտռում ամուսնութեան խորհրդի կատարումն. և միւսում՝ երբ առանց այդ յուսահատական քայլն անելու շարունակում են ապրել անպսակ. որով մի կողմից թուլանում, ընկնում է եկեղեցական ամուսնութեան նշանակութիւնը, միւս կողմից՝ շատանում է ապօրինի զաւակների թիւը[118]: Մեր կառավարած երկու վիճակումն էլ այցելութիւնների ժամանակ վերահասու լինելով. գտել ենք շատ անպսակ կենակցողներ, և նկատել ենք, որ տարաբախտաբար տարուց տարի աճում և բազմանում է նրանց թիւը, որովհետև գիւղական ժողովրդականների մէջ օրինակը շատ շուտ է հետևողներ տալիս: Չենք ասում, թէ բոլոր ան-

---

քանի խօսք ասելով՝ յայտնում է ի միջի այլոց, թէ հաս ու չհասի խնդրի շուտով կանոնաւորելու պէտքը որքան մեծ է մանաւանդ «ներկայ ժամանակիս մէջ, որ կրօնական ջերմեռանդութեան կապեր թուլցած մարդիկ չեն խղճեր թողուլ իրենց եկեղեցին ու ազգութիւնը. և դիմել օտարաց, որք գրկաբաց կընդունին զայնպիսիս ամեն դիւրութիւն ընծեռելով նոցա»:

118 Այդպիսիներից ոմանք յաջողում են երբեմն առատ վարձատրութիւնով հրապուրել մի քահանայի և պսակը կատարել տալ անհրաման, բայց հետևանքն ինչ է լինում: Իշխանութիւնն այդպէս կատարուած պսակները սովորաբար ապօրինի է հրատարակում, և եթէ ժամանակից յետոյ չի փոխում այդպիսի վճիռը, որ սակաւ անգամ է պատահում, ծնած երեխաները դարձեալ ապօրինի են համարում:

պսակ կենակցողներն էլ մեր յիշած պատճառից են յառաջացել, բայց համարձակ կարող ենք ասել, թէ այդպիսիների վաթսուն տոկոսը այդ տեսակից է. Մնացած քառասունի մի խոշոր մասը նրանք են կազմում, որոնք ամուսնական միւս խնդրի — պսակի լուծման ներկայ անորոշ և դանդաղ ընթացքից ձանձրացած՝ դիմել են կեանքի այդ եղանակին. իսկ միւս փոքր մասը՝ զանազան պատճառներից յառաջացած։

Իրաւ է՝ հոգ. Իշխանութիւնն այդպիսիներին ուղղելու և ուրիշներին զգուշութեան օրինակ տալու մտքով կարգադրել է, որ քահանայք այդպիսիների տները չօրհնեն, և հոգեկան պահանջները չկատարեն[119], բացի մկրտութիւնից, որ ոչ մի պատճառով չի կարող խափանել, սակայն այդ միջոցը նպատակի չծառայելուց զատ՝ տալիս է և իր վատ հետևանքը։ Արդէն յայտնի է, թէ մեր ժողովուրդը զանազան պատճառների շնորհիւ բաւական սառել է կրօնական ջերմեռանդութիւնից. և մի շատ թոյլ կապ է մնում նրա և եկեղեցու մէջ. երբ որ այսպիսի միջոցն էլ տարիների ընթացքում զրկում է նրանց եկեղեցու կրօնական արարողութիւններից և ծէսերից, ստեղծում է գիւղական ժողովրդի մէջ կրօնական անտարբերութեան վարժւած մի դասակարգ, որին այնուհետև շատ դժւար է կրկին բերել մօտեցնել եկեղեցուն։

---

119 Քաղաքներում այդ միջոցը միշտ մնացել է և կմնայ անիրագործելի:

Ճարտար բժիշկը արտաքին վէրքը տեսնելով՝ որոնում է նրան արտադրող պատճառը. և իր դեղատուութիւնով վերջինս ոչնչացնելով հեշտութեամբ ոչնչացնում է և նրա ներգործութեան երևոյթը։ Նոյն նպատակայարմար եղանակը պիտի գործադրուի և բարոյական հիւանդութեան դէպքում։ Երբ յայտնւում է ժողովրդական կեանքի մէջ անբարոյականացնող մի չարիք, ժողովրդի բարոյական առողջութեան հոգատար լինելու պարտականութիւն ունեցողները պիտի անմիջապէս ուշ դարձնեն չարիքի պատճառը հեռացնելու կամ ջնջելու, եթէ ոչ՝ երևոյթի դէմ ուղղելով իրանց ընդդիմադիր միջոցները՝ նմանած կ՚լինին մի անուս բժշկի, որ ցաւող վէրքի վրայ մի որ և է սպեղանի դնելով՝ հաւատացնում է հիւանդին, թէ առողջութիւնն ապահոված է. սակայն վէրքի ապականարար պատճառը ազատ ու արձակ ճարակման ժամանակ գտնելով, թունաւորում է ամբողջ մարմինը, որից յետոյ հմուտ բժիշկն էլ անկարող է լինում օգնելու։

Եթէ համոզուած ենք, թէ մեզ համար աւելի մեծ և աւելի աղէտալի չարիք չկայ և չի կարող լինել քան ներկայումս ամենուրեք հայ ժողովրդի մէջ տեղի ունեցող կրօնափոխութեան դէպքերը[120] և հայ

---

[120] Մեզ կարող են առարկել ի հարկ է, թէ կրօնափոխութիւնը զանազան պատճառներ կարող է ունենալ և ունի. ինչու ուրեմն ամուսնական խնդիրների անբաւարար դրութիւնից յառաջացած դէպքերն ենք միայն նկատում այստեղ իբրև պատճառ. Այո, կան և ուրիշ պատճառներ, որոնք հային ստիպում են

ընտանեկան խիստ բարոյական կեանքի ապականութիւնը, ջանանք ուրեմն չարիքի արմատը կտրել, որ արձակած ոստերը չորանան։

Այո, վերջապէս ժամանակ է այդ մասին խորհելու և հոգալու. ժամանակ է ազատելու Հայ եկեղեցու ամենամաքուր պատիւը, վերջ դնելով նրա անուամբ գործւող ապօրինութիւններին, կամայականութիւններին և պղծումներին, որով և ժողովրդին փրկելու անտանելի գարշած դրութիւնից։ Եւ այդ բոլորը կ՚լինի շատ հեշտութեամբ, երբ որ մի ազգ. եկեղեցական ժողով [121], զատելով իսկական եկեղեցական կանոնները զանազան ինքնակամ և եկեղեցուն օտար յաւելուածներից, կտայ ամենքի—և՛ եկեղեցականի և՛ ժողովրդականի համար միօրինակ պարտաւորիչ նշանակութիւն ունեցող պարզ և որոշ կանոնադրութիւն, որից յետոյ ոչ հոգևոր Իշխանութիւնն ստիպւած կ՚լինի «ոչ յօրինակ այլոց» բացառութիւնների դիմելու իրան հանդիպող դժւարութիւններից

---

կրօնափոխութեան դիմելու, բայց այդ մի և նոյն է. այժմ մեզ նիւթ վերցրած խնդրումն ենք նոյնը նկատում, նրա մասին էլ միայն խօսում ենք, Թէպէտև, եթէ մեր նպատակից դուրս չհամարէինք միւս պատճառների քննութիւնն և քննէինք, աւելի պարզ կացուցած կլինէինք մի և նոյն փաստը, Թէ ամենայն մի անհամապատասխան և անգոհացուցիչ դրութիւն որքան ծանրանայ ժողովրդի վրայ, այնքան կորստաբեր կարող է լինել:

121 Ազգային Եկեղեցական ժողովի գումարման կարևորութիւնը շատ մեծ է և ուրիշ եկեղեցական նշանաւոր խնդիրների կարգաւորութեանց համար:

ազատուելու համար, և ոչ ժողովուրդը կցանկանայ նրան անհանգիստ անել աւելորդ խնդիրներով, քանի որ կուռնեան և՛ գիւղացին և՛ քաղաքացին միանման գծուած սահմանի, և համոզուած կլինէին, թէ այդ սահմանի պահպանութիւնը երկու կողմի համար ևս անժխտելի պարտաւորութիւն է: Այսպիսի մի որոշ կանոնաւորութեան հաստատութիւնն ու հրատարակութիւնն այնքան անհրաժեշտ է և շտապողական, որքան ծանր է ժողովրդի յուսահատութիւնը, և որքան ակներև են այն շփոթութիւններն ու հակասութիւնները, որ սովորաբար տիրում են մեզանում ամուսնական երկու տեսակի խնդիրների — պսակի իրաւունքի և պսակի լուծման առիթով տեղի ունեցած և ունեցող վէճերի մէջ: Որոշ կանոնների անհրաժեշտութիւնը միշտ զգալի է եղել և է ամենքի համար: Ս. Էջմիածնի Սինօդը դեռ ևս իր գոյութեան առաջին տարում հարկաւոր է գտել գոնէ փոքր ի շատէ պարզ և «դասաւորեալ» կանոներ ունենալ թէ իր և թէ ստորադրեալ առաջնորդների և հոգ. ատեանների համար, որպէս ասած է 1837 թուին (դեկտ. 29, № 1130) Ղարաբաղի Կոնսիստորիային արձակած հրամանով—«Որովհետև բաղումք յօրինաց և կանոնաց Հայաստանեայց եկեղեցւոյ անյայտացեալ են ձեռամբ բազմատար ժամանակաց, և՛ յայտնիքն իսկ չեն ըստ կանոնի դասաւորեալ, ուստի Սինհոդոսս օրագրական սահմանադրութեամբ իւրով ի 11 դեկտ. 1836 ամի ըստ առաջին դրութեան իւրում յանձնեալ է անդամոց իւրոց Յով-

Հանդէս վարդապետացն Ղրիմեցւոյ և Տաշխաթու-
նեանց ի յայտ ածել զայնոսիկ յերևելի և յարժանա-
հաւատ հին կանոնական մատենագրաց մերոց, առ
ի վերածել զայնոսիկ ի կանոնաւոր դասաւորութիւն
զիւրաքանչիւր օրէնս ըստ նիւթոյն տարակայից...
զոր ի ստանալն իւր Սիւնհոդոս արասցէ ըստ այսմ
մասին զառանձին զարժանաւոր տնօրէնութիւն։ Իսկ
որովհետև ի վերոգրեալ կանոնսն գոն ինչ ինչ
տարակայք ըստ ամենայնի հակառակք մասանց օրինաց
հզօր տէրութեան Ռուսաց, ընդ որոյ հովանաւորու-
թեամբ գտանի Սիւնհոդոս և որոց ենթարկին
ամենայն Հայազգիք մեր, առ որս վերաբերին վերո-
յիշեալ կանոնքն Ս. Հայրապետաց, զոր օրինակ ի
մասին տուգանաց յօգուտ եկեղեցւոյ և ի մասին
անկատարելութեան հասակին, վասն որոյ յաւելու
Կոնսիստորիիդ... յայսպիսի նուագս յառաջնումն
չառնուլ երբէք յումեքէ զտուգանս, իսկ յերկրորդումն
ըստ ամենայնի և խոկութեամբ հետևել բառականն
մասաց յաւելուածոյ 10 հատորոյ Սվոդին քաղաքա-
կան օրինաց 50 յօդուածոյն և առ հասարակ ոչ մտել
ի դիպուածս յայնոսիկ կանոնս, որք պատկանին
մարմնաւոր դատարանի»։

Աւելի նշանաւոր է այս կողմանէ անմահանուն
Ներսէս Ե-ի կոնդակը, որ ուղղել է 1854 թւին (2
յունուարի № 1) Ղարաբաղի Բաղդասար միտրապօլ-
տին. «Ներսէս ծառայ Քրիստոսի... Բարձր Սրբազան
Բաղդասար Արքեպիսկոպոս միտրապօլիտ... ընկա-
լեալ զգրութիւնն ձեր. համարաւ 147, ի նոյեմ. 28,

յաղագս Աղոխ գիւղացի Հայրում և Պօղոս երկուց եղբարցն որոց Շահնազար անուն որդին Պօղոսի գոլով պսակեցեալ ընդ Մարգարիտ անուն դստերն Խաչի Ամիրանի, Մարգարիտի քոյր Թագուհին ևս կամին պսակել ընդ Պօղոսի եղբայր Հայրումի Թաւառ անուն դստեր որդւոյն Աւագ անուանեցելոյն...

Օրէնք Հայոց վասն խնամութեանց: Երկուց կողմանց խնամութեանց երրորդքն որդիս և դստերս իւրեանց կարեն պսակել օրինօք, իսկ ինքեանք երրորդքըն չունին զիրաւունս ընդ միմեանց մտանելոյ ի պսակ. ըստ որոյ որդին Աւագի և դուստրն Թագուհւոյ որք լինին չորրորդք պսակ նոցա լիցի օրինաւոր համաձայն կանոնաց. իսկ ինքեանք Աւագն և Թագուհին որք են երկուց կողմանց երրորդքն ըստ խնամութեանց չունին զիրաւունս ըստ կանոնաց պսակիլ ընդ միմեանց: Կանոնք յիշատակեցեալք յայսմիկ գրութեան ձերում բարձր Սրբազնութեան ու մեզ՝ որպէս և բազում այլ կանոնագիրք գըտանեցեալք այսր անդր՝ չեն մինչև ցայժմ մերոյքննեալք և սրբագրեալք և արժանաւոր վըճռադատութեամբ հրատարակեցեալք և ի դարուց ժամանակաց Մնացեալք առանց պարտ ու պատշած գործադրութեանց համաձայն կանոնացն իսկութեանց յաղագս անհոգութեանց եկեղեցական Ծայրագոյն Իշխանութեանց անծանօթ իւրեանց կարգի և կոչմանց ամբարձեալք ի կարգ քահանայութեան, և վարդապետութեան և նոյն իսկ եպիսկոպոսութեան. առանց կշռադատութեանց և զանազանութեանց աս-

տուածային և մարդկային խորհրդածութեանց համարձակեալ են՝ մանաւանդ աւագ երիցունք քաղաքիս յանդուգն մտահաճութեամբ իւ րեանց յառաջ վարել զամենայն իւրեանց անկանոն կամօք ըստ իւրեանց հաճոյից, կամ ըստ հաճոյս օրինակատարաց՝ յաւէտ վասն պսակաց. ոչ բնաւ զմտաւ ածելով թէ ինքեանք պաշտօնեայք են գործադրութեանց կանոնաց աստուածայնոց և ոչ ինքնիշխան աներկիւղ առ յԱստուծոյ մտահաճ իւ րեանց կանոնաց գործադրութեանց: Մեք ի բազում ամաց հետէ մտադիր էաք միաբան խորհրդակցութեամբ ընդ պատրիարգաց Կոստանդնուպօլսոյ և սրբոյ Երուսաղէմի և ընդ ամենից վիճակաւորաց և այլոց արժանաւորաց առ կարճելոյ զամենայն մեծ եկեղեցական օրինաց և ժողովրդականաց համակամ անօրէնութեամբ վերանորոգել զնախնեացն անօրէնութիւն վասն արիւնակցութեամբ ազգակցութեանց և վասն խնամեական արենակցութեանց, նաև վասն հոգևոր ծննդեամբ կնքահայրութեանց, այլ ըստ ամս բազումս ոչ յաջողեալ մեզ այնպիսի մեր մտադրութիւն կարեկցութեամբ զանազան եղանակաւ դժուարակրութեանց ժողովրդեան կամ վասն անգիտութեանց քահանայից և առաջնորդաց կամ վասն անխնամ բերմանց նոցա ընդ ժողովրդեան յանձնապաստան եղելոց իւրեանց հոգևորական տեսչութեանց, վստահացաք յաղագս հոգևոր ազգակցութեանց կնքահայրութեան յառաջարկել Սինոդին Էջմիածնի մերով կոնդակաւ, զի հրատարակեսցէ իւրով հրովարտակաւ ամենայն ա-

անձից եկեղեցական կառավարութեան ստանձնակալաց, և առհասարակ ամենայն ժողովրդեան Հայոց՝ զի ազգակցութիւնն կնքահայրութեամբ ունիցին պահպանել միմիայն ընդ մարմնոյ ծննդեամբ որդւոց կնքահօրն, ոչ տարածանելով զազգականութիւնն կնքահայրութեանց նորա ի վերայ եղբօրն կամ քեռն և կամ հօր եղբօրն և մօր եղբօրն կնքահօրն և ոչ աներորդն-կնքողին կամ այլոց նորին սերնդոց այլ միմիայն ի վերայ արու զաւակաց կնքողին ըստ օրինակի արենակից ազգակցաց: Եւ ի վերայ իգական զաւակաց ըստ օրինակի խնամական մերձաւորութեանց՝ ըստ որում ծնունդ հոգւոյ և ծնունդ մարմնոյ այնքան զատանին զանազանեալ ի միմեանց՝ որչափ հոգին և մարմինն ճանաչին զանազանեալք: Իսկ զի ձեր կանոնագիրք ըստ օրինակիցելումն ձեօք... Թէ խնամութիւնն ոչ մարմնաւոր ազգակցութիւն է և ոչ հոգևոր, այլ ի միոյ կողմանէ ի զլուց ընտանութիւն և ոչ ի սանճէ, ոյր աղագաւ երկու պարս բաւական է հեռանալ: Այսպիսի զատողութեանց ոչ տեղի տան միաք իմ. զի սարինք ոչ կացուցանեն զազգակցութիւն յաղագս քրիստոնէից, որպէս և յայտ է. զի զկաթնաւաս ստինս միոյ կնոջ ընկալնուն բազումք որբոց այլոց ծնողաց կամ հիւանդացելոց. բայց միայն մահմետականք յարգելով զծնունդ ստեանց ճանաչել մերձաւոր զայնպիսիսն ծնեցելոցն յարգանաց ստնդուէն և առաւել յարգութեամբ ընդունին անուանելով զստնդուն սուտ անասի, կամ սուտ ղարտաշի և կամ սուտ բաջիսի: Իսկ այն զը-

րութիւն կանոնագրեանցն եղելոց առ ձեզ՝ թէ խնամութիւնն ոչ մարմնաւոր ազգակցութիւն և ոչ հոգևոր, ինձ թուի այն օրինակ պատողութիւն նորա հակառակի աւետարանական Աստուածաբանութեանցն թէ այր և կին եղիցին մի մարմին և անմեկնելի ի մարդկանէ որպէս ընթեռնումք. Զոր Աստուած զուգեաց մարդ մի՛ մեկնեսցէ... Մեք ոչ անհոգասցուք որպէս պատկերացուցեալ եմք ի սմին գրութեան մերում յաղագս խնամութեամբ արենակցութեանց ծիւղահամարութեանց, նման օրինակ լիալիր ևս հանգամանօք կարգել պարզացուցակ յաղագս ծիւղահամարութեանց ըստ արենակցութեանց, ըստ խնամութեանց և ըստ կնքահայրութեանց, առ որ ապահովացուսջիք պատճառականն ի Կոնսիստորիայի ձերով առաջնորդական հրամանագրութեամբ վասն այն ամենայն զանազան անարժան հանգամանաց յառաջ բերելոցն ի ձերում գրութեանն առ մեզ այժմ անվայելչական համարել ցուցաբանելն ժողովրդականաց և ունկնդիր լինելն ինքեանց. այլ որպէս սուրբ պարտաւորութիւն է քրիստոնէութեանց զայն միշտ քարոզել և ուսուցանել մեծի և փոքու, արանց և կանանց»...

Մեծ Հայրապետի կոնդակի խօսքերով կնքելով ներկայ աշխատութեանս առաջին մասը՝ ի բոլոր սրտէ փափագում ենք որ յառաջ իրագործուած տեսնել նորա յայտնած մեծ միտքն ու նպատակը. փափագում ենք, որ մի պատկառելի օրէնսդիր ժողով գար քննելու այնքան դարերից ի վեր անուշադիր

մնացած կարեւոր խնդիրներն և խոհական հետատեսութեամբ վերականգնելու Հայաստանեայց Առաքելական Սուրբ Եկեղեցու պաշտելի պատիւն ու փառքը. վերջապէս փափագում ենք, որ այդ ժողովը գայ մի անգամ ընդ միշտ ջնջելու բառնալու կամայականութիւններ, զեղծումներ և կորստաբեր ապօրինութիւններ, և տալով որոշ, հաստատուն և եկեղեցու ոգւոյն ու նուիրական շահերին համապատասխանող կանոններ և հրահանգութիւն, վերստին հաստատէր հայ ժողովրդի մէջ պատկառոտ հպատակութիւն և որդիական անկեղծ յարգանք ու ջերմեռանդութիւն դէպի իր եկեղեցին, որով միայն վերջինս կարող էր դեռ երկար ժամանակ իր ձեռքում պահել իր իրաւասութեան յանձնուած խնդիրները։

# ԼՈՒԾՈՒՄՆ ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ

## Ա.

Ամուսնութեան ս. խորհրդով միացած այր և կին յանձն են առնում փոխադարձ սիրոյ և անբաժան կենակցութեան պարտաւորութիւն, որ նոյն է ասել, թէ կապւում են միմեանց հետ խորհրդաւոր դաշնակցութիւնով։ Ամենայն դաշնակցութիւն յայտնի իրաւաբանական պարտաւորիչ զօրութիւն ունի երկու կողմի համար հաւասարապէս. եթէ մի կողմը մեղանչում է իր պարտաւորութեան դէմ, բացի այն պատասխանատուութիւնից, որ ունենում է օրէնքի առաջ, տալիս է նաև իրաւունք միւս կողմին ազատ համարելու իրան էլ պարտաւորիչ պայմաններից։

Այր և կին պարտաւոր են, այո, փոխադարձ հաւատարմութեամբ պատուել ամուսնական անկողնի սրբութիւնը. բայց եթէ նրանցից մէկը մեղանչում է այդ սրբութեան դէմ, փոխադարձ սիրոյ պարտաւորութիւնը խանգարւում է. խանգարւում է հետևաբար և անբաժան կենակցութեան պարտաւորութիւնը։

Իսկ Փրկիչը այս նշանակութիւնը տուաւ ամուսնութեան խորհրդին. «Ասպաքէն ասացաւ, թէ որ արձակիցէ զկին իւր՝ տացէ նմա զարձակմանն. բայց ես ասեմ ձեզ. եթէ ամենայն որ արձակէ զկին իւր առանց բանի պոռնկութեան, նա տայ նմա շնալ. և որ զարձակեալն առնէ՝ շնայ»[1]: Փրկչական այս վճիռը բոլոր քրիստոնեայ եկեղեցիք միակերպ իմաստով են մեկնել և ընդունել. այսինքն՝ ամուսնութիւնն «առանց բանի պոռնկութեան» անլուծանելի. և «վասն բանի պոռնկութեան» լուծանելի: Տարբերւում է միայն Հռոմէական եկեղեցին, որ միանգամ կատարուած պըսակն անլուծանելի քարոզելով նաև վերջին դէպքում՝ ընդունում է միայն երկու ամուսինների միմեանցից բաժանուիլը, արձակել բառը «բաժանել» բացատրելով: «Պսակ քրիստոնէից լրացեալ, ոչ ևս լուծանի, մահ և եթ հարսին կամ փեսայի կարէ լուծանել զայն: Եւ ոչ շնութիւն կարէ լուծանել որպէս յոյնք կարծեն. զի ի հարցանել փարիսեցւց ցտէր՝ եթէ արժա՞ն իցէ ումեք արձակել զկին իւր ըստ ամենայն վնասու, այսինքն որ ինչ յանցանս գործեալ իցէ կնոջն, ետ պատասխանի (Մատ. ԺԹ. 3) Զոր Աստուած զուգեաց մարդ մի՛ մեկնեսցէ: Ասեն ցնա. իսկ Մովսէս ընդէ՞ր պատուիրեաց մեզ տալ թուղթ մեկնելոյ և արձակելոյ: Ասէ ցնոսա. Մովսէս վասն խստասրտութեան ձերոյ հրամայեաց ձեզ արձակել զկանայս ձեր. այլ ՚ի սկզբանէ

[1] Մատթ. 5. 31—32:

ոչ եղև այնպէս։ Բայց ասեմ ձեզ, զի ամենայն որ արձակէ զկին իւր և ոչ վասն բանի պոռնկութեան, և առնիցէ այլ, շնայ. և որ զարձակեալն առնէ՝ շնայ»... Դարձեալ ասէ (Մարկոս Ժ. 11) Եթէ այր արձակեսցէ զկին իւր, և արասցէ այլ, շնայ. և կին եթէ ելցէ յառնէ իւրմէ և եղիցի առն այլում, շնայ»։ Եւ այլուր դարձեալ (Ղուկ. ԺԶ. 18). Ամենայն որ արձակէ զկին իւր և առնէ այլ, շնայ. և որ զարձակեալն առնէ, շնայ»...

Քանզի միջարկեալ ի Տեառնէ բանն «և ոչ վասն բանի պոռնկութեան» զարձակեալն և եթ առնէ օրինաւոր, ոչ և չառնել այլ կին»[2]։

Մի կողմ թողնելով, թէ ինչքան վտանգաւոր է մի այդպիսի տարօրինակ վարդապետութիւն հասարակական բարոյականութեան նկատմամբ,—ըստ որում միմեանցից բաժանուած ամուսինների իրաւունք չտալով նոր ամուսնութեան՝ պիտի շարունակեն ապրել այլ եղանակով,—մի քանի խօսքով բացատրենք նրա հակառակ լինելը Քրիստոսի հրամանին։

Աւետարանական այդ խօսքերը, որ յառաջ է բերում լատին եկեղեցու աստուածաբանը, նոյնն են հաստատում, ինչ որ մեր յառաջ բերածը։ Մովսիսական օրէնքը տալիս էր մարդուն կատարեալ ազատութիւն և իրաւունք՝ կամեցած ժամանակն արձակել իր կնոջը։ Փրկիչը կամենում է բառնալ այդ

[2] Աստուածաբանութիւն տեսական. Եղ. Հիւրմիւզեան. հատ. բ. եր. 465—466։

*օրէնքը, և զօրացնել մարդու և կնոջ մէջ ամուսնական փոխադարձ սիրով անբաժան կենակցելու պարտաւորութեան զգացումն, որ իսկական հիմն էր իր՝ հաւասարազօր իրաւանց խոստովանութեան վրայ հաստատած ամուսնական խորհրդի: Կինը Մովսիսական օրէնքով դեռ ազատ չէր այն ստրկական դրութիւնից, որի մէջ ձգել էր նրան նախնի մարդկային հասկացողութիւնը. Նրա տղամարդը կարող էր իրաւունքից անմասն, անպաշտպան և անզօր կնոջն ամեն րոպէ և ամեն չնչին պատճառի համար արձակել. ուստի Փըրկիչը հարցնող փարիսեցւոց «ըստ ամենայն վնասու» խօսքերի նշանակութիւնը գիտենալով՝ արգելում է այդպիսի ազատական սովորութիւնը, մի դէպք միայն ճանաչելով ամուսնութեան քակտման յարգելի պատճառ: Այդ սովորութեան դէմ է ուղղած և Պօղոս Առաքեալն իր խօսքերը. «Քանզի կին առնակին 'ի կենդանի այր իւր կապեալ կայ օրինօք. իսկ եթէ մեռանիցի այրն, արձակեալ է օրինաց առն. ուրեմն մինչ կենդանի է այրն, շուն կոչի, եթէ լինիցի առն այլում. և եթէ մեռանիցի այրն, ազատ է յօրինացն, չ'համարեալ շուն, եթէ լինիցի առն այլում»[3]: Եւ դարձեալ. «Այլ կանամբեացն պատուիրեմ, ոչ ես՝ այլ Տէր, կնոջ յառնէ մի՛ մեկնել. ապա եթէ մեկ-*

---

[3] *Առ Հռովմ. 7. 2—3: Ներքևում կտեսնենք, թէ մեզանում մի երկու վճիռներ առաքելական այս խօսքի սխալ ըմբռնման վրայ են հիմնուած:*

նեսցի, անայր մնասցէ, կամ անդրէն ընդ առն իւրում հաշտեսցի»[4]:

Սակայն չնայելով որ եկեղեցու հիմնադիրն և նրա Առաքեալը դատապարտեցին այդ հրէական սովորութիւնը, այսու ամենայնիւ նրա զօրութիւնն ու ազդեցութիւնը երկար ժամանակ իշխում էին և քրիստոնեայ հասարակութիւնների մէջ, մինչև որ քրիստոնէական վեհ սկզբունքը բոլորովին թափանցեց քաղաքացիական օրէնսդրութեան և հասարակական բարքի մէջ և ջնջեց այդ հին սովորութիւնը: Ս. Բարսեղ Կեսարացին, որ ժամանակակից է եղել այդ սովորութեան ազդեցութեան, արտափայլեցնում է նրան իր 9-րորդ կանոնի մէջ, ասելով. «Փրկչական բանն, թէ չէ կարելի թողնել ամուսնուն առանց բանի պոռնկութեան, միակերպ պատշաճում է և արանց և կանանց. բայց այդպէս չէ ըստ սովորութեան: Կանանց մասին գտնում ենք շատ խիստ ասացուածներ. Առաքեալն ասում է. «Որ մերձենայ 'ի պոռնիկ՝ մի մարմին է» (Կորնթ. ա. 6. 16). և Երեմիա՝ «Եթէ արձակեսցէ այր զկին իւր... և լինիցի առն այլում. եթէ դառնալով դարձցի անդրէն 'ի նոյն, ո՞չ ապաքէն պղծելով պղծիցի կինն» (Երեմիա 3, 1): Այն ինչ սովորութիւնը հրամայում է կանանց չհեռանալ իրանց ամուսիններից, եթէ մինչև անգամ վերջիններս շնան. վասնորոյ չգիտեմ, թէ կարօղ է ուղղակի շնացող կոչուիլ այն կինը, որ ապ-

[4] Կորնթ. ա. 7. 10—11:

բում է այն մարդու հետ, որի կինը թողել է նրան. ըստ որում այս դէպքում մեղադրանքն ընկնում է մարդաթող կնոջ վրայ, որպիսի պատճառով էլ թողած լինի. թէ՛ նրա համար, որ մարդը նրան զանահարել է — պէտք է համբերէր, քան թէ բաժանւէր. և թէ՛ նրա համար, որ մարդը նրա կայքը վատնել է — այս էլ յարգելի պատճառ չէ։ Իսկ եթէ նրա համար, որ մարդը շնացող է, սրա կատարումն չունինք եկեղեցական սովորութեան մէջ. բայց և անհաւատ մարդուց հեռանալ կնոջը չի հրամայւում։ «Զի գիտե՞ս կին դու, եթէ զայր քո ապրեցուցես» (Կորնթ. ա. 7, 16)։ Վասնորոյ կինը, որ թողել է իր մարդուն և գնացել ուրիշին, շնացել է. իսկ թողւած մարդն արժանի է ներողամտութեան. և նրա հետ բնակցող կինն չէ ստգտանելի։ Բայց եթէ մարդը թողնէ իր կնոջն և ուրիշի հետ կենակցէ, ինքն ևս շնացող է, վասն զի տայ նմա (արձակւածին) շնալ, որպէս և նրա հետ կենակցող կինը, վասն զի դրաւել է դէպի իրան ուրիշի մարդուն»[5]։

Այս ամենից յետոյ վերյիշեալ հռոմէական վարդապետութեան անհիմնաւորութեան ապացուցութիւնը կնքում ենք յիշատակելով նոյն եկեղեցու այն քահանայապետներին, որոնք պսակների լուծումն ընդունել են. «Ստեփաննոս Բ. (կամ Գ.) հրաման ետ լուծման պսակի սորուկ օրիորդաց և առնելոյ զայլ կին, մինչդեռ այլք 'ի պապից առ հասարակ համա-

[5] Опыть курса церк. закон. եր. 28:

րէին զպսակն ամուսնութեան ազատաց և ստրկաց անլուծանելի... Կելեստինոս Գ. Ջանահնար եղև թուլացուցանել զկապ պսակին, յայտ առնելով՝ թէ յորժամ մին յամուսնաց դառնայցէ ի հերետիկոսութիւն, պսակն լուծանի. իսկ Իննովկենտիոս Գ. և Ադրիանոս Դ. հերքեցին զայն վճիռ, և զԿելեստինոս հերետիկոս կոչեցին»[6]։

Այժմ համառօտապէս յիշենք յոյն-ռուս և հայ եկեղեցիների վարդապետութիւնը պսակի լուծման մասին։

## ՅՈՅՆ-ՌՈՒՍ ԵԿԵՂԵՑԻ.

«Միայն մի դէպք ցոյց տուաւ Փրկիչը, որով թոյլատրւում է ամուսնութեան քակտումն. — ամուսիններից մէկի անհաւատարմութիւնը, ամուսնութեան դաշնակցութեան դրժումն. «Եթէ ոք արձակեսցէ զկին իւր առանց բանի պոռնկութեան և առնասցէ այլ, շնայ... Եւ ս. ժողովների և ս. Հայրց կանոնները նոյնպէս ցոյց են տալիս այդ միակ դէպքը, որով կարելի է քակտել ամուսնութիւնը[7]. Թէև ընդ նմին նկատում են, որ այս դէպքումն էլ ամուսինների դաշնակցութիւնը կարող է պահպանել իւր

[6] Յանոսի յաղագս պապին և ժողովոյ նորա. Թարգմ. Գ. Արքեպիսկոպոս Այվազեանց, Վաղարշապատ. 1871, եր. 70—71։

[7] Կան և ուրիշ պատճառներ քակտման ամուսնութեան. — ֆիզիքական անկարութիւն, ամուսիններից մէկի մշտնջենաւոր աքսոր և այլն։ Յորդորութիւնն ևս համարւել է պատճառ. բայց այստեղ խօսքը զուտ եկեղեցական պատճառի մասին է։

զօրութիւնը — եթէ նրանք հաշտուին — և մնալ անքակտելի (Նէօկեսարիայի ժողովի՝ կան. 8. Կարթագինէի՝ կան. 115. Բարսեղի՝ կան. 9, 21, 39 և 48. 6-րդ տիեզերական ժողովի՝ կան. 87)»[8]։

«Քրիստոնէութիւնը սահմանում է ամուսնական հաւասար իրաւունքներ և՛ մարդու և՛ կնոջ համար։ Նրանց երկուսին էլ չի թոյլատրւում թողնել մէկը միւսին առանց բանի պոռնկութեան»[9]։

«Բանն Աստուածային թոյլատրելով լուծումն ամուսնութեան պոռնկութեան դէպքում՝ շնութիւն է անուանում նոր ամուսնութիւնը, եթէ կատարուել է ինքնակամ և ապօրինի։ Հետևաբար՝ քանի որ առաջին պսակը չի լուծուած օրինաւոր եղանակով, երկրորդ պսակն ապօրինի է և անթոյլատրելի»[10]։

## ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻ.

Ս. Գրիգոր Լուսաւորչին ընծայուած կանոններից 6-րդը. «Եթէ ոք թողցէ զերկրորդն և զառաջնոյն դարձցի 'ի թողեալն, եօթն ամ արտաքոյ և մի ամ ընդ օրինօք»[11]։

Դարձեալ նրա կան. 24-րդ. «Որ վասն պոռնկու-

[8] Православно-дагмат. богословіе. Ս. Պ. Բուրգ. հատ. Ե. 1853. եր. 20—21.

[9] Опытъ курса церк. закон. եր. 28—29:

[10] Նոյն. եր. 487—488:

[11] Սրանից երևում է, որ եկեղեցին թոյլատրել է երկրորդ ամուսնութիւնն առ կենդանութեամբ առաջինի, ի հարկէ ոչ այլապէս, բայց օրինական ճանաչուած պատճառի համար:

թեան արձակէ զկին իւր՝ արձակեսցէ, բայց մի ամ սրբեսցի»[12]։

Շահապիվանի ժողովի կան. 3-րդ սահմանում է ամուսնութեան դէմ մեղանչող (պոռնկացող) տղամարդուն «զանխուլ և բանիւք օգտակարօք կշտամբել և յեկեղեցւո ի՛բաց մերժել, և տուգանս կալցեն յեկեղեցի և ընդ կարօտեալս բաշխեսցեն»։ Կան. 4-րդ. «Եթէ ոք զկին թողցէ զօրդւոց մայր առանց բանի պոռնկութեան և կամ թէ արատ ինչ չար ի մարմնի չիցէ, այլ որ եթէ այրն շնաբարո իցէ և այլում ակն եդեալ իցէ... զօրդիս և զտուն և զկեանսն և զհողն և զջուրն և զամենայն ինչ բաժանեսցեն հաւասարակաց, զկէսն կնոջն տացեն, և թէ կամք են այր 'ի տուն ածել յինքն համօրձակ ածցէ... և այրն որ եթողն, եօթն ամ ապաշխարեսցէ և յեկեղեցի տուգան տայցէ. թէ ազատ է՝ հինգհարիւր դրամ. թէ շինական՝ զանալի լիցի և հարիւր դրամ յեկեղեցի տուգանեսցի»[13]։

---

[12] Սարդիկէի ժողովի 23-րդ կանոնն է մեր կանոնագրքերում, մի և նոյն ժամանակ դրւած և Ս. Լուսաւորչի կոչւած կանոնների մէջ:

[13] Շահապիվանի ժողովի այս կանոններից պարզապէս նկատելի է այն սովորութեան ազդեցութիւնը, որի մասին խօսեցինք. և որը պատկերացնում է Կեսարացու 9-րդ կանոնը: Պոռնկութեան մէջ մեղադրւող տղամարդուն պատժով և տուգանքով է խրատում կանոնը. իսկ եթէ կինն է այդպիսի յանցանքի մէջ, արձակւում է ամուսնութիւնից. միայն առանց բանի պոռնկութեան արձակւած կնոջն է համարում իրաւունք կիսել արձակող տղամարդու հետ կայքն ու զաւակներին:

Դունի ժողովի 7-րդ կանոնն իրաւունք է տալիս մարդուն կամ կնոջը, եթէ ամուսինը գերի է տարւել, ութը տարի սպասել. և եթէ այդ-քան ժամանակում չվերադառնայ, պսակուիլ ուրիշի հետ. բայց եթէ գերի գնացածը վերադառնայ նրանից յետոյ, պսակւածը նրան պիտի գնայ, երկրորդը թողնելով։

Ներսէս Շնորհալի. «Պահեսցէ և զհրամայեալ օրէնսն ի Տեառնէ որ յաղագս առն և կնոջ անբաժանելի զուգաւորութեան զի բայց 'ի բանէ պոռնկութեան, և. որ այլևս են 'ի կանոնս սուրբ հարցն գըրեալ պատճառք, այլով իւիք մի՛ արասցէ բաժինս որպէս լսեմք զոմանց յեպիսկոպոսաց արևելից, զի արհամարհելով զօրէնս Աստուծոյ, բաժանեն անխտրաբար սակս սակաւ ինչ կուրացուցիչ մամոնայի։ Զի թէ որ արձակէ զկին իւր և արասցէ այլ՝ շնայ ըստ բանին Քրիստոսի, ապա և արձակողն ընդ նմին զոր արձակեաց շնութեան մեղօքն պատժիցի»[14]։

Նոյնը, (Ընդհ. եր. 163) ...Մի՛ և կնաթողաց արանց կամ այրաթողաց կանանց՝ առանց կանոնական հրամանի դիցէ ոք պսակ, զի մի՛ լուծջիք դուք ի քահանայական կարգէ ըստ կանոնաց»։

Գօշ Մխիթարի կան. 8-րդ (մասն առաջին[15]). «Որժամ դիւական ախտիւ զմիմեանս այր և կին ատիցեն առանց պատճառի շնութեան, եթէ նախ քան զամուսնութիւնն իցէ սկիզբն ախտիցն և յառնէն

---

[14] Ընդհանրական. եր. 214։

[15] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց. Վաղարշապատ, 1880, եր. 103։

իցէ, և ոչ կամիցի յարմարիլ ընդ նմա, սահմանք բաժանման պսակաւորացն լիցի։ Չկին բաղում խրատու և յանդիմանութեան քակտիցին, ըստ կանոնաց դատաստանի այլն ոչ իշխէ առնուլ կին, և կինն լիցի առն տանելով զիւր բաժին և յերից զմին յառնէն, իբր զի անարգեաց զպսակ նորա։ Նոյն դատաստան կացցէ թէ ի կնոջէն իցէ, և ոչ իշխէ առն լինել, բայց եթէ խղճացեալք միմեանց հրաժայիցեն... իսկ եթէ զկնի ամուսնութեան և որդիս ծնանելոյ ախտն իցէ, ըստ վերագոյն սահմանի խրատուք և յանդիմանութեամբ բաղում մեկնիլն լիցի, և զկէս ընչից առնն կնոջն տայցեն, իբր զի միացեալք էին. և ոչ իշխէ, բայց եթէ ըստ հրամանի կնոջն, առնուլ կին։ Եւ եթէ ըստ իւրոց կամացն այլում ակն եդեալ իցէ և առնուցու, կանոնք զայդոցիկ յուցին զդատաստան և զտուգանս և զապաշխարութիւն։ Իսկ եթէ 'ի կնոջէն իցէ մեկնիլն, անպատճառ յերիցն վմասն մի յիւրոց ընչիցն առն թողցէ, և մի՛ լիցի առն այլում՝ բայց եթէ 'ի հրամանէ առնն»։

Մխիթարի այս կանոնը Շահապիվանի ժողովի 4-րդ կանոնի բացատրութիւնն է։ Եկեղեցական իրաւաբանութեան տեսակէտով երկու ամուսիններ չեն կարող բաժանուել միմեանցից լոկ ատելութիւն դնելով առիթ առանց օրինաւոր պատճառի. Հետևաբար Շահապիվանի ժողովի վճիռը տարօրինակ պիտի համարուէր, եթէ հասկացուէր այն մտքով, թէ ժողովն օրինադրում է լուծանել պսակն և այն դէպքում, երբ մարդը միմիայն «այլում ակն եդեալ» լինելով

կամենում թողնել «գլխի, զորդւոց մայր, առանց բանի պռոնկութեան»։ Սակայն ամուսնութեան օրինաւոր պայմաններից մէկը տղայի և աղջկայ յօժարակամ հաւանութիւնն է։ Եւ որովհետև Հայաստանում, որպէս յաճախ տեսնում է և այժմ, պսակներ կատարւում էին միմիայն ծնողաց կամքով և պսակւողները սովորաբար շատ անչափահասներ էին լինում[16], ուստի այդպիսի ամուսնութեամբ կապւողները գիտակցական յօժարականութիւն չէին կարող յայտնել. ուրեմն և պսակից յետոյ կարող էին խնդիր յարուցանել բաժանման, հիմնւելով պսակի ապօրինութեան վրայ։ Այդ է, որ ի նկատի է ունեցել Շահապիվանի ժողովը. և այդ է, որ Մխիթարն անւանում է միմեանց առնելու դիւական ախտ։ Մխիթարի կարծիքով «եթէ նախ քան զամուսնութիւնն իցէ սկիզբն ախտիցն» այսինքն՝ եթէ տղայն սկզբից յայտնել է, թէ չի կամենում այդ աղջկայ հետ ամուսնանալ, բայց ծնողքը կամակորութեամբ բռնադատել են նրան պսակւելու, — բաժանել. բայց որովհետև կնոջ պատիւը վիրաւորւել է, ուստի նախ՝ բաժանումն պահանջող մարդուն իրաւունք չտալ երկրորդ ամուսնութեան, եթէ վիրաւորւած կինը չի ներիլ այդ. երկրորդ՝ կնոջը, բացի իր բաժինքից պէտք է տալ և մարդու կարողութեան մի մասը. սոյնպէս վարւիլ

16 Այսօր էլ ժողովրդի մէջ դեռ շատ տեղերում պսակւում են իրար հետ տղայ ու աղջիկ օրօրոցից արդէն նշանւած լինելու համար:

և կնոջ հետ, եթէ բաժանումն պահանջողը սա է։ Բայց այսպէս վարուել այն ժամանակ, երբ ամուսնութիւնից անմիջապէս յետոյ մէկն ու մէկը յայտնում է պսակի ապօրինութիւնն իւր պահանջը բաժանուելու համար. իսկ եթէ շատ ուշ, մինչև անգամ երեխաներ ունենալուց յետոյ է լինում այդ, այն ժամանակ, Մխիթարի կարծիքով՝ ոչ միայն կիսել կայքը մարդու և կնոջ մէջ, որպէս Շահապիվանի ժողովն է սահմանում, այլ մարդուն հասանելի կայքի կէսն էլ կնոջը տալ, որ անում է ամբողջ կայքի երեք մասը։ Եւ որովհետև շատ անգամ այն էլ կարող է լինել, որ եկեղեցական օրէնքի պահանջած պայմանի խախտման մասին խնդիր յարուցանելը լոկ մի ձև կ'լինի, իսկ բուն նպատակը սիրային ձգտումն դէպի մի ուրիշը, այդպիսիների համար դատաստանը, տուգանքն և ապաշխարութիւնը, ասում է Մխիթարը, թող այն լինին, ինչ որ կանոնած է. թէև ինքը աւելի լաւ է համարում (կան. 57) որ այդ դէպքում ուրիշ եկեղեցիների հայրերի կանոններով դատաստան լինի. այսինքն՝ շնացողի եօթնամեայ ապաշխարութիւն կրել տալ և կրկին դարձնել իր ամուսնուն։ Յիշեալ 57 կանոնն այս է. «Իսկ եթէ ոչ վասն պոռնկութեան և ոչ վասն չար գործոյ եթող զկին իւր, այլ վասն փառաբարութեան, որպէս թէ այլում ակն եդեալ իցէ, զայսպիսիս ոչ ընդունելին կանոնք մինչև ցդառնալ նորա յառաջին կինն. և ըստ յանցանացն եօթն ամ ապաշխարութիւն կալցի — հինգ ամ արտաքոյ և երկու ի ներքս։ Ապա եթէ

ոչ պարծցի առ բուն կինն իւր, զկեանս տան իւրոյ բաժանեսցէ, զկէսն կնոջ իւրում տացէ և տուգանս յեկեղեցի. զի զպատկն օրհնութեան զոր ընկալաւան ամուսնոյ իւրոյ անարգեաց: Եւ ինքն զաւուրս կենաց իւրոց պոռնիկ կոչեսցի և մի՛ մտցէ յեկեղեցի Աստուծոյ. այլ ի դրունս հաւատարեացի աղօթից, ի ձեռն ողորմութեան տրօք տնանկաց, ջերմեռանդն արտասուօք զյետին թօշակն ընկալցի: Ապա եթէ կինն մեռանիցի և այրն կին չառնիցէ և յապաշխարութիւն եկեսցէ հինգ ամ 'ի դրունս և երեք ամ ընդ ձեռամբ հաւատարեացի աղօթից, 'ի ձեռն ողորմութեան քահանայ հաղորդեսցի:

Նաև զայս եդաք յառաջ եղեալն մեր դատաստան, որպէս նախ քան զայս ի գլխի [17] ցուցաք, եթէ կամօք միմեանց ամուսնանալ ասացաք: Եւ զի ըստ կանոնաց ոչ կարծեցեալ զոր եդաք ի լրոյ՝ զկանոնականս առցեն բան և այնպէս անկարծիս դատեսցեն: Միանգամայն ի գիրս դատաստանի որ ինչ ընդդէմ գրոց Հրամանի կարծի, զգրոցն առնելով ամբամբաս զմեզ թողցեն. զի ոչ հակառակ աստուածական հրամանաց, այլ ի լրոյ զճշմարտիցն եդաք նորմամբ զբան: Սակայն ի կամս ապաստան է ընդունողաց և կամ ոչ, և յաղագս պատրիկ սիրով ընդ մեզ լիջիք և մի՛

[17] Ակնարկում է 56-րդ կանոնին, որը մենք չկարգեցինք իր տեղում, որպէս զի և 8-րդ և Ներկայ կանոնների կապակցութիւնն և համամտութիւնը պահպանենք, սրանից յետոյ կ'կարգենք 9-րդ և յիշեալ 56-րդ կանոնները:

վայրապար զմերս համարեսջիք զաւակաւս վաստակ»[18]։

Կան. 9-րդ. «Եթէ ի չար յայսոսիկ ախտս[19] գտցի կին ուրուք, իշխան լիցի (այրն) արձակել զնա ըստ հրամանի Տեառն։ Եւ զի ոչ թողացուցանէ զարձակեալն առնուլ. զի ընդ առնն հաշտեսցի, ըստ առաքելոյ, և կամ անայր մնասցէ. վասնորոյ զղջանալով կնոջն՝ իշխան լիցի (այրն) դարձեալ առնուլ, և այդ առանց բանի պոռնկութեան։ Նոյն իշխան լիցի և շնացող կնոջ այրն ի զղջանալն՝ առնուլ զնա և կամ ոչ. իսկ կինն ոչ լիցի առնն ըստ դատաստանի կանոնաց. բայց այրն իշխէ առնուլ կին և կինն առն լիցի ըստ հրամանի առնն։ Եւ կին ոչ իշխէ ի շնացող առնէ ելանել[20], բայց վասն խրատու առ. ժամանակ մի մեկնեսցի։ Իսկ բաժանման յեղանակ ընչից այն լիցի որ վասն ատելութեան գրեցաւ»[21]։

Կան. 56-րդ. «Իսկ եթէ ոք արձակեսցէ զկին իւր վասն բանի պոռնկութեան և կամ վասն այլ չարագործութեան, որ ոչ միայն այրն, այլ և աշխարհ վկայէ չար գործոց նորա, արձակեսցէ, ընդունելի զնա կանոնս։ Բայց մի ամ ապաշխարեսցէ, ի ձեռն ողորմութեան սրբեսցի և հաղորդեսցի օրինացն և եթէ կամեսցի՝ կին արասցէ. և կինն այլ առնն չիշխէ լինել, մինչդեռ կենդանի է այր նորա[22]։ Եւ զայս թէ-

---

[18] Դատաստանագիրք. եր. 157—158:

[19] Վերոկարգեալ 8-րդ կանոնի մեջ յիշածների մասին է խոսքը:

[20] Կեսարացու 9-րդ կանոնի խոսքերը:

[21] Դատաստանագիրք. եր. 104—105:

[22] Նէոկեսարիայի ժողովի 11-րդ կանոնն է բառ առ բառ:

պէտ գրեալ է մեր զդատաստան, երկրորդեցաք. զի ոչ վասն պոռնկութեան, այլ և յաղագս այլ չար գործոց հրամայէ թողուլ — կախարդութեան, անդատուութեան և այլոց այսպիսեաց։ Եւ դարձեալ միմեանց կամօք ամուսնանալ, որպէս լուեալ էաք, ամաացաք։ Եւ զի մի՛ ընդդէմ կարծիցի կանոնաց, որպէս կամեցին, այնպէս կալցեն»[23]։

Գրիգոր Տաթևացի. «Մովսէս օրէնս ետ՝ զի գիր տացեն մեկնելոյ զայր և զկին... իսկ ի նորս ոչ այսպէս, այլ հրամայէ Քրիստոս թէ՝ զոր Աստուած զուգեաց և միացոյց մարդ մի՛ մեկնեսցէ... Փակեաց թէ ամենևին ոչ բաժանի օրհնեալ պսակն մինչ 'ի մահ... Իսկ որ խտրոց դնէ թէ առանց բանի պոռնկութեան, զայն ցուցանէ, որ պատճառաւ իրիք կամ պոռնկութեամբ կամ այլ ինչ յորժամ բաժանին, առանց ամուսնութեան մնասցեն թէ երկուքն են բաժանմանն պատճառ, մինչև հաշտեսցին. և թէ մինն է պատճառ որ և իցէ թէ այրն և թէ կինն, առանց ամուսնութեան մնասցէ և միւսն զուգեսցի այլոյ[24]։

---

Այս կանոնը Շուշու կանոնագիրքը դնում է այսպէս. «Այրն իշխէ այլ կին առնուլ և կինն չիշխէ այլ առն լինել. իսկ Սինօդի օրինակն—«Այրն չիշխէ այլ կին առնել, և կինն չիշխէ առն լինել»: Վերջինս համապատասխան չէ բնագրին:

23 Դատաստանագիրք. եր. 156—157:

24 Հարցմանց. եր. 400—401:

## Բ.

Վերոգրեալներից ամենքի համար պարզ եղաւ, թէ Հայաստանեայց Եկեղեցին ամուսնութիւնը լուծանելի է համարում յայտնի պատճառների համար. Մնում է մեզ միայն տեսնել, թէ մեր ատենական գործերի վճիռները որքան են համապատասխանում եկեղեցու վարդապետութեան և ոգւոյն։ Սրա համար դասաւորում ենք այդ վճիռներն երկու բաժնի։ Առաջին բաժին՝ պսակը լուծանելի է. երկրորդ բաժին՝ պսակն անլուծանելի է։

---

ԱՌԱՋԻՆ ԲԱԺԻՆ.

## ՊՍԱԿԸ ԼՈՒԾԱՆԵԼԻ Է.

---

### ՕՐԻՆԱԿՆԵՐ.

### Ա.

(1841 Թ.)

Նուխեցի Մ... Գար... յայտնելով իր Ջաւահիր կնոջ ամուսնական անհաւատարմութիւնը՝ խնդրում է եկեղեցասահման բաւարարութիւն։ Նշանակւում է քննութիւն և գրագրութիւնը շարունակւում է մինչև 1845 թւականը։ Քննութիւնով հաստատւում է յիշեալ Ջաւահրի հրապարակական պոռնկութիւնը, բայց մի և նոյն ժամանակ գործից

նկատելի է և այն, որ այդ բանում մեղաւոր է և մարդը, որ անխտիր իր տունն ընդունելով բարոյականութեան կողմից կասկածելի մարդկանց կերուխումի՝ տեղիք է տուել իր կնոջ անբարոյականութեան։

Վ Ճ Ի Ռ.

Ղարաբաղի վիճ. Կոնսիստորիայն ի նկատի առնելով գործի հանգամանքներին և հիմնուելով քաղացիական և եկեղեցական օրինաց վրայ — «Քաղ. օրէնք՝ հատ. X յօդ. 43, 64. Քրէակ. օր. հատ. X յօդ. 774 և 775. եկեղ. օր. դատաստանաց կանոնք գլ. 1, Աթանասի կան. 61, Նէոկեսարիայի կան. 11, Ս. Գրիգորի կան. 23, Բարսեղի կան. 67, Սևանդիայ կան. 7 և Գօշ Մխիթարի կան. 7» եզրակացնում է. «Խախտել զկապ ամուսնութեան Մ... Գար... ընդ կնոջ իւրում Ջաւահրի. Մ... տալ իրաւունս ամուսնութեան, միայն զկնի սրբելոյ զխիղճ իւր զամս եօթն առ դրան եկեղեցւոյ... զի որպէս նկատի ի հանգամանաց գործոյն, նա ինքն եղեալ է մեծաւ մասամբ առիթ գայթակղութեան կնոջ իւրոյ, ածելով ի տուն իւր ի հացկերոյթ և ի խրախճանութիւն զայլևայլ օտարական անբարեբարոյ անձինս. իսկ զկին նորա ենթարկել ապաշխարութեան զամս տասն առ դրան եկեղեցւոյ... արգելլով նմա լինել ի կեանս իւր առն այլում, բայց միայն եթէ զղջացեալ բոլորով սրտիւ դարձցի առ այրն իւր»[25]։

[25] Ի՞նչ է նշանակում մարդուն երկրորդ պսակի իրաւունք

Սինոդն այս վճիռը չի հաստատում, ոչ թէ պսակն անլուծանելի համարելով՝ այլ գտնելով յետագայ թերութիւնները—1, «Գանգատանք Գար... զկապակցութեանց կնոջ իւրոյ ընդ այլ և այլ անձինս... թէպէտ հաստատին ի վերայ վկայութեան նոյն իսկ պոռնկացելոյն և ամենայն հարցեալ վկայից, բայց ի գործոյ անտի ոչ երևի, թէ ի կողմանէ տեղական հոգևոր իշխանութեան եղեալ իցեն ի գործ հոգևոր խրատք և յորդորմունք առ պոռնկացեալն... յաղագս թողլոյ նորա զչնացս անառակութեանց և դառնալոյ ի ճանապարհ բարի. 2, Ի բողոքագրութենէ Մ. Գար... ոչ երևի, թէ նա զլուծումն պսակի խնդրէ, այլ անորոշ եղանակաւ խնդրէ զբաւականութիւն վասն պոռնկութեան կնոջ իւրոյ։ Ուստի... պատուիրել զատաջինն ի գործ դնել զհոգեշահ խըրատս և յորդորմունս զի... Ջաւահիրն դարձցի ճըշմարիտ ստրջանօք առ այրն իւր. և (ի դառնալն) սրբել զնա ի մեղաց պոռնկութեան երկամեայ եկեղեցական ապաշխարութեամբ. իսկ եթէ անդարձ կացցէ մնասցէ ի չարիս իւր, յայնժամ լուացուցեալ զթերութիւնսն գործոյն, մատուցանել ի վճռահատութիւն Սինոդին»։

Այս հրամանից յետոյ Նուխու հոգ. Կառավարութիւնը Կոնսիստորիային և սա Սինոդին յայտարարում են, թէ յիշեալ Ջաւահիրն ընդունելով յունա-

տալուց յետոյ կնոջ համար ասել «զղջացեալ դարձցի առ այրն իւր». գոնէ պէտք էր իմանալ նախ քան այդպիսի վճիռը, թէ մարդը կամք ունի՞ ընդունելու նրան:

կան դաւանութիւն՝ պսակել է մի յունադաւանի հետ։ Սինօդը, տալով Գար... երկրորդ ամուսնութեան իրաւունք՝ հրամանագրում է Կոնսիստորիային. «Որովհետև Զաւահիրն դեռ ոչ սրբեալ զանձն իւր ի մեղաց իւրոց սահմանեալն ապաշխարութեամբ, և գոլով տակաւին անանջատ ի նախկին պսակակցէ իւրմէ, հակառակ 44 յօդ. X հատ. օրինաց՝ մտեալ է յամուսնութիւն... յայնժամ, երբ և ի դէպս լուծման պսակի նորա պարտ էր նմա մնալ անպսակ ցվախճան կենաց իւրոց ըստ զօրութեան 57 յօդ. նոյն իսկ հատորոյ օրինաց, ի պատճառս նորուն իսկ մեղանչման[26] ընդդէմ ամուսնական պարտաւորութեան. վասնորոյ փոյթ կալցի Կոնսիստորիայդ հաղորդել Սիւնհոդոսական կանտորին Տփխիսոյ վասն վարելոյ ընդ պսակաւէր քահանային ըստ օրինաց, և վասն անվաւեր համարելոյ զայս պսակ ի վերայ հիման գ. և դ. պարբերութեանց 52 յօդուածոյ նոյն հատորոյ»[27]։

## Բ.

(1860 Թ.)

Շ. Կ. Ա... յայտնելով՝ որ իր կինը նախ քան ամուսնութիւնը զրկւած է եղել կուսութիւնից՝ խընդ-

---

[26] Կոնսիստորիայի վճիռը Ջաւահրի և նրա մարդու մասին կանոնաւոր չէ: Ասել, թէ կնոջ անբարոյականութեան առիթ տուողը մարդն է եղել, նշանակում է, որ երկու ամուսինները հաւասարապէս դատապարտելի են իբրև մեղսակիցներ, ուրեմն նրանցից ոչ մէկին էլ պիտի իրաւունք չտար երկրորդ ամուսնութեան: Սինօդն և այս կէտը չի առել նկատի:

[27] Հետևանքը յայտնի չէ գործից:

լում է քակտել իրանց պսակը։ Կարգւում է քննութիւն և շարունակւում է երկար գրագրութիւն։

### Վ Ճ Ի Ռ.

Այս խնդրում այլ որոշումն է տալիս Մատթէոս Կաթողիկոսը և այլ Էջմիածնի Սինօդը։ Կաթողիկոսը հրամայում է Ղարաբաղի Կոնսիստորիային քակտել խնդրատուի պսակը, իսկ Սինօդն ընդհակառակը հրամանագրում է չկատարել այդպիսի հրաման [28]։

Գործը երեք տարի այսպիսի դրութեան մէջ ձգձգւելուց յետոյ վերջանում է մարդու և կնոջ հաշտութեամբ։ Կարգում ենք այստեղ եկեղեցու հայրապետի կոնդակը (9 հոկտեմբերի 1862 թ. № 318). «Մատթէոս ծառայ Քրիստոսի... Բարեջան վիճակաւորին Արցախայ Ստեփաննոս Արքեպիսկոպոսի ծանուցանեմք. զի 'ի վերջաւորութիւն անջատման պսակի գործոյն Շ... քաղաքացի Գ. Ա...եանց ըստ զօրութեան յ8, սեպտեմ. համարաւ 1468 գրեալ առ

[28] Սինօդի այդ հրամանի պատճէնը չենք կամենում կարգել. միայն այսքանն ենք ասում, որ Սինօդը ոչ թէ պսակն անլուծանելի համարելով ընդդիմանում էր եկեղեցու հայրապետի վճռին, հակառակ օրինաց, այլ թէ՝ ինքը «մանրազննին խուզարկութեամբ մտանելով ի վերանկատողութիւն և ի զննութիւն հանգամանաց քննողական գործոյն նկատեաց, զի Ա...եանցն ունելով զազատ և զյաճախ երթևեկութիւն ի տան Ս...իբրև փեսայ, ունեցեալ է ընդ նմին և ազատ միջոց մերձաւոր յարակցութեան ընդ խօսեցելոյն իւրոյ... և զայթակղեցուցեալ է զնա և հանեալ ի կամս իւր զրկելով ի կուսութենէ նախ քան զպսակն»։

մեզ յայտարարութեան Կոնսիստորիայիդ, որ յետ քննելոյ զխնդիր Ա...եանին մակագրեալն ի մէնջ, ապացուցեալ զեօթնամսեայ յղութիւն Մ. Մ...եանց 'ի ծառայողէ մինչ 'ի տան հօրն գտանէր, 'ի կատար ածէ զմերս վճիռ. Համաձայն սրբոց կանոնաց եկեղեցւոյն Հայաստանեայցս, և ծանուցեալ մեզ զայսմանէ խնդրէր 'ի մէնջ հրամայել Սինօդին տալ միանգամայն զապարումն 'ի վախճան գործոյն. յորմէ և մեր քաղեալ զամենայն զհանգամանս ապացուցութեան 'ի քննողական և 'ի վճռողական գործոց Կոնսիստորիայիդ 'ի 28, սեպտեմ. համարաւ 305, առաջադրեցաք Սրբազան Տեղակալին մերում Ղուկաս Արքեպիսկոպոսին ըստ զօրութեան մերս կոնդակին տալ զապարումն գործոյն այսր առարկայի, որոյ աւասիկ պատճէնն 'ի սմին եղեալ դնի 'ի տեղեկութիւն Ձեր։

Բայց թէ որպիսի ինչ առիթ և պատճառ գոյ 'ի Սինօդին, որ ոչ ընդ աղօտ գէթ նշմարել տայ Ատենակալեաց նորին զպատուէր և զհրաման սրբոց գրոց՝ Աստուածապատում Աւետարանին և սրբազան Առաքելոյն. «Անիրաւութիւն 'ի դատաստանի մի' առնիցես, և ակն աղքատի մի' առնուցուս, և մի' յերեսաց աչառիցես հարստի. արդարութեամբ դատեսցես զընկեր քո։ Ղևտաց». Ժթ. 15։ Առակ. իդ, 23, Յովհ. է. 24. ա. Տիմ. ե. 21։ Յառնելն զիրաւունըս և զդատ, որ պարտի լինել ամենայն իրաւամբ արդարութեամբ և ճշմարտութեամբ, և ոչ որպէս նոքին վարեն կողմնապահութեամբ և աչառութեամբ.

առ. ոյս մարգարէական հոգւով՝ ասէ սրբազան առաքեալն Յակովբոս 'ի զգուշութիւն նոցին, բայց 'ի զուր։ Ե՛ղբարք իմ, ասէ՝ մի աչառանօք ունիցիք զհաւատսն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ Տէրն է փառաց՝ Յակ. բ. 1։ Ի բացատրութիւն որոյ գրէ սուրբն Սարգիս Շնորհալի վարդապետն մեր, յասելն՝ Չար է մարդահաճութիւնն, չար է և կորուսիչ հոգւոյ, չար է և աչառելն ումեք յանիրաւի, և ստգտանելք են յԱստուածային գրոց, մանաւանդ թէ ընդ մեծամեծ դատաստանօք անկանելք. ըստ այնմ, Աստուած ցրուեսցէ զոսկերս մարդահաճոյից, և թէ՝ տակաւին մարդկան հաճոյ լինէի Քրիստոսի ծառայ ոչ էի»։

Եւ ահա յայս ինչ աւարտեմք զբանս, թէ փոքր ինչ խմորն՝ ըստ Առաքելոյ՝ որ անդ կայ, զամենայն զանգուածն խմորէ 'ի հակառակն կոյս, այսինքն՝ սակաւ ինչ չափ խմորոյ անկեալ 'ի զանգուած ալեւր, խմորէ զայն. յիւր թթու համն որակացուցանելով զամենայնն։

Զայսոսիկ գրեալ 'ի տեղեկութիւն սիրելոյդ՝ առաջարկեմք ըստ վերոյգրեալ հանգամանաց վերջաւորեալ համարել զայս գործ 'ի Կոնսիստորիայիդ՝ որպէս և է, և միտ չ՚դնել 'ի նորոյ յառաջացուցանել զգրագրութիւն ինչ ըստ այսր առարկայի. ըստ որում որպէս ունիք տեսանել 'ի պատճէնի կոնդակի մերում, զի եթէ աղջիկն պսակեալ համարեսցի նախ քան զպսակն, և եթէ առևանգեալ, ըստ կանոնաց ազատ է այրն ընդ այլում ամուսնանալ, նոյնպէս և

կրնի լինել առն այլում։ Զայսմանէ նա ևս կարէք տալ տեղեկութիւն տեղւոյդ նորին գերազանցութեան կոնմենդանտին, որ ըստ այսր առարկայի ունի գլխագրութիւն ընդ Սինոդին, թէ՝ արդէն վճռեալ է զգործն և Սինոդն չ՚կարէ այսուհետև առնել ինչ, զի ըստ զօրութեան Բարձրագոյն սահմանադրութեանն, (պօլօժենիայի) յօդ. 10. յայսպիսի դէպս միայն Կաթողիկոսն Ամենայն Հայոց ունի զձայն վճռողական, և ոչ այլ ոք։

Ողջ լեր 'ի Տէր Յիսուս խնամեալդ»։

Ստորագր. Վշտալի Մատթէոս Կաթողիկոս Ամենայն Հայոց:

Յիշենք համառօտապէս շատերից մի քանիսն այնպիսի օրինակներից, որոնցում պսակը լուծած ենք տեսնում այլ պատճառների համար.—Ֆիզիքական անկարութեան պատճառով. Սինոդը 1841 թւին (Հրաման ի 25 յունուարի, № 38) լուծել է Ղարաղշլաղեցի Խ. Քեասիեանի պսակն. 1842 թւին. (Հրաման ի 27 նոյեմ. № » ) Սարգսաշէնցի Խ. Խաչատրեանի պսակը, տալով իրաւունք երկրորդ ամուսնութեան պահանջող կողմերին։ Անյայտ բացակայութեան պատճառով. 1841 թւին Սինոդը (Հրաման ի 14 նոյեմ. № 2158) Շուշեցի Մ. Սարիխանին. 1850 թւին (Հրամ. ի 24 մարտի № 306) Շուշեցի Մ. Եղնարեանցին և 1861 թ. (Հրամ. ի 24 մարտի № 1052) Շուշեցի Զ. Սուքիասեանցին տալիս է երկրորդ ամուսնութեան իրաւունք, սրանց մարդոց անյայտ բացակայութեան պատճառով։

*Տփխիսի Կոնսիստորիայի գործերից.*

### Գ.

(1842 *Թ.* № 1268.)

*Շամշադին գաւառի Մովսէս գիւղացի Ց. Ց.* 1842 *թւին յայտնում է Կոնսիստորիային իր կնոջ ամուսնական անհաւատարմութիւնը, և խնդրում է քակտել իրանց պսակը և իրաւունք տալ իրան այլ կին առնելու։ Կարգւում է քննութիւն, որ և ապացուցանում է խնդրատուի կնոջ անբարոյականութիւնը։*

### Վ Ճ Ի Ռ.

*Ներսէս Կաթողիկոսը* 1848 *թւին փետրւարի* 9-*ին* 55 *համարով տւած կոնդակով քակտում է խնդրատուի և նրա կնոջ պսակը, և առաջինին տալիս է իրաւունք երկրորդ ամուսնութեան։*

### Դ.

(1855 *Թ.* № 4327.)

*Տ...ցի Ցար. Մ. նախընթացի նման խնդրով դիմում է Կոնսիստորիային* 1855 *թւին։ Քննութիւնն ստուգում է խնդրատուի բողոքի ճշմարտութիւնը։*

### Վ Ճ Ի Ռ.

*Սինոդն* 1860 *թւին նոյեմբերի* 19-*ին* 2140 *համարով արձակած հրամանով քակտում է խնդրատուի և նրա կնոջ պսակը, և առաջինին իրաւունք է տալիս երկրորդ ամուսնութեան։*

## Ե.

(1863 Թ. № 156.)

Ախալցխացի Պ. Լ... եանց յայտնելով պատշաճաւոր Իշխանութեան, թէ իր կինը 25 տարի յառաջ Կարին գնալով անհետացել է մահմետականների մէջ՝ խնդրում է երկրորդ պսակի հրաման։ Տեղական Հոգևոր Կառավարութիւնը Կարնոյ առաջնորդից տեղեկութիւն է խնդրում, որ գրում է. «Կոչեցաք զկինն Ե... որ պաշտպանի ի ներքոյ հովանաւորութեան եղբօր իւրոյ. ստուգեցաք, զի այր սորա խառնագնաց ի բաղում ամաց անտի լքեալ է զսա ի խնամոց իւրոց... ոչ երբէք յիշեալ է զանուն դորա կամ գթացեալ ի նա, այլ զամենայն վաստակս իւր ընդ շունս և ընդ պոռնիկս կերեալ»։ Եւ այս խօսքերից յետոյ յայտնում է, որ կինը չի ցանկանում այլ ևս այդ մարդու մօտ վերադառնալ։

## Վ Ճ Ի Ռ.

Չնայելով՝ որ մարդու խօսքերը, թէ կինն անհետացել է մահմեդականների մէջ, ստում է, չնայելով՝ որ առաջնորդն այդպիսի վկայութիւն է տալիս այդ մի և նոյն մարդու կեանքի մասին, Սինօդը դարձեալ 1863 թուին դեկտեմբերի 22-ին 1926 համարով արձակած հրամանով քակտում է նրա և իր կնոջ պսակը, և իրաւունք է տալիս խնդրատուին երկրորդ ամուսնութեան։

Զ.

(1862 Թ. № 140.)

*Նոյնանման խնդրքով դիմում է Կոնսիստորիային Տ...ցի Ս. Մ... Քննութիւնից, նոյն իսկ խնդրատուի կնոջ խոստովանութիւնից և ոստիկանական—բժշկական վկայութիւնից երևում է խնդրատուի խօսքերի ճշմարտութիւնը։*

Վ Ճ Ի Ռ.

*Մատթէոս Կաթողիկոսը կոնսիստորիայի մատուցած (ի 20 յուլիսի 1862 ամի ընդ համարաւ 1386) յայտարարութեան վրայ մակագրում է. «Ընթերցեալ զյայտարարութիւն վիճակային կոնսիստորիայիդ վերահաստ եղէ լիովին ամենայն հանգամանացն անառակութեան և անմիաբանութեան կնոջն ընդ առն իւրում.. վասնորոյ առաջարկեմ Ատենիդ յայտնել (մարդուն) զի ազատ է այսուհետև ըստ կանոնաց Հայրց սրբոց, ընդ ում և կամիցի, ամուսնացի»։*

Է.

(1862 Թ. № 119.)

*Նոյն թւին և նոյնպիսի խնդրով դիմում է Մատթէոս Կաթողիկոսին Տ...ցի Թ. Ա...եանց։*

Վ Ճ Ի Ռ.

*Մատթէոս Կաթողիկոսն առանց օրինասահման քննութեան յանձնելու այդ խնդիրը՝ մակագրում է նրա վրայ այսպէս. «Վիճ. Կոնսիստորիայիդ Հայոց Վրաստանի ծանուցանեմք. ըստ Շնորհալւոյն կանո-*

նական հրամանի և ըստ բացատրութեան երանելւոյն Մխիթարայ Գօշի գլ. 13, երիտասարդս այս... ազատ է այժմ ամուսնանալ ընդ ում և երբ կամեսցի. զի կին նորին անառակ վարուքն ժխտեալ է զսուրբ պսակի խորհրդոյն շնորհս պէսպէս չարախորհուրդ ներգործութեամբք, զորս տեսաք ի սմին բողոքագրութեան և յատենի մերում քննեալ ստուգեցաք և հաւատարիմ վկայիւք ևս հաւաստի եղև. ուստի եթէ կինն կամի ապրեցուցանել զանձն իւր ապաշխարեսցէ»։

Խնդրատուի կինը նախ Կոնսիստորիային և ապա Կաթողիկոսին դիմելով խնդրում է անկատար թողնել այդ վճիռն և օրինաւոր քննութիւն նշանակել. բայց անբաւարար ճանաչելով՝ դիմում է Սինոդին և նրա պրոկուրորին. վերջինս մի գրութիւն է ուղղում Սինոդին (ի 16 յուլիսի 1882 ամի № 72) ասելով, թէ յիշեալ կինը «գանգատէ զտարականոն ներգործութեանց Ծայրագոյն Հոգևոր Իշխանութեան Հայոց որ յէջմիածին, յաղագս անկանոնաբար լուծանելոյ զկապ ամուսնութեան իւրոյ ընդ Ց. Ա... եանց... Յաղագս լուծանելոյ զայս պսակ չէ արարեալ սահմանադրեալ կանոնօք զկանոնաւոր քննութիւն, որպէս ցուցանեն օրէնք յօդ. 45 և 46 10-րդ հատորոյ 1 մասին ի լոյս ածելոյ յամին 1857, ըստ որում Ծայրագոյն Հոգևոր դատարանն կարէր որոշել զյանցաւորութիւնս միոյն ի վերասաց ամուսնոց (յօդ. 985, հատ. XI)... Ընկալեալ ի կշռադատութիւն զանցառութիւնն զկանոնօք օրինաց յաղագս

խզելոյ զկապ ամուսնութեան ի միջի ամուսնաց, յանձնելով զարդեան խնդրագիր... ի Սինոդդ Ս. Էջմիածնի յօրինաւորն ի դիմաց Նորին սահմանադրութիւն, առաջարկեմ նախ քան զվերահայեցողութիւն և վճռահատութիւն գործոյս ի Ծայրագոյն Հոգևոր ատենիդ, առաջադրել հրովարտակաւ վիճ. Կոնսիստորային Հայոց Վրաստանի և Իմերեթիոյ յաղագս չթոյլատրելոյ Ա... եանցին մտանել յերկրորդ ամուսնութիւն»: Այդէն այս գրութեան ստացման օրը Սինոդից ուղարկուած է լինում է Կոնսիստորիային այս հրամանը № 1312, «ի Սինոդիս լուան զխնդրագիր կնոջ Թ... Ց. Ա...եանց... ի 26-ն յունիսի տարւոյս, յորում գրէ...

...Նորին Վեհափառութիւնն ընկալեալ զայն անհիմն և անապացոյց գանգատանս առն իմոյ զինէն մակագրեալ է զայն և առաքեալ ի վիճակային Կոնսիստորիայն Հայոց Վրաստանի և Իմերէթի յաղագս քակտելոյ զկապ ամուսնութեան մերոյ, և տալոյ առն իմում իրաւունս մտանելոյ յերկրորդ ամուսնութիւն ընդ այլում, և ինձ մնալոյ դատապարտեալ ցմահ: Տեսանելով զայս նորաաքանչ անակնունելի վճիռ, որով ես ի պատանեկութեան հասակիս ենթադրեալս եմ կենդանւոյն մահանալ, պարտաւորեցայ ի 21 ամսոյս մատուցանել խնդիր ի վիճակային Կոնսիստորիայն, որպէս զի ըստ զօրութեան յօդուածոյ 45, 46 հատորոյ 1 մասին 805, նոյն հատորոյ 2 մասին և 940 XI հատորոյ 1 մասին օրինաց կարգեսցէ զկանոնաւոր քննութիւն և այնու եղանակաւ ի յայտ

բերելով զյանցաւորութիւնն վարեսցի համաձայն կանոնաց Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ, վասն զի անհնարին թուի ինձ ի վերայ հիման անստոյգ և անապացոյց գանգատանաց առն իմոյ, որ նոյնպէս անմեղն է ի գործում, դատապարտիլ. յետ այսորիկ ի 22 ամսոյս մատուցի և Նորին վեհափառութեան զխնդիր յաղագս հրամայելոյ առ ի կարգել զկանոնաւոր քննութիւն, սակայն Նորին Սրբութիւնն բացէ ի բաց հրաժարեցուցանելով և վերադարձուցանելով ինձ զայն մնաց անփոփոխ յիւրումն այնպիսի տնօրէնութիւն։ Ձերդ Կայսերական Մեծութիւն, քաղաքական օրէնք և Հայրապետականք կանոնք եդեալ են վասն միօրինակ կատարման. բողոք անմեղիս պարտի գտանել զպաշտպանութիւն օրինաց, բայց ես արդէն կենդանւոյն մեռանիմ, այլ իմն հակառակ տնօրէնութեամբ, վասն որոյ մատուցանելով ընդ սմին զխնդիրն յանուն Վեհափառ Կաթողիկոսի ամենայն Հայոց, և ի Նորին Սրբութենէ Վերադարձուցեալն ինձ յետս ամենահպատակութեամբ խնդրեմ, որպէս զի Հրամայեսցի զայս խնդիր իմ հանդերձ միւս ընդ սմին մատուցեալ խնդրովն ընդունել և առնել զփութաւոր տնօրէնութիւն, որպէս զի վիճակային կոնսիստորայն Վրաստանի արասցէ զքննողական ներգործութիւն իւր ի վերայ հիման օրինաց և մինչև ցվախճան գործոյն արգելուցու առն իմում չմտանել յերկրորդ ամուսնութիւն ընդ այլում։ Հ ր ա մ ա յ ե ց ի ն. Թէպէտ չեն բացատրեալ ի ներկայ խնդրագրի . . . էական պատճառ և հանգամանք սկզբնաւորութեան և շարու-

նակութեան խռովութեան ի մէջ նորա և առն, ես և հետևաբար բողոքանաց միոյ զմիոջէ, բայց ի վերայ այնր ամենայնի՝ ունելով ի նկատի, զի ամենայն որ և իցէ գործք պսակաց, ընդ հետևանաց որոց լծորդեալք իցեն խախտմամբ ամուսնական շաղկապոյ, ըստ գանգատանաց միոյ յամուսնոց, անշուշտ պարտին լինիլ հիմնեալք ի վերայ հաստատուն և զօրաւոր փաստից և ապացուցութեանց, ի յայտ եկելոց ի ձեռն օրինաւոր ճիշդ քննութեան ըստ եկեղեցական և քաղաքական կանոնաց, ըստ այսմ հիման կոնսիստորիայդ Տփխիսու պարտաւոր է յառաջ քան առնելն զոր և իցէ տնօրէնութիւն ի բաւարարութիւն միոյ կամ միւսոյ կողման բողոքաւորացն զմակագրութիւն Վեհափառ Կաթողիկոսի առաջադրեալն կոնսիստորիայիդ ըստ այսմ առարկայի համաձայնեցուցանել կանոնական սահմանաց սրբոյ եկեղեցւոյս մերոյ և քաղաքական օրինաց Տէրութեանն, և այնպէս շարունակեալ և աւարտեալ ըզգործն առաջարկել ի հաստատութիւն Սինոդիս օրինաւոր քաղուածով և եզրակացութեամբ կոնսիստորիայիդ, դադարեցուցանելով ցայն վայր դկատարումն պսակի Ա... եանց ընդ այլում ումեք, և զայսմ տնօրէնութենէ Սինոդիս ծանուցանել բողոքաւոր կնոջն ի ձեռն քաղաքական պօլիցիային Տփխիսու. իսկ ի Նորին Վեհափառութենէ առանձին խնդրել զծանօթութիւն, թէ ըստ որպիսի օրինաւոր և անհերքելի ապացուցութեանց բարեհաճեալ է վճռել զկատարումն պսակի Ա... եանց ընդ այլում լուծմամբ

պատկի օրինաւոր կնոջն, առանց նախընթաց քննութեան և կարգին, գծագրելոյ ի յօդ. 25 և 35 Բարձրագոյն Կարգադրութեան վասն կառավարութեան Հայոց»։

Կաթողիկոսը, որ այդ ժամանակ Տփխիսումն էր, կարդալով կոնսիստորիային ուղղած վերոգեալ Հրամանը և իրան գրած յայտարարութիւնը՝ տալիս է մի կոնդակ կոնսիստորիային (ի 29 յուլիսի 1862 ամի Համարաւ 223) պատուիրելով յիշեալ գործը «խապառ վերջացուցեալ կարծել զամենայն դրպրութիւնս վերաբերեալս ի նոյն. զի ապատ է յայսմհետէ ամուսնանալ ընդ այլում վերոյիշեալ Ա... եանցն»։

Իսկ Սինոդին, որ թոյլ էր տուել իրան «ծանօթութիւն» անունով բացատրութիւն պահանջել նրանից իր տուած վճռի առիթով՝ գրում է այսպիսի պատասխան. «Մատթէոս ծառայ Քրիստոսի և այլն.

Առ խնդրելն զծանօթութիւն վասն գործոյ Ն. Մ... եանց Լուսաւորչեան Հայոց Սինոդիդ Սրբոյ Էջմիածնի, գրեալ առ մեզ ի 6 յուլիսի սոյն ամի Համարաւ 1313, ծանուցանեմք. թէ ի 4 յունիսի անցելոյ՝ Տ... ցի Ց. Ա... եանցի խնդիր մատուցեալ Մեզ գծագրելով ի նմին մի առ մի զամենայն զվիշտս և զնեղութիւնս իւր կրեալս յամուսնոյ իւրոյ ի Ն...ոյ և ի հօրէ նորին Գ. Մ... եանց, յորում յետ զանազան վշտալիր բանից հակառակ պահանջման սուրբ պղտակի խորհրդոյն, գրի ևս թէ՝ ի 28 հոկտեմբերի անցեալ ամի յինն ժամու երեկոյին յանկարծ բերեալ Մ... եանցին ի տուն Ա...եանի զբազմութիւն

զինուորականաց և բռնութեամբ կալեալ զսեպհական կայս նորա, զգարգս, զգոհարեղէնս, զոսկեղէնս, և զայլ ամենայն իրեղէնս ի միասին ընդ կնոջ նորա տարեալ է ի տուն իւր, և այս՝ յետ մետասանամսեայ ամուսնութեան նորա, իսկ կին նորա բազմամասնեայ միջոցօք վարելով զքաղորութիւն ըստ հաճոյից կամաց իւրոց, թողեալ է զնա մենաւոր ի դառն վիճակի ի տան իւրում, վասնորոյ խնդրեաց ի մէնջ տնօրինել զարժանն՝ որչափ թոյլ տան եկեղեցական օրէնք, յայտնելով մեզ միանգամայն զանտանելի արարս լրբութեան կնոջն, որոց տարեալ ցայսօր, ոչ ևս կարէ տանել զանգիտելով և յապագային զնոյնս կրել կամ զվատթարագոյնս քան զնոսին, ուր յանուանէ գրեալ են ի խնդրագրի անդ, զոր ծայրէ ի ծայր յայտնեալ ունի կոնսիստորիայն Սինոդիդ յայտարարութեամբ իւրով։

Մեք զայն ստուգեցաք ի բազմաց, և յինն նոյն յունիսի կոչեալ առ մեզ զՍ...եանն և զաներ նորա Մ...եանցն և զայլ բազում ականատես վկայս իրողութեանս այսորիկ, առաջի մեր քննեցաք և ամենեքին վկայեցին ճշմարտութիւն Ս...եանցի և անխիղճ ներգործութեանց կնոջ նորա Ն...ոյ և հօր նորա Մ...եանցի։

Ի նեղ արկեալ Մ...եանի յայս օրինակ երես առ երես վկայութեանց վկայիցն ի բազմութեան անդ ժողովոյն խնդրեաց զվկայութիւն բժշկապետին Ռ...եանց, ասելով թէ՝ ընդունիմ զվկայութիւն սորին իբրև առն պատուելոյ և ճշմարտասիրի, և իբրև

և նա վկայեաց ճշմարտութեան Ա...եանի, իսկոյն պ. Մ...եանն օտար լեզուաւ ած ի վերայ, թէ չէ այդ գործ բարեկամի, և Ռ.. եանցն պատասխանեաց նմա, թէ չէ՛ կարելի բարեկամութեան առթիւ ծածկել զճշմարտութիւնն. տեսեալ Մ...եանի, թէ աստ ևս անիրաւ թեկնածութիւն իւր չգտին զյաջողութիւն, վաղճանաբար յայտնեաց մեզ նոյնպէս ի բազմութեան անդ, թէ ընդունի զվկայութիւն Դ. աւ. քահանայի Դ...եանց, և որպէս նայն վկայեացէ, ըստ այնմ և մեք վճիռ և վաղճան դիցուք անքաւականութեանցն և ատելութեանց՝ եղելոց ի միջի երկոցունց կողմանց. յառեմնի անդ բազմութեան իսկոյն կոչեցաք զկացուցեալ վկայն նորա զաւ. քահանայն Դ...եանց, որ նոյնպէս բազում բանիւք ստեաց նմա հաստատելով զանիրաւութիւնս նորա և զճշմարտութիւնս Ա...եանի համաձայն միւս վկայիցն. և առ այս վաղճան յօրինեցաւ համառօտ արձանագրութիւն և ստորագրեցաւ յաւ. քահանայէն Դ...եանց, ի միւս վկայիցն և ի ներկայ եղելոցն։ Ապա ի նոյն թիւ ստուգեցաք զայն ամենայն և ի ծխատէր քահանայէն Ա...եանի, և տեսեալ թէ պատճառ անհաշտ ատելութեանն լեալ է կինն և հայր նորա Մ...եանն, վասնորոյ համաձայն եկեղեցական կանոնաց մակագրեալ մեր ի վերայ խնդրոյ առ ի լոյս աւելորդ անշահ գրագրութեանց եդաք զայս վճիռ. «Կոնսիստորիայիդ Հայոց Վրաստանի ծանուցանեմք, ըստ Շնորհալւոյն կանոնական հրամանի և ըստ քացատրութեան երանելւոյն Մխիթարայ Գօշի, գլ. 13,

երիտասարդս այս Թ...յի Ց. Ս...եանց ազատ է այժմ ամուսնանալ ընդ ում և երբ կամեսցի, զի կին սորին անառակ վարուքն ժխտեալ է զսուրբ պսակի խորհրդոյն շնորհս պէսպէս չարախորհուրդ ներգործութեամբ. զորս տեսաք ի սմին բողոքագրութեանս և յատենի մերում քննեալ ստուգեցաք և հաւատարիմ վկայիւք ևս հաւաստի եղև. ուստի եթէ կինն կամի ապրեցուցանել զհոգի իւր՝ ապաշխարեսցէ։

Վերոյգրեալ օրէնք են այսոքիկ. Շնորհալին գրէ ի շրջաբերական գրի առաքելոյ ի կողմանս Արևելից ի Կարս, այսպէս. «Պահեսցէ (եպիսկոպոսն) և զհրամայեալ օրէնս ի Տեառնէ, որ յաղագս առն և կնոջ անբաժանելի զուգաւորութեան, զի բաց ի բանէ պոռնկութեան, և որ այլ ևս են ի կանոնս սուրբ հայրցն գրեալ պատճառք, այլով իւիք մի՛ արասցէ բաժինս»։ Արդ՝ զինչ այլ իցեն այլ պատճառքն, գրեալք ի կանոնս սուրբ հայրցն և յիշատակեալքն ի Շնորհալի հայրապետէն, եթէ ոչ այս, զոր բացատրէ երանելին Մխիթար Գոշ՝ գլ. ճիդ, ասելով. «Իսկ եթէ արձակեսցէ զկինն իւր վասն բանի պոռնկութեան և կամ վասն այլ չարեաց գործոց, որ ո՛չ միայն այրն՝ այլ և աշխարհ վկայեն չար գործոց նորա, արձակեսցէ, ընդունի զնա կանոնական դատաստանս. բայց մի ամ ապաշխարեսցէ և ի ձեռն ողորմութեան սրբեսցի և հաղորդեսցի օրինացն. և եթէ կամեսցի, կին արասցէ. և կինն այլ առն մի՛ իշխեսցէ լինել, մինչդեռ կենդանի է այր նորա, և թէպէտ գրեալ է

մեր զայս դատաստան յառաջ, այլ երկրորդեցաք, զի ոչ վասն պոռնկութեան այլ և վասն այլ չար գործոց եւս հրամայէ թողուլ, այսինքն կախարդութեան, գեղատուութեան և այլոց եւս այսպիսեաց»:

Այսու չքաւականացեալ մեր ի յանձնելն յիշեալ խնդիրն հանդերձ մակագրութեամբ ի տնօրէնութիւն և ի կատարումն կոնսիստորիայի՝ բանիւ եւս պատուիրեցաք նմին պարտաւորել ձեռագրաւ զծխատէր քահանայս երկուց կողմանցն մինչև ցվերջ յունիս ամսոյ չզնել նոր պսակ Ա...եանցի, այլ աշխատ լինել՝ եթէ հնար ինչ իցէ, յորդորական բանիւք կամ մեղայական գրութեամբ կնոջն առ այր իւր, հաշտեցուցանել զերկոսին ամուսինս ընդ իրեարս. իսկ ի չյաջողել ցանկացեալ հաշտութեանն, ի կատար ածել զմերս վճիռ համաձայն հայրապետական կանոնաց. յետ այսորիկ երկոքին ծխատէր քահանայք ներկայացեալ յԱտենին յայտնեցին թէ՝ ոչինչ կերպիւ չեղև և չիք հնար հաշտութեան ընդ մէջ նոցա և բաց յայսմանէ նոքա թողեալ զխրատ մեր աստ և անդ թափառին, ոչ միայն մերժել զկանոնական սահմանադրութիւն հարց սուրբ, այլ և բռնութեամբ տիրել ի վերայ իրաւանց տղային: Ապա կոնսիստորայն կատարեաց զվճիռ մեր ի 15 նոյն ամսոյ. և յետ այսորիկ այսպէս եղելոց յիշեալ Ն. Մ...եանց ի 21 նոյն յունիսի խնդիր մի մատուցեալ կոնսիստորիային հաստատէ զանհաշտ ատելութիւնն գրելով ի միջի այլոց՝ այսպէս, «ոչ զանգիտէի, թէ առաջնակայծ սիրոյ ամուսնութեան այսպէս արագ ունէր

փոխարկել յանհաշտ ատելութիւն», և միանգամայն խնդրէ առնել վնոր քննութիւն։

Կոնսիստորային օրագրութեամբ ի 25 յունիս եղբա-կացուցանէ՝ որովհետև վճիռ Հայրապետի արդէն կայացեալ է և կոնսիստորային ածեալ է զայն ի կատար ի 15 նոյն ամսոյ, այսինքն յառաջ քան զստացումն խնդրոյ Ն. Մ...եանց, յետ որոյ չկարէ առնել միւս ևս կարգադրութիւն հակառակ մակագրութեան Հայրապետին. վասն որոյ ի ձեռն քաղաքական պօլիցիային յետս տալ զայն խնդիր խնդրատուին, որ և կատարեալ է ի 29 նոյն ամսոյ։

Յետ այսր ամենայնի յիշեալ Ն. Մ...եանց ընդ մօր իւրում և ընդ երկուց աշխարհական աստիճանաւոր անձանց եկեալ խնդրէր զայլ տնօրէնութիւն մեր, և մեք ի ձեռն յիշեալ անձանց յայտնեցաք նմա, թէ ի վերայ է դիմելն նորա առ մեզ. այլ պարտի դիմել առ այր իւր, առ որ մեղուցեալն է և մեղայականաւ գտանել զճար հաշտութեան. այլ նորա տեսեալ թէ անհաշտ ատելութիւն իւր ոչ կարէ փոխել ի սէր և ի միաբանութիւն, աշխատ եղև ի ձեռն Սինոդիդ թերևս կարգաւորել փոխել զվճիռ սուրբ Հարց, և տալ զայլ ընթացս գործոյն, որով կարասցէ ծածկել զանառակութիւն իւր և զանիրաւութիւնս հօր իւրոյ. և Սինոդդ զարմանալի շտապաւ ստիպեալ է կատարել զխնդիր նորա, որ առաջին օրինակ է, որպէս թուի մեզ, այդ շտապողական գործողութիւն Սինոդիդ։

Զայս ամենայն համառօտիւ ծանուցեալ Սինոդիդ

ի բաւականութիւն վերոյգրեալ յայտարարութեան գործին, այդ առնեմք, զի թէ այդչափ թոյլատրեալ է դմին ձեռնամուխ լինիլ յանընդմիջական հոգեւոր ստորասութիւնս և յիշխանութիւնս Պատրիարգ Կաթողիկոսաց ամենայն Հայոց և վարիլ հակառակ տնօրէնութեանց նորին հիմնեցելոց ի վերայ կանոնաց Հայոց սրբոց, յայնժամ մարթ է ակն ունիլ թէ փոխանակ «կարգաւորեսցին» բառին կարէ գրել և «գիւրամայեցինն» ի գրութիւնս իւր առ մեզ։

Այլ զի՝ Մեք որպէս ունող օծման հայրապետի Ազգի և Եկեղեցւոյ Հայոց ըստ 25 յօդուածոյ Բարձրագոյն Կարգադրութեան, հեռեւելով վաղեմի կարգադրութեանց Եկեղեցւոյն Հայոց կորեմք տալ զվախճանական վճիռ ամենայն պարզ հոգեւոր գործոց վերաբերելոց առ վարդապետութիւնս հաւատոյ առ պաշտամունս եկեղեցւոյ, և առ այլս այնպիսիս, յորս հայի և սոյն (գործ)։ Կանոնօրոյ համաձայն կանոնական բանից սրբոց հարց եդաք զվերոյգրեալ մեր վճիռ վախճանական»։

Ի 12 յուլիսի 1868 թ. № 207։

Վշտ. Մատթէոս Կաթողիկոս ամենայն Հայոց:

Հայրապետական կոնդակի նկատողութիւնը, ինչպէս երեւում է, ծանր է եկել Սինոդին և նա մի երկար յայտարարութիւնով (28 յուլիսի № 1507) պատասխանելով Կաթողիկոսին՝ կամենում է արդարացնել իրան։ Այդ պատասխանը մի քանի տեսակէտից շատ կարեւորութիւն է ներկայացնում թէ մեզ

և թէ ընթերցող հայ հասարակութեան համար. ուստի կարգում ենք այստեղ...

«Սինոդս ունելով ի նկատի, զի ամենայն որ և իցէ գործք պսակաց, որոց հետևանաց ծնորդեալք իցեն խախտումն ամուսնական շաղկապից ըստ զանազանանաց միոյ ամուսնոյն անշուշտ պարտին լինել հիմնեալք ի վերայ հաստատուն և զօրաւոր փաստից և ապացուցութեանց, ի յայտ եկելոց ի ձեռն օրինաւոր ճիշդ քննութեան ըստ եկեղեցական և քաղաքական կանոնաց։ Ըստ այսմ հիման Սինոդս ի 6 յուլիսի № 1312, հրամանագրեաց կոնսիստորին Վրաստանի յառաջ քան առնելն զոր և իցէ անօրէնութիւն ի բաւարարութիւն միոյ կամ միւսոյ կողման ի բողոքաւորացն զմակագրութիւն Վեհափառ Կաթողիկոսի առաջարկեալ կոնսիստորիային ըստ այսմ առարկայի համաձայնեցուցանել կանոնական սահմանաց սուրբ եկեղեցւոյս մերոյ և քաղաքական օրինաց Տէրութեանն և յայն դէպս շարունակել և աւարտել զգործն, առաջարկել ի հաստատութիւն Սինոդիս օրինաւոր քաղուածով և եզրակացութեամբ կոնսիստորիային, դադարեցուցանելով ցայն վայր զկատարումն պսակի Ա... եանի ընդ այլում ումեք։ Իսկ ի Նորին Վեհափառութենէ առանձին յայտարարութեամբ ի նոյն թիւ ամսոյ № 1313 խնդրեաց զծանօթութիւն, թէ ըստ որպիսի օրինաւոր և անհերքելի ապացուցութեանց բարեհաճեալ է վճռել զկատարումն պսակի Ա...եանց ընդ այլում, լուծմամբ պսակի ընդ օրինաւոր կնոջն առանց նախ-

*ընթացս քննութեան և կարգին, գծագրելոյ ի յօդ. 25 և 35 Բարձրագոյն Կարգադրութեան վասն կառավարութեան Եկեղեցւոյ Հայոց. . .*

*Կանոնք եկեղեցականք Հռոմայեցին.*

*Ի Թուղթս առաքելոյն որ առ Կորնթացիս. «Կընոջ յառնէ մի՛ մեկնիլ. և եթէ մեկնեսցի, անայր մնասցէ և կամ անդրէն ընդ առն հաշտեսցի, թէ և՛ այրն անկին մնասցէ, կամ ընդ կնոջն հաշտեսցի»։*

*Գրէ դարձեալ նոյն առաքեալն. «Կապեալ ես ի կին, մի՛ խնդրեր արձակիլ. արձակեալ ես ի կնոջէն, մի՛ խնդրեր զկին»* [29]*։*

*Ի կանոնս սրբոյ Հարց ի ժողովս Անտիոքայ. «Կաթողիկոսն մի՛ իշխեսցէ առնել ինչ առանց գործակցութեան Եպիսկոպոսին»*[30]*։*

*Օրէնք քաղաքական Հռոմայեն հատոր 10-րդ, յօդ. 45. «Պսակն կարէ լուծանիլ միայն կանոնաւոր հոգևոր դատաստանաւ, ըստ խնդրագործութեան*

---

[29] *Առաքելական այս և նախընթաց խօսքերի բուն իմաստը մենք պարզել ենք վերևում: Եթէ մինչև անգամ ընդունենք, թէ նրանք նշանակում են, որ միանգամ ամուսնութեամբ շաղկապուած այր և կին անբաժանելի են իրարից, դարձեալ այստեղ այդ խօսքերի յառաջ բերելը միտք չունի. ըստ որում Սինօդը ներկայ խնդրում պսակի անլուծանելիութիւնը չի դնում հիմն իր ընդդիմադրութեան, այլ օրինաահման քննութեան կարևորութիւնը:*

[30] *Միայն ցաւել կարող ենք, որ Հայ եկեղեցու պաշտօնեաներ— արքեպիսկոպոսներ և եպիսկոպոսներ, իշխանական աթոռներ ունենալով՝ կարող են լինում այդ չափ անպատրաստ կերպով և այդքան պարզմտութիւնով կանոնագիրք թերթել:*

միոյ յամուսնոցն, ի դէպս ապացուցեալ պոռնկութեան»:

Ցոյց. 805, 2-րդ մասին նոյն հատորոյ. «Վիճակային իշխանութիւնն զամենայն եզրակացութիւնս իւր վասն օրինաւորութեան և ապօրինաւորութեան, խզութեան կամ անխզութեան պսակաց հիմնէ ի վերայ կանոնաց սուրբ եկեղեցւոյ և սահմանադրութեանց Սրբազան Սինոդի և զվճիռ իւր վասն խափանման պսակաց, կամ համարելն զայն անվաւեր, առաջարկէ միշտապէս ի նկատողութիւն և ի հաստատութիւն Սինոդին»:

Ցոյց. 929, 11 հատ. օրինաց 1 մասին որ վասն կառավարութեան եկեղեցւոյ Հայոց. «Պատրիարգն հետևելով վաղեմի կանոնադրութեանց եկեղեցւոյ Հայոց և հասու լեալ նախապէս կարծեաց Սինոդի Էջմիածնի վճռէ վախճանաբար, զամենայն հոգևոր գործս, վերաբերեալս առ վարդապետութիւնս հաւատոյ, առ պաշտամունս եկեղեցւոյ և առ. այլ այնպիսիս»:

Ցոյց. 940, նոյն հատ. «Սինոդն Էջմիածնայ գտանելով ընդ անընդմիջական դիտողութեամբ Ծայրագոյն Պատրիարգին, վճռէ վախճանաբար զամենայն գործս, վերաբերեալս առ վարդապետութիւնս հաւատոյ, առ եկեղեցական պաշտամունս, ծէսս, պահս և այլն»:

Ցոյց. 944. «Ի դատելն զգործս, յորս պատրիարգն ունի զձայն վճռողական, նա ոչ ներկայանայ ի Սինոդն, այլ վերապահեալ զեզրակացութիւնս Սինոդին,

որ ի մատուցեալ նմա յօրինագրութիւնս, տայ այնց վճիռ»:

Սահմանեցին. Առ վերոյգրեալ բանս կոնդակի Նորին Վեհափառութեան, որ ի մասին հանգամանաց գործոյն պսակի Ա...եանց ընդ դստեր Մ...եանց, խոնարհաբար պատասխանել, թէ Սինոդս հրահանգելով իսկապէս կանոնօք Հայաստանեայց Եկեղեցւոյ, օրինօք Տէրութեանն, և տեսանելով ի յայտարարութեան կոնսիստորիին զկարի կարճօրեայ ժամանակն և զեղանակն, զորս մակագրութեամբ սահմանեալ էր Նորին Վեհափառութիւնն վասն խախտման պսակի նոյն անձանց հարկադրեցաւ վաղվաղել զեւրն անօրէնութիւն համաձայն կարգին օրինաց. օրէնք եկեղեցական խիստ են ի դէպս ուր պահանջի խախտումն ամուսնական շաղկապոյ լուծանել զայն դիւրաւ առանց մանրազննին երկարաժամանակեայ հետազննութեան էական հանգամանաց նորին իսկութեան կամ անիսկութեան բողոքանաց միոյ յամուսնոց զմիւսոյն նշանակէ խախտել զբարոյական հիմն, յոր հաստատեալն է վսեմ խորհուրդ ամուսնութեանն. օրէնք քաղաքականք որք զնոյն ունին սկիզբն, զնոյն օրինակ ճշդութիւնս պահանջեն ի գործս պսակաց, վասնզի սահմանեն քննել, զննել և հաստատել փաստիւք ապացուցականօք զյանցաւորութիւն և՛ այնպէս ապա գալ ի վախճանական վճիռ բանիւն Կարգ և եղանակ քննութեանն, կանոնաւորեալ գտանի յօրէնս Տէրութեանն: Ի գործս հոգևորս պատերազն ունի զձայն վճռողական, բայց ոչ յառաջ քան զհա-

սու լինելն կարծեաց Սինոդի, ուստի և գործն Ա... եանի, պարտ էր ըստ օրինի քննել ի ձեռն պատկանաւոր քաղաքական տեսչութեան, ապա մատնել եզրակացութեամբ կոնսիստորիին ի զննութիւն Սինոդի և առաջարկել ի վախճանական վճռահատութիւն պատրիարգին։ Վճիռ նորա ըստ այնմ վճիռ անհերքելի։ Այս կարգ զերկուս բարոյական սկզբունս պարունակէ յինքեան. մի՝ զի գործոյն արդարութիւն կամ ստութիւն հաստատի կամ հերքի բանիւք վըկայից և ապացուցական հանգամանօք ի ձեռն քըննութեան. և երկրորդ՝ բազմիցս պատահի, զի յընթացս շարունակութեան քննութեան, առ որ պահանջի ոչ սակաւ ժամանակ, զիջեալ ի բորբոքեալ կրից նախանձու կամ ատելութեան ամուսնոցն և ի սորջանս եկեալ միջնորդութեամբ մերձաւորաց և ազգականաց և կամ համոզեալ ի հոգևոր խրատուց և կամ բռնադատեալ յայլոց առանին հանգամանաց, գան ի հաշտութիւն խաղաղութեան և սիրով կենցաղավարութեան և այնպէս դադարի քննութիւնն և ամուսինքն խրատեալք ի փորձոյ և յամօթոյ նախատանաց և անուանարկութեան, որում ենթարկին միանգամ, վարին ընդ իրեարս հաշտ և համբոյր և ներողամտաբար առ իրեարս։ Այսու իսկ ենթադատութեամբ Սինոդս անօրինեաց քննել զայս տարակոյս կանոնաւոր կերպիւ, և չունելով զհաստատուն և հանգամանօրէն տեղեկութիւն զսկզբնաւորութենէ և ընթացից և զվախճանէ գործոյն խընդրեաց ի Նորին Վեհափառութենէ զծանօթութիւն

վայելչական յայտարարական թղթով, որով և չեղև սակաւիկ իմն պանծառու ընդ սահման իրաւանց իւրոց և արտօնութեանց, որպէս բարեհաճեալ է նկատել ի կոնդակի իւրում Նորին Վեհափառութիւնն, թէ «մարթէ սպասել փոխանակ «կարգաւորեցին» բառին «զհրամայեցինն» ի գործ դնել ի դրութիւնս Սինոդի առ նա». վազվաղելն ի դիւրակատար խախտումն պսակաց, զչարիս բազումս և առիթս դայթակղութեան ծնուցանէ ըստ կարծեաց Սինոդիս, զի բազումք տաղտկացեալք յայլ և այլ ներքին հանգամանաց ամուսնական կենաց կամ հրապուրեալք ախտիւք առ օտարս զամենայն հնարս մարթանաց ի վար արկանեն հեռացուցանել յինքեանց զծանր լուծ ամուսնութեան և յարել ի կեանս, ուր ազատութեամբ հեշտութեան տայ յագուրդ չարամիտ ըղձից նոցա, և այնու չարաւիթ օրինակն միոյ վարակեալ միւսոյն հեշտասիրաց, կարեն զհետ բերել զբազում դժուարգել դայթակղեցուցիչ մոլորութիւնս և հետեւաբար թուլութիւն և խանգարումն բարոյական նշանակութեան ամուսնական սրբութեան»։

Այսչափ սուր կերպարանք առած գրագրութիւնն և Սինոդի դիմադրութիւնը Կաթողիկոսին կարծւում են խնդրատու Ա... եանցի անակնունելի մահով։

Ը.

(1862 Թ. № 129)։

Նոյնպիսի մտքով—իր կնոջ անբարոյականութեան պատճառով պսակի քակտումն և նոր ամուսնու-

թեան իրաւունք խնդրում է Տ. Յ. Ա...եանց։ Կաթողիկոսի մակագրութեան համաձայն Տփխիսի Կոնսիստորիայն նշանակում է քննութիւն, որ ապացուցանում է բողոքի ճշդութիւնը։

## Վ Ճ Ի Ռ.

Կաթողիկոսը Կոնսիստորիայից ներկայացրած յայտարարութեան (ի 25 օգոստոսի 1862 № 1673) վրայ մակագրում է. «Համաձայն կանոնաց սրբոյ Հայրապետին մերոյ Ներսիսի Շնորհալւոյ, որ ի շրջաբերական գրի, առաքելոյ ի Կարս, և այլոց սրբոյ Հարց հրամայեմք վիճ. Կոնսիստորին Վրաստանի բաժանել զհանապազօրեայ պտունիկ Կ... յաւէտ իւրմէ և տալ առն նորա Յ. Ա...եանց իրաւունս ամուսնանալոյ ընդ այլում. իսկ քահանայի արձակել Կ...յի պատուիրել չօրհնել բնաւ զառն նորա և ոչ ևս արժանաւորել զնա սուրբ խորհրդոյ վասն անխիղճ կենցաղավարութեան. և եթէ յանզղջ անառակութեան անդ հասցէ նմա վախճան, տացէ կատարել ի վերայ նորա զեշոյ թաղումն»։ Կոնսիստորիայն կատարում է կաթողիկոսի հրամանը և յայտնում Սինոդին. վերջինս հրամայում է մատուցանել իրան ամբողջ գրագրութիւնն «վասն անառակ վարուց կնոջ. Յ. Ա...եանց». բայց կոնսիստորիայն պատասխանում է. «Վեհափառ Հայրապետն... բարեհաճեցաւ հրամայել, թէ այս գործ Յ. Ա...եանց և կնոջ նորա քննեալ է նախ ներկայութեամբ իւրով և ապա քննչի և վերջացեալ իսկ է. այլ թէ այժմ

վայելչական յայտարարական թղթով, որով և չեղև սակաւիկ իմն զանցառու ընդ սահման իրաւանց իւրոց և արտօնութեանց, որպէս բարեհամբաւ է նկատել ի կոնդակի իւրում Նորին Վեհափառութիւնն, թէ «մարթէ սպասել փոխանակ «կարգաւորեցին» բառին «զհրամայեցինն» ի գործ դնել ի գրութիւնս Սինոդի առ. նա». վաղվաղեակն ի դիւրակատար խախտումն պատկաց, պչարիս բազումս և առիթս դայթակղութեան ծնուցանէ ըստ կարեաց Սինոդիս, զի բազումք տաղտկացեալք յայլ և այլ նեղքին հանգամանաց ամուսնական կենաց կամ հրապուրեալք ախտիւք առ. օտարս զամենայն հնարս մարթանաց ի վար արկանեն հեռացուցանել յինքեանց զծանր լուծ ամուսնութեան և յարել ի կեանս, ուր ազատութեամբ հեշտութեան տայ յագուրդ չարամիտ ըղձից նոցա, և այնու չարաւիթ օրինակն միոյ վարակեալ միւսոյն հեշտասիրաց, կարեն զհետ բերել զբազում զժուարգել դայթակղեցուցիչ մոլորութիւնս և հետևաբար թուլութիւն և խանգարումն բարոյական նշանակութեան ամուսնական սրբութեան»:

Այսչափ սուր կերպարանք առած գրագրութիւնն և Սինոդի դիմադրութիւնը Կաթողիկոսին կարծւում են խնդրատու Ա... եանցի անակնունելի մահով։

Ը.

(1862 Թ. № 129):

Նոյնպիսի մտքով—իր կնոջ անբարոյականութեան պատճառով պսակի քակտումն և նոր ամուսնու-

թեան իրաւունք խնդրում է Տ. Ց. Ա... եանց։ Կաթողիկոսի մակագրութեան համաձայն Տփխիսի Կոնսիստորիայն նշանակում է քննութիւն, որ ապացուցանում է բողոքի ճշգութիւնը։

## Վ Ճ Ի Ռ.

Կաթողիկոսը Կոնսիստորիայից ներկայացրած յայտարարութեան (ի 25 օգոստոսի 1862 № 1673) վրայ մակագրում է. «Համաձայն կանոնաց սրբոյ Հայրապետին մերոյ Ներսէսի Շնորհալւոյ, որ ի շրջաբերական գրի, առաքելոյ ի Կարս, և այլոց սրբոց Հարց հրամայեմք վիճ: Կոնսիստորին Վրաստանի բաժանել զհանապազօրեայ պոռնիկ Կ... յանէ իւրմէ և տալ առն նորա Ց. Ա... եանց իրաւունս ամուսնանալոյ ընդ այլում. իսկ քահանայի արձակեալ Կ...յի պատուիրել չօրհնել բնաւ զառն նորա և ոչ ևս արժանաւորել զնա սուրբ խորհրդոյ վասն անխիղճ կենցաղավարութեան. և եթէ յանզեղջ անառակութեան անդ հասցէ նմա վախճան, տացէ կատարել ի վերայ նորա զիշոյ թաղումն»։ Կոնսիստորիայն կատարում է կաթողիկոսի հրամանը և յայտնում Սինօդին. վերջինս հրամայում է մատուցանել իրան ամբողջ գրագրութիւնն «վասն անառակ վարուց կնոջ. Ց. Ա... եանց». բայց կոնսիստորիայն պատասխանում է. «Վեհափառ Հայրապետն... բարեհաճեցաւ հրամայել, թէ այս գործ Ց. Ա... եանց և կնոջ նորա քննեալ է նախ ներկայութեամբ իւրով և ապա քննչի և վերջացեալ իսկ է. այլ թէ այժմ

ով է վճռողն, բարեհաճեսցի Սինոդդ ծանուցանել ամէն վասն յայտնելոյ Նորին Վեհափառութեան ըստ պահանջման Նորին Սրբութեան»։

### Թ.

(1865 Թ. № 68.)

Ծալկեցի Ս. Ց...եան 1861 թւին դիմելով Մատթէոս Կաթողիկոսին և յայտնելով իր կնոջ ամուսնական անհաւատարմութիւնը, խնդրում է լուծանել իրանց պսակն և իրան տալ կրկին ամուսնանալու իրաւունք։

### Վ Ճ Ի Ռ.

Կաթողիկոսը նոյն խնդրքի վրայ մակագրելով և Ախալքալակի գործակալին ուղարկելով պատւիրում է թոյլատրել խնդրատուին «ամուսնանալ ընդ այլում»։ Եւ որովհետև այդ մասին գրագրութիւն է եղել և Սինոդում, վերջինս լսելով կաթողիկոսի մակագրութեան մասին՝ կարճում է գործը։

---

## ԵՐԿՐՈՐԴ ԲԱԺԻՆ.

## ՊՍԱԿՆ ԱՆԼՈՒԾԱՆԵԼԻ Է.

### Ա.

(1875 Թ.)

Գէորգ Դ. Կաթողիկոսն 1875 թւին յունիսի 4-ին տալիս է Սինոդին մի կոնդակ (№ 179) որի մէջ պսակն հրատարակում է անլուծանելի ըստ կանոնաց Հայաստանեայց Եկեղեցւոյ. «Երանաշնորհ Առաքեալք և Հայրապետք սրբոյ եկեղեցւոյ», ասած է կոնդա-

կամ, «ուսեալք ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ՝ զՀին օրինաց զդաշն կապակցութեան առն և կնոջ խնամատութեամբ բարձրացուցին ի կարգ սրբազան խորհրդոց եկեղեցւոյ՝ անլուծանելի հռչակեալ զկապն ամուսնութեան ցմահ ամուսնակցացն ըստ Տէրութեան բանին թէ «զոր Աստուած զուգեաց մարդ մի՛ մեկնեսցէ». ուստի պատկառ եկաց ի վաղուաւոր ժամանակաց հետէ Հայաստանեայցս սուրբ եկեղեցի, գիտելով քաջ զխնամատութիւն և զարդարութիւն Քրիստոսադիր պատուիրանին՝ և զանցաւորութեանն, որ անտի, զբազմամփոփս հետևանս ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ բարեկենդանութեան։

Եւ թէպէտ յառաջ քան զմեր գահակալութիւն պատահեալ են օրինակք ինչ բաժանման միոյն յամուսնացելոց[31] առ ընկերին կենդանութեամբ, բայց գիտել պարտ է, զի նախ քան զայնս յԱզգի մերում ի կողմանէ եկեղեցական պաշտօնէից սուրբ եկեղեցւոյս գոգցես բնաւին չէր թոյլատրեալ ումեք եղծումն կանոնի միութեան բարոյական անձնաւորութեան ամուսնացելոց։ Պատճառ մեղանչելոյ ընդդէմ նուիրական կանոնիս անշուշտ այն է, զի ոչ համապազ որպէս հարկն պահանջէ, ըստ օրինի լիակատար ազատութեամբ կամաց իւրաքանչիւրոց ևս կողմանց գործադրի խորհուրդն պսակի, առանց կանխաւ օրի-

[31] Իր գահակալութեան ժամանակն էլ տեղի ունեցան «օրինակք ինչ բաժանման միոյն յամուսնացելոց». բաւական է յիշել, որ նա ինքը թոյլատրեց մի նշանաւոր անձին բաժանուիլ կնոջից և ամուսնանալ երկրորդ անգամ (Թէոդոսիայում):

նաւոր նշանագրութեան. յորմէ բնականապէս յառաջ գան յետ ամուսնութեան կատարման՝ տրտունջք և անմիաբանութեան դառն արգասիք յընտանեկան կենցաղավարութեան... Եւ արդ՝ գուն գործելով մեր ըստ սրբազան պարտուց Հայրապետական պաշտամանս մերոյ՝ հաւատարիմ աւանդապահ լինել սրբազան կարգաց և կանոնաց Հայաստանեայցս Ուղղափառ Մայր Եկեղեցւոյ՝ և ընդ նմին ոչ գտանել անփոյթ ի խնամս մատակարարելոյ ի Տեառնէ հաւատացեալ մեզ հօտին զհարկաւոր առիթս բարոյական և ֆիզիքական վերակենդանութեան զոյգ ընդ մտաւորականին զարգացման՝ կարևոր յոյժ համարիմք ընդ ձեռն Սինոդիդ դարձուցանել զխորին ուշադրութիւն գերապատիւ Առաջնորդաց և Յաջորդաց ի վերայ այսր մեծի և սրբազան խորհրդոյ ամուսնութեան՝ իբրև ի վերայ անլուծանելի շաղկապի խաղաղ և անդորր կենակցութեան առն և կնոջ մինչև ցվախճան կենաց նոցին... բազումք հետամուտ լինին ի ձեռս բերել զայն՝ որ Հայաստանեայցս եկեղեցւոյ վարդապետութեան և բնութեան ճշմարիտ օրինօք՝ իրաւամբ է խափանեալ. այն է լուծումն պսակի, որ ըստ ամենայնի սուրբ է և անլուծանելի։ Ապաքէն ոչինչ զօրեսցեն ստանալ կանոնաց սուրբ եկեղեցւոյս անօրինացն վարք և ընթացք, որ բաժանել նկրտեն ի միմեանց թելադրութեամբ ապականեալ բարուց իւրեանց[32]... պսակն ի Տեառնէ մերմէ Քրիստոսէ անլուծանելի քարոզեալ։...

[32] Շատ տարօրինակ հայեացք է, որ արտայայտում է կոնդակը,

Հարկ չենք տեսնում սոյն կնոնդակի քննութեան ձեռնամուխ լինելու, քանի որ մենք արդէն իր տեղում տեսանք թէ Փրկչական և Առաքելական պատուէրների իսկական իմաստի պարզութիւնը և թէ Հայաստանեաց Եկեղեցու կանոնները և ս. Հարց վկայութիւնները, որոնց հաւատարիմ աւանդապահութիւնը, որ յիշուած է կոնդակում, դժբախտաբար չի ապացուցւում։ Շատ պարզ է, որ այդպիսի մի կոնդակ չէր կարող մնալ առանց հերքողական կարծիքների և լրագրական յօդուածների։ Այդպիսի յօդուածներից մինը երևեցաւ «Кавказъ» պաշտօնական լրագրի 1876 թւի 111 համարում, որ համառօտ կերպով խօսելով ամուսնութեան ունեցած ընկերական և պետական նշանակութեան վրայ, և ընտանեկան ու ամուսնական յարաբերութիւնները պարզող օրէնսդրութիւնների գլխաւոր աղբիւր պետական իշխանութիւնը դնելով՝ ասում է. «Որ և է կողմնակի պատճառ, որ թուլացնում է այդ իշխանութեան հեղինակութիւնը, ինքն ըստ ինքեան թուլացնում է և նրանից բղխած օրէնքների նշանակութիւնը և

---

պսակների լուծման խնդիրներում ապականեալ բարուց թելադրութիւն նկատելով: Արդարև կարող է պատահել, որ երբեմն ապականեալ բարքը լինի պատճառ ամուսնական պսակի լուծումն խնդրելուն. բայց բացառութիւններից ընդհանուր եզրակացութիւն դուրս բերել անկարելի է: Ընդհակառակն բարուց մաքրութեան պահանջն է, որ այդպիսի խնդիր է յարուցանում: Քրիստոնէական եկեղեցին էլ այդ տեսակէտից է ըմբռնում խնդիրն և ընթացք տալիս նրան:

քաղաքական զօրութիւնը։ Պետական այլ գործիչների՝ իրաւազօրութեան մէջ մտնելը ամուսնութեանը և ընտանիքին վերաբերող օրէնքները մշակելու մըտքով վնասակար է, և շատ անգամ լինում է հակառակ ժամանակի պահանջներին և տիրող օրէնսդրութիւնների ոգւոյն։ Այնքան վնասակար է այդպիսի միջամտութիւնն ընտանիքի և ամուսնութեան նկատմամբ, որքան, որպէս յիշեցինք, մեծ է ընտանեկան և ամուսնական կապակցութիւնների նշանակութիւնը և այն դերը, որ նրանք ունին պետական կազմակերպութեան մէջ։ Որ և է թիւրիմացութիւն օրէնքի և նրան ծագումն տւող աղբիւրների նկատմամբ իսկոյն պիտի հեռացւի, որ ամուսնութիւնն ու ընտանիքը պահեն իրանց կշիռը։

Մեր պետական իշխանութիւնը դարձրել է լիուլի ուշադրութիւն ամուսնական և ընտանեկան յարաբերութիւնների վրայ։ Մեր քաղաքացիական օրէնսդրութեան շարքում այդ յարաբերութիւնները բացատրող օրէնքներն առաջին տեղն են բռնում։ Մինչև անգամ այժմ հաստատւում է առանձին մասնաժողով ի նորոյ և խնամքով վերաքննելու այդ օրէնքները (տես Суд. Вѣст. 1876, № 62)։ Մեր օրէնքները պահանջում են եկեղեցու մասնակցութիւնն ամուսնական դաշնակցութեան և սրա քակտման խնդրում։ Այսպէս օրինակ՝ հոգևոր իշխանութիւնը մասնակցում է այդ խնդիրներում X հատորի 1 մասի 1—24, 45—99, և 2 մասի 804—816 յօդւածներով նշանակած կանոնների համաձայն։ Հե-

տեւաբար՝ հոգևոր իշխանութիւնը վարելով յիշեալ
դէպքերում եկեղեցական կանոնների համեմատ՝ պի-
տի համաձայնեցնէ իր կանոնները վերայկարգեալ օ-
րէնսդրութեան հետ։ Նոյնը պիտի անեն մեր ընդար-
ձակ կայսրութեան միւս դաւանութիւնները։ X-րդ
հատորի 3-րդ յօդուածի զօրութեամբ այլ դաւանու-
թիւնների հոգ. վարչութիւններն իրանց գործերը և
իրանց պարտաւորութիւնները վարում են իրանց կրօնի
կարգերի և կանոնների համաձայն, համակերպւելով
տիրող օրէնքների ոգւոյն։ Այս նկատմամբ այդ դաւա-
նութիւնների բոլոր բարձր ատեանները ենթարկւած
են աշխարհական իշխանութեան, և բարձրաստիճան
հոգևորական անձինք նշանակւում են նոյն կառա-
վարութիւնից։

Այս բոլորից յետոյ կանգ ենք առնում Գէորգ
Կաթողիկոսի՝ Էջմիածնի Սինօդին տւած կոնդակի
քննութեան վրայ։ Այդ կոնդակի ասելով՝ պսակն
անլուծանելի է հայերի համար։ Կոնդակի իրաւա-
բանական նշանակութիւնը թոյլ է. օրինակ՝ նորա
կարծիքով ամուսիններից մէկի բոլոր իրաւունքներից
զրկւիլը, անյայտ բացակայութիւնը, պոռնկութիւնը
և ամուսնական կենակցութեան անընդունակու-
թիւնն[33] իրաւունք չեն տալիս անպարտ ամուսնին

[33] Թէպէտև կոնդակի բովանդակութիւնից նկատելի է, որ նա
կամենում է պսակն անլուծանելի հրատարակել ի դէպս ամուսիննե-
րից մէկի մեղանչման, բայց չյիշելով քակտման միւս պատճառ-
ները և ընդհանուր խօսքերով ասելով «անլուծանելի ցմահ ա-

պսակի լուծումն խնդրելու. և մինչև անգամ՝ երկրորդ ամուսնութեան մտած ժամանակն էլ, առաջին պսակը, կոնդակի կարծիքով, պիտի պահէ իր զօրութիւնը[34]: Էջմիածնի Սինօդում կայ աստիճանաւոր, որի պարտաւորութիւնն է ղեկավարել ընդհանուր կարգադրութիւնները և հսկել դատաստանական և վարչական գործերի վրայ և իր բողոքներն այդ գործերի մասին հասցնել իշխանութեան: Ապա ուրեմն այդ աստիճանաւորի իրաւունքն ընդարձակ է, և այդ իրաւունքի զօրութեամբ առանց հետևանքի չպիտի մնայ հոգևոր իշխանութեան այնպիսի մի կարգադրութիւն, որ կարող է հակառակ լինել եկեղեցական կանոններին, գլխաւորապէս քաղաքացիական օրէնքների ոգւոյն. այլ պիտի ներկայացուի պետական իշխանութեան բարեհայեցողութեան: Միմիայն բարի նպատակները, որոց մասին չենք կասկածում, չեն կարող արդարացնել այդ կոնդակի հրատարակութիւնը: Վասնորոյ մենք յոյս ենք տածում, անհրաժեշտութեան զօրութեան վրայ հիմնուած, որ յիշեալ կոնդակը կենթարկուի պատշաճաւոր իշխանութեան կողմից ուշադրութեան. մանաւանդ որ՝ ինչպէս լսում է, ոչ սակաւ ամուսնական գործեր

մուսնակցացն» իրաւունք է տալիս յօդուածագրի եզրակացութիւնն արդարացնելու:

[34] Կոնդակն այդպիսի բան ասած չունի և չէր կարող ասել. քանի որ անլուծանելի հրատարակելով պսակը՝ մերժում է երկրորդ պսակի կարելիութիւնը: Թէ ինչն է տեղիք տուել յօդուած կազմողին այդպիսի խոշոր սխալ անելու, չգիտենք:

տակաւին անվճիռ են մնում Էջմիածնայ Սինօդում յունիսի 4-ի խիստ կոնդակի պատճառով։ Բայց նախ քան կոնդակի քննութեան ձեռնարկելն անհրաժեշտ է յարուցանել այս խնդիրը, թէ հայերն ընդունո՞ւմ են կոնդակի վարդապետութեան անսխալականութիւնը. և եթէ չեն ընդունում, ուրեմն նրա իմաստով արած կարգադրութիւններն ունի՞ն արդեօք տիեզերական ժողովների կարգադրութիւններին հաւասար պարտաւորիչ նշանակութիւն»։

Դժւար չէ վերոգրեալ յօդւածի ոճից և բովանդակութիւնից հասկանալ նրա ուղղութիւնը և ճանաչել հեղինակը. բայց մի՞թէ իրաւունք կայ մեղադրելու ուրիշին և այն ժամանակ, երբ նա խօսելու նիւթ է առնում մեր գործած սխալը։ Եթէ կոնդակն իր բովանդակութիւնով իրաւի համապատասխանէր եկեղեցու կանոնների հաւատարիմ աւանդապահութեան, մի՞թէ կարող էր որ և է մէկն ասել, թէ քննեցէք Հայոց Կաթողիկոսի՝ իր եկեղեցու կանոնների ճիշդ աւանդապահ լինելու իրաւունքը...[35]։

Սակայն այդ թողնենք, որ մեզ շատ հեռուն չտանէ, և տեսնենք միայն ամուսնական գործերի ընթացքը այս կոնդակի հրատարակութիւնից յետոյ։

## Բ.

### (1870 Թ.)

Թւականից տասը տարի առաջ Ղարաբաղի Կոնսիստորիայն մտնում է մի Շուշեցու խնդիրք

---

[35] Տես առաջին մասի 2-րդ ծանօթութիւնը:

պատկեր քակտման համար, որովհետև խնդրատուի կինն յայտնում է իբրև հրապարակական կին։ Կոնսիստորիայն կանոնաւոր քննութիւնն աւարտելուց յետոյ ներկայացնում է Սինօդի վճռին։

## Վ Ճ Ի Ռ.

Երկար ժամանակ գործն երեսի վրայ թողնելուց յետոյ Սինօդը վերջապէս (1876 թւին յունիսի 14-ին № 1386) հրամանագրում է. «Որովհետև ըստ հաւաստութեան Կոնսիստորիիդ չէք այլ ևս յոյս դարձի Ս...նայ կնոջն յանառակ կենաց, և ոչինչ զօրեն ի նա բանք խրատուց, յորդորանաց և ներողամտութեան առն առ նախանցեալ յանցանս նորա... Վասնորոյ հրամայել Թեմական Ատենիդ զՍ... կինն ենթարկել ինքեան եկեղեցական ապաշխարանաց, արգելելով ի հաղորդութենէ եկեղեցւոյ. այն է՝ չթոյլատրել նմա ի տաճար Տեառն, և չհաղորդել, չօրհնել զտուն նորա և այլն.... և առն նորա յայտնել, զի ըստ կանոնական կոնդակի Վեհ. Կաթողիկոսի պսակ որդւոյ Հայաստանեայց Եկեղեցւոյ անլուծանելի է»։

Քաղուած Սինօդի օրագրութիւնից. «Որովհետև առաջարկութիւն... առաջնորդին Աստրախանայ է տարօրինակ իմն և հակառակ կանոնաց Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյ, ըստ որոց պսակն անլուծանելի է ցորչափ կենդանի իցէ մինն յամուսնացելոց անտի, ուստի թողլով զայն առանց հետևանաց, յաւելուլ ի գիտութիւն Նորին Գերապատուութեան,

թէ նա ըստ իւրում կոչման և պարտաւորութեան պարտ էր անդէն անդ բացասել նմին... և մի՛ տանել բնաւ զայսպիսի անտեղի առաջարկութիւնս հակառակ մտաց եկեղեցական օրինաց. «Արարատ». 1879, թիւ Թ-րդ, սեպտեմբեր։

Գ.

(1879 Թ.)

Քաղուած Սինօդի օրագրութիւնից. «Որովհետև որպէս երևի ի յայտարարութենէ կառավարութեան Ալէքսանդրապօլու կինն Ա...ցի Պ...նազօն փոխանակ զի յետս կասելոյ յանվայել գնացից և ջանալոյ համեստ կենցաղավարութեամբ ի հաշտութիւն ածել ընդ ինքեան զայր իւր, անզեղջ մնացեալ ի մեղս անառակութեան ապօրինապէս կենակցի ընդ առն այլում, վասնորոյ հրամանագրեալ հոգ. կառ. Ա...գն... կինն ենթարկել ի ներքոյ եկեղեցական ապաշխարանաց, արգելուլ ի հաղորդութենէ եկեղեցւոյ. այսինքն չթողուլ նմա մտանել ի տաճար Տեառն և չհաղորդել կենարար մարմնոյ և արեան Յիսուսի, բայց միայն արժանացուցանել վերջնում թօշակի և անօրինել չօրհնել զտուն նորա ի շարս այլոց հաւատացելոց... զորմէ ծանուցեալ առն յիշատակեալ կնոջ... յայտնել նմա, զի ըստ կանոնական կոնդակի Վեհ. Կաթողիկոսի պսակ որդւոց Հայաստանեայց Եկեղեցւոյ անլուծանելի է, ցորչափ կենդանի իցէ մինն յամուսնացելոց անտի». «Արարատ». 1879, թիւ Ժ. հոկտեմբեր։

Մեր օրինակները դեռ չեն սպառուած. միայն թէ վերստին պէտք է բաժանել նրանց երկուսի, որպէս զի կարողանանք ճիշդ պատկերացնել այն փոփոխական, և, ի հարկէ, մէկ մէկի հակասող վճիռները, որ արձակուել են Տփխիսի Կոնսիստորիայի անունով մի և նոյն խնդրի առիթով ութ տարուայ ընթացքում — Գէորգ Կաթողիկոսի մահից, 1882 թուից յետոյ մինչև 1889 թուի վերջերը։ Սրա համար էլ դնում ենք դարձեալ նախընթացի նման առաջին բաժին — պսակը լուծանելի է. երկրորդ բաժին — պսակն անլուծանելի է։

---

ԱՌԱՋԻՆ ԲԱԺԻՆ.

## ՊՍԱԿԸ ԼՈՒԾԱՆԵԼԻ Է.

### Ա.

(1883 Թ. № 669.)

«Հրամանաւ... ի Սինոդիս լուան զխնդիր Տփխիսաբնակչուհի Դ...այի ընդ առն Բ...եանց ի 25 յունուարի տարւոյս որ վասն քակտելոյ զպսակ իւր ընդ առն իւրոյ Յ. Բ...եանց։ Օրէնք հրամայեն ըստ կանոնաց եկեղեցւոյ Հայոց նիզ. երես 63, աշծդ. երես 424, և աշծթ. երես 425, և օրէնք քաղաքական յօդուած 45, հատոր 10, պարբերութիւն 2։ Հրամայեցին. թէև Սինոդս ունելով ի նկատի, զի այր խնդրագործ Դ...այի Յ. Բ...եանց զրկեալ յամենայն իրաւանց և արտօնութեանց և աքսորեալն ի բանդարկելութիւն վասն գողութեանն, պարտաւոր էր

ապաքէն յետ վերադարձին ի Հայրենիս իւր՝ ընդունել զկին իւր զԴ...այն առ. ինքն և խնամ տանել նմա ըստ պարտուց ամուսնական պայմանաց, և՝ ըստ այնմ արարեալ է զբացասութիւն առաջարկութեան Կոնսիստորիայիդ, սակայն՝ ըստ որում որպէս յայտնի է Սինոդիս, զի Ց. Բ...եանց յետ բազմադիմի խրատուց և յորդորանաց ընդունիլ առ ինքն զկին իւր խնամել նմա, յընթացս ուհա՛ ամաց բազմաց բնակելով անջատ ի կնոջէ իւրմէ՝ թողեալ լքեալ է զնա միանգամայն ի թշուառ և ի տառապակիր վիճակի, և ոչ ինչ տանէ նմա բնաւ զխնամս, որպէս օրէն է առն և կնոջ, վասնորոյ և ի վերայ հիման վերոյգրեալ եկեղեցական և քաղաքական օրինաց, զպսակ Դ...այի ընդ առն իւրում Ց. Բ...եանց համարիլ լուծեալ, թոյլատրելով առաջնոյն մտանել ընդ այլում յամուսնութիւն, զորմէ և տալ գիտել Կոնսիստորիայիդ Տփխիսու վասն պարտուպատշաճն կատարման» (ի 28 փետր. 1883 ամի № 669)։

Բ.

(1884 Թ.)

Այդ հրամանից երկու ամիս յետոյ նոյնպէս և 1884 թւին Տփխիսի Կոնսիստորիայն ներկայացրեց Սինոդի անօրէնութեան երկու գործ, որոնք հիմնուած էին պսակի լուծումն պահանջող խնդիրների վրայ և որոնք օրինաահման քննութիւններով լուծումն էին ստացած։ Երկուսի համար էլ Սինոդը պատասխանում է. «Ունելով ի նկատի, զի գործք լուծման

պսակաց ըստ վսեմութեան տարակային ընկալեալ լինելն միայն ի նկատողութիւն ընդ ատենապետութեամբ Վեհ. Հայրապետի Ազգիս, ուստի զանօրէնութիւն խնդրոյս թողուլ ցընտրութիւն և ցհաստատութիւն նորոգ կաթողիկոսի, յորում ժամու և տալ առանձին զեկուցումն»։

Գ.

(1885 Թ.)

Չնայելով, որ այդպիսի պատասխան կրկնել է Սինօդը դեռ ևս կաթողիկոսի ընտրութիւնից բաւական առաջ, այսու ամենայնիւ մի այլ դէպքում բարեհաճում է զարմանալի շտապով վճռել այդպիսի մի խնդիր, մինչև անգամ հարկ չհամարելով ի նկատի առնելու թէ մի երկու ամսից յետոյ արդէն կաթողիկոսը նստած կ՚լինի իր Աթոռի վրայ, և որ աւելի զարմանալի է, այն Սինօդը, որ այնքան դիմադրութիւն էր ցոյց տալիս Մատթէոս Կաթողիկոսին Ա...եանցի պսակի լուծման խնդրում միայն նրա համար, որ օրէնքով սահմանուած քննութիւնը չէր կատարուել մատուցած խնդրի առիթով, մոռանում է միանգամայն օրէնքի այդ պահանջը։ 1885 թուի յունիս ամսում մտնում է ուղղակի Սինօդը Գ... Ք...եանցի խնդիրն երկրորդ պսակի իրաւունք տալու. և Սինօդը օգոստոսի 2-ին արձակած հրամանով տալիս է խնդրած իրաւունքը։

Իբրև եկեղեցու առաջնորդ և եպիսկոպոս պարտականութիւն ունենալով կանոնապահ և օրէնապահ

լինելու՝ ամփոփուած եղանք՝ տալ Տփխիսի Թեմ. Առեններն այսպիսի առաջարկութիւն (ի 16 օգոստ. 1885 ամի № 124). «Սինոդոսն Ս. Էջմիածնի Հրամանաւ որ յ2 ամսոյս արձակեալ, ընդ համարաւ 2461, քակտեալ համարելով. զդատ Գ... Ք...եանց ընդ կնոջ նորա Մ... տալ իրաւունս յիշատակեալ Ք...եանցի մտանել յերկրորդ ամուսնութիւն։ Առ որ Հարկ համարիմ ծանուցանել Թեմ. Առեններդ, զի ըստ իմում կարծեաց այդ վճիռ անհամապատասխան է կանոնաց և կարգաց Հայաստանեայց Առաքելական Ս. Եկեղեցւոյ և օրինաց պետութեան, սահմանելոց վասն կառավարութեան հոգևոր գործոց և եկեղեցական խնդրոց Հայոց ի Ռուսաստան։ Կանոնաց և կարգաց եկեղեցւոյ՝ զի զամենայն կրօնական կարևոր խնդիրս, յորոց սակս և ամուսնականն, վճռէ միայն Վեհ. Կաթողիկոսն ամենայն Հայոց՝ իւրով բարձու իրաւասութեամբ. և օրինաց Պետութեան՝ որ ճանաչելով զայդ իրաւասութիւն Հայրապետի եկեղեցւոյ, նմա միայնոյ վերապահէ զվճիռ զուտ կրօնական խնդրոց (սահմ. վասն կառավ. գործոց Հայաստ. եկեղեցւոյ. 1836, յօդ. 25)։ Իսկ թէ արդարև ամուսնական խնդիրք զուտ կրօնական համարին և միմիայն վճռոյ Հայրապետին պատկանին մնալ, վկայեալ է բազմիցս և ինքն Սինոդն, որպէս յայտնի է ի յետագայ գործոց Առեններդ։ Առաջին՝ Առեանդ յետ օրինաւոր քննութեամբ ստուգելոյ զքողք Տ. Ա. Մ... խնդրեալ էր զանօրէնութիւն Սինոդի և նա Հրամանաւ յ8-ն յունուարի տարւոյս (№ 21) ծանու-

ցանէ. «Ունելով ի նկատի, զի գործք լուծման պսակաց ըստ վսեմութեան տուարկային ընկալեալ լինին միայն ի նկատողութիւն ընդ Առենապետութեամբ Վեհ. Հայրապետի ազգիս, ուստի զանօրէնութիւն խնդրոյս թողուլ ցընտրութիւն և զհաստատութիւն նորոգ կաթողիկոսի, յորում ժամու և տալ առանձին զեկուցումն»: Երկրորդ յայտարարութեամբ յ30 ապրիլի 1884 ամի առաջարկեալ է ի տնօրէնութիւն գործն քննութեան յաղագս... կնոջ Ա...ցի Ս. Բ...կեանց... Առ այս յայտարարութիւն Սինօդն Հրամանաւ յ30 ապրիլի տարւոյս (№ 1380) տայ գիտել. «Ըստ որում գործք լուծման պսակաց ըստ վսեմութեան տուարկային ընկալեալք լինին ի նկատողութիւն ընդ Առենապետութեամբ Վեհ. Կաթողիկոսի, ուստի զանօրէնութիւն խնդրոյս թողուլ ցընտրութիւն (արդէն ընտրեալ ի 20 նոյն ամսոյ) և զհաստատութիւն նորոգ կաթողիկոսի»: Երրորդ՝ Տըփխիսեցի Ն. Մ...եանց և այրի Ն... Զ...եանց զատուցեալ զթոյլատուութիւն պսակի իւրեանց ի մէնջ, ի պատճառս ամացն անհաւասարութեան, զիմեալ էին խնդրով ի նոյն միտս ի Սինօդն. որ և Հրամանաւ ի 24 յունիսի (№ 2057) պատուիրեալ է ծանուցանել... «Այլ զի մերձենան աւուրք հաստատութեան և գալստեան նորոյ Հայրապետի, ուստի զհանգամանս խնդրոյս իբր պարզ գործ հոգևոր առաջի առնել ի վախճանական լուծումն Վեհ. Հայրապետի, յորում ժամու և տալ զառանձին զեկուցումն»: Իսկ արդ՝ եթէ զխնդիրս, ամաւ և ամսօք յառաջ քան զընտրութիւնն

Հայրապետի ազգիս մատուցելոյ հարկ է թողուլ դատաստանին և վճռոյ Վեհ. Հայրապետի, այլ և զխնդիրն Ք... եանցի, զմատուցեալն ի 10-ն յունիսի, այնչափ յետոյ քան զընտրութիւնն, մանաւանդ զի՛ խնդիրդ այդ չև է ենթարկեալ օրինաւոր քննութեան։ Եւ թէպէտև Սրբազան Սինօդն բաւական համարի հիմն եզրակացութեան առնուլ ի բանից խնդրատուի և ի մատուցեալ գրութենէ կնոջ նորա . . . և ասել. «Որպէս յայտնի է ամբողջ հասարակութեան... և բազմաց քաղաքացւոց և բնակչաց զանազան տեղեաց նոյնպէս և տեարց անդամոց Սինօդիս, կինն խնդրատու Գ. Ք...եանց թողեալ զօրինաւոր այր իւր... և զի կինն այն առ հրաւէր և թախանձ օրինաւոր առն իւրոյ անհամաձայն գտանի դառնալ առ այր իւր, որպէս ապացուցանի և ի մատուցեալ ընդ ներկայ խնդրոյս... իսկական գրութենէ»... Բայց և այնպէս անհրաժեշտ էր նշանակել զքննութիւն. զի քննութիւնն կարէ ի յայտ ածել զբազմապիսի հանգամանս, յորոց միայն մարթէ եզրակացանել զյանցաւորութիւն այս կամ այն կողման, յանսխալ վճռահատութիւն գործոյն։

Ի քակտել զպսակ Ք...ցի Սինօդն այժմ յառաջ բերէ ի կանոնաց Ս. Ներսիսի զՌՄԿԵ-րդն. չկամիմ ասել, թէ որչափ համապատասխան է այդ կանոն ներկայ խնդրոյս. զայն միայն յիշեմ, զի նոյն Սրբ. Սինօդն ի 25 յունիսի 1879 ամի ընդ Ատենապետութեամբ Հայրապետի ամենայն Հայոց կայացուցեալ է օրագրութիւն առ առաջարկութիւն Առաջնորդի

Սարտախանայ, դնելով զայս եզրակացութիւն. «Որով-հետև առաջարկութիւն... առաջնորդին Սարտախանայ է ապօրինակ իմն և հակառակ կանոնաց Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ, ըստ որոց պսակն անլուծանելի է, ցորչափ կենդանի իցէ մին յամուսնացելոց անտի, ուստի թողլով զայն առանց հետևանաց, յաւելուլ ի գիտութիւն նորին գերապատուութեան թէ նա, ըստ իւրումն կոչման և պարտաւորութեան պարտ էր անդէն անդ բացասել նմին (խնդրողին զքակտումն պսակի) և մի առնել բնաւ զայսպիսի առաջարկութիւն հակառակ մերոց եկեղեցական օրինաց» (տես Արարատ նոյն ամի, սեպտ.) և ի 29 նոյն ամսոյ՝ առ Հոգևոր կառավարութիւնն Հայոց Աղէքսանդրապօլի ըստ այսմ... «Հրամանագրել Հոգ. կառավարութեան Աղէքսանդրապօլի զի... կրկին ենթարկել ի ներքոյ եկեղեցական ապաշխարանաց..., զորմէ և ծանուցանել առն յիշատակեալ կնոջ... յայտնել նմա, զի ըստ կանոնական կոնդակի Վեհ. Կաթողիկոսի պսակ որդւոյ Հայաստանեայցս եկեղեցւոյ անլուծանելի է, ցորչափ կենդանի իցէ մինն յամուսնացելոց անտի» (Նոյն ամսագիր; Հոկտ.)։

Արդ՝ ըստ կրկնակի պարտուցս — եպիսկոպոսութեան և առաջնորդութեան պատասխանատու առաջի Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ վասն անթերի պահպանութեան նուիրական կարգաց և կանոնաց նորին և իրաւանց Վեհ. Հայրապետի ամենայն Հայոց ծանուցելով զանձն իմ՝ առաջարկեմ թեմ. Ատենիդ զյիշատակեալ հրաման վասն քակտման պսակի Գ...

չածել ի կատար. զորմէ և ամենախոնարհաբար ծանուցեալ սրբ. Սինոդին՝ դարձուցանել ի նոյն նաև զվկայագիրս, առաքեալս ընդ հրամանին, խնդրելով պահպանել զայն ցգալուստ Վեհ. Հայրապետի, ում միայնոյ և անկ է տալ վճիռ խնդրոյ Գ...ցիս»[36]։

### Դ.

(1886 Թ.)

Տփխիսեցի Մ. Ե...անց յայտնելով՝ որ իր կինը խելագարուել է և բժշկական վկայութիւնների համեմատ անբուժելի է, խնդրում է քակտել իր պսակը և իրաւունք տալ նոր ամուսնութեան։

### ՎՃԻՌ.

Սինոդը նոյն թուի օգոստոսի 13-ին 3198 համարով արձակում է այս հրամանը. «...ի Սինոդիս լուան զերկուս յայտարարութիւնս Կոնսիստորիայիդ ի 18 և ի 25-ն յունիսի համարօք 2430 և 2522, ի մասին քակտման պսակի Մ. Ե...եանց ընդ կնոջն Ս. Ա...եանց ի պատճառս անբուժելի խելագարութեան վերջնոյն։ Կանոն եկեղեցական. ի դատաստանագրոց Գոշ Մխիթարայ յօդ. ՌՇԾԲ (երես 423).

[36] Կոնսիստորիայի՝ մեր առաջադրութեան վրայ հիմնուած յայտարարութիւնը մնաց Սինոդում անպատասխան. և մի տարուց յետոյ, 1886 թուի օգոստոսին Սրբ. Սինոդը հեռագրով պատուիրեց ծխական քահանային կատարել նոյն պսակը. այնպէս որ՝ հակառակ մեր ակնկալութեան չկարողացանք լսել Ծայր. Իշխանութիւնից, թէ որչափ ուղիղ կամ սխալ ենք եղել մեր կարծիքի մէջ:

«Եթէ պատուհասի առն և կամ կնոջ դիւահարիլ, քննել արժան է, թէ յառաջ քան զպսակն էր և ծածկեցաւ խաբէութեամբ ծնողացն կնոջն. ի տունս իւրեանց առցեն մինչև բժշկեսցի, և ապա դարձցի յայրն իւր, եթէ կամեսցի այրն, ապա թէ ոչ՝ իշխան լիցի արձակել զնա։ Ապա թէ ի տան առն պատահի դիւահարիլ՝ այրն հոգասցէ մինչև բժշկեսցի. ապա թէ յետ եօթն ամի ոչ բժշկեսցի, իշխան լիցի այրն արձակել զնա, և առցէ այլ կին. և եթէ մանկունք իցեն, առ իւր հայրն թողցի, և կինն ընչիւք իւրովք ելցէ և այրն հրամանաւ կնոջն այլ կին առցէ, բայց ըստ կարողութեանն հոգասցէ զկեանս. իսկ եթէ ի տան ծնողացն է դիւահարեալ, առանց հրամանի կնոջն առցէ կին առանց լնուլ եօթն ամին, բայց կինն ընչիւք իւրովք ելցէ, և ծախք և հանդերձք որ ի պսակին մի՛ յիշեսցին, նոյն դատաստան լիցի թէ և առն պատահի ախտս։ Հրամայեցին. Ունելով ի նկատի, զի խելագարութիւն կնոջ Մ. Ե...եանց հաստատեալ է քննութեամբ և բժշկական վկայութեամբ, յորպիսի ցաւ տագնապի կինն այն ըստ ցուցմանն վկայից յերկոտասան ամաց հետէ, և այրն ըստ կարողութեանն հոգացեալ է զբժշկութենէ նորա և զխնամարկութենէն ըստ պատշաճին. ուստի ի վերայ հիման վերոյգրեալ եկեղեցական կանոնաց լուծել զկապ ամուսնութեան Մ. Ե...եանց ընդ Ս. կնոջն և թոյլատրել Ե...եանցին մտանել ի նոր ամուսնութիւն, պարտաւորելով զնա պահել և խնամարկել զՍ...այն ցորչափ կենդանի իցէ նա»։

### Է.

(1887 Թ.)

*Մի պսակի լուծումն և տեղի ունեցաւ սոյն թուին Մոսկուայում։*

ԵՐԿՐՈՐԴ ԲԱԺԻՆ.

## ՊՍԱԿՆ ԱՆԼՈՒԾԱՆԵԼԻ Է.

### ՕՐԻՆԱԿՆԵՐ.

### Ա.

(1888 Թ.)

*Տփխիսի Կոնսիստորիայի՝* 1883 *թուին ներկայացրած յայտարարութիւնը (որ Բ-րդ) պատասխան «... Ի Սինոդիս լուան՝ զյայտարարութիւն Կոնսիստորիայիդ ի* 4-*ն ապրիլի* 1883 *ամի համարաւ* 1321, *յաղագս խզելոյ զկապ ամուսնութեան Ս. Բ...եանց ընդ Ն. կնոջն, ի պատճառս պոռնկական վարուց վերջնոյս։ Եւ զանեղեկութիւնս ի գործոյ։ — Օրէնք Տէրունական հրամայեն. Աւետարան Յիսուսի Քրիստոսի ըստ Մատթէոսի. գլուխ* 19 *համար* 3. *«Թողցէ այր զհայր և զմայր և երթիցէ զհետ կնոջ իւրոյ և եղիցին երկոքեան ի մարմին մի։ Ապա ուրեմն ոչ են երկու, այլ մի մարմին. արդ զոր Աստուած զուգեաց, մարդ մի՛ մեկնեսցէ»։ Առաքելոյն Պօղոսի թուղթ առ Հռովմայեցիս, գլուխ Է համար* 2—3. *«Քանզի կին առնակին ի կենդանի այր իւր կապեալ կայ օրինօք, իսկ եթէ մեռցի այրն՝ արձակեալ է յօրինաց առն։*

Ապա ուրեմն մինչդեռ կենդանի է այրն, շուն կոչի, եթէ լինիցի առն այլում, և եթէ մեռցի այրն՝ ազատ է յօրինացն, չհամարեալ շուն, եթէ լինիցի առն այլում։ Հրամայեցին — ի վերոյգրեալ հանգամանաց գործոյս և ի բացատրութեանց Ս. Բ...եանց և կնոջ նորա Ն...այի երևի, զի Ս. Բ...եանց պատճառելով զինքնագլուխ բացակայութիւն կնոջն ի տանէ իւրմէ ի ժամանակի գտանելոյն նորա ի պատերազմի Ռուսաց ընդ Օսմանեանս ի 1877 ամի և բնակելոյն առ Լ...ովն, ընդ որում ունեցեալ է և ունի այժմ զպոռնկական յարաբերութիւն, և առաջարկելով զվկայութիւնս զինուորական աստիճանաւորաց... որք ծանօթք են և տեղեակք պոռնկական յարաբերութեան կնոջն ընդ Լ...ովի և այլն, խնդրէ լուծել զկապ ամուսնութեան ընդ կնոջն և թոյլատրել յամուսնութիւն ընդ այլում, իսկ կին նորա Ն...այն պատճառ անհամաձայնութեան ելանելոյն նորա ի տանէ առն և բնակելոյն առ Լ...ովն ցուցանէ զայր իւր Ս...նն, որ ակն ունելով ստացման նշանաւոր օժտի ի ծնողաց կնոջն, և յետ պսակին չկարողանալով ի ձեռս բերել զայնս պատճառաւ սնանկութեան և ապա մահուան հօր կնոջն, սկսեալ է այրն հայհոյել զհայր և զազգականս նորա, արտաքսել ի տանէն ասելով թէ չունի զմիջոց կերակրելոյ զկինն, ամսօրեայ միջոցք չէ խօսեալ ընդ կնոջն, հանելով յանկողնոյ գանահարեալ է և արտաքսեալ ի սենեկէն միով շապկաւ ի սրահ ասելով թէ միշտ պարտ է վարել ընդ կնոջն այնպէս մինչև ցմահ, որպէս զի

ազատեսցի ի նմանէ և ով մեծն է, այլ նորա Բ...-եանցն յառաջ, քան զպատերազմն բերեալ է զՆ...-ովէջ ի տուն և ի միասին ընդ նմա բնակեալ ի միում տան որպէս ընդ ընկերակցի և ընդ նախածանօթի և այն ի թեթևութիւն ծախուց իւրոյ։ Ունելով ի նկատի զվերոյգրեալ հանգամանս Սինօդս գտանէ զերկոսին զնոսա զայրն և զկինն ևս յանցաւոր, և հիմնելով յառաջաբերեալ ի վեր անդր Աւետարանական և Առաքելական սուրբ բանից, ըղպատակ նոցա ընդ միմեանս համարի անլուծանելի. ուստի՝ վերադարձուցմամբ գործոյն Կոնսիստորիային, հրամանագրել զմին ընդ ձեռն որոց հարկն է ի գործ դնել զխրատական միջոցս և աւետարանական և սիրաշահ համոզմամբ յորդորել զայրն և զկինն գալ ի համաձայնութիւն և ներելով զյանցանս միմեանց կեալ ընդ միմեանս սիրով և խաղաղութեամբ համաձայն ուխտի իւրեանց ի ժամ սուրբ պսակի. և եթէ ընդ այս անհամաձայն գտցին, յայն դէպս թողուլ զնոսա մնալ բաժան ի միմեանց մինչև ցմահ միոյն ի նոցանէ[37], չթոյլատրելով բնաւ ոչ առն և ոչ կնոջն մտանել ի նոր ամուսնութիւն մինչդեռ կենդանի իցեն երկոքին» (ի 23 յուլիսի 1888 ամի № 2690)։

---

[37] Թէ վճիռը և թէ յառաջ բերուած Աւետարանական և Առաքելական խօսքերի բացատրութիւնը միանգամայն համապատասխանում է հռոմէական եկեղեցու վարդապետութեան:

Բ.

(188... Թ.)

Նոյն Կոնսիստորիայն 1886 թուի ապրիլի 19 (№ 1550) յայտարարութիւնով ներկայացնում է Ծաղկայի Այլազմայ գիւղի բնակիչ Յ. Մ...եանի խնդիրը պսակի լուծման համար, քննական գործի հետ միասին։

Սինօդը 1888 թուի յուլիսի 27-ի (№ 2743) հրամանով տալիս է այս վճիռը. «Օրէնք աւետարանական հրամայեն. Աւետարան Յիսուսի Քրիստոսի ըստ Մատթէոսի գլուխ 19 համար 3. «Թողցէ այր զհայր և զմայր և երթիցէ զհետ կնոջ իւրոյ և եղիցին երկոքեան ի մարմին մի։ Ապա ուրեմն ոչ են երկու այլ մի մարմին, արդ զոր Աստուած զուգեաց, մարդ մի՛ մեկնեսցէ»։ Առաքելոյն Պօղոսի, թուղթ առ Հռովմայեցիս, գլուխ Է. համար 2—3. «Քանզի կին առնակին ի կենդանի այր իւր կապեալ կայ օրինօք, իսկ եթէ մեռցի այրն, արձակեալ է յօրինաց առնն։ Ապա ուրեմն մինչդեռ կենդանի է այրն, շուն կոչի, եթէ լինիցի առն այլում, և եթէ մեռցի այրն, ազատ է յօրինաց, չհամարեալ շուն եթէ լինիցի առն այլում»։ Վասն որոյ հրամայեցին։ — Որովհետև լուծումն պսակաց առն և կնոջ հակառակ է վերոյգրեալ Աւետարանական և Առաքելական սուրբ բանից, ուստի վերադարձուցմամբ գործոյն պատուիրել Կոնսիստորիային նախ՝ ընդ ձեռն գործակալին Ծաղկայի աւետարանական քարոզութեամբ և սիրաշահ խրա-

տուք համոզել զկինն բռնակչէ Աստուծոյ դէպ Յ...այ Մ...եան զՄ. Յ...եանց թողուլ զիւրն պոռնկութիւն և գնալ առ այր իւր օրինաւոր ի համաբնակութիւն, յորդորելով և զայրն ներել կնոջ և անյիշաչար լինել սխալմանց և յանցանաց կնոջն, և եթէ առ այս անլուր և անհամաձայն գտցի կինն, յայն դէպս թղթակցել ընդ պատշաճաւորն քաղաքական իշխանութեան վասն հանելոյ զնա ի տանէ ապօրինի կենակցի իւրոյ զարքին Ս. Բ...եանց և յանձնելոյ ի տուն առն իւրոյ օրինաւորի, պարտաւորելով զապօրինի պահող այրն զԲ...եանցն չպահել առ ինքն զկինն զայն երկիւղիւ ի սաստկագոյն պատասխանատուութեանց ըստ օրինաց: Իսկ եթէ և այս վերջին միջոց անհնարին գտցի, յայն դէպս թողուլ զվերոյիշեալ Յ. Մ...եան և զկին նորա զՄա...ն ապրել բաժան ի միմեանց[38] մինչև սարջացեալ հաշտեսցին ընդ իրեարս, չթոյլատրելով բնաւ ոչ առն և ոչ կնոջն ամուսնանալ ընդ այլոց, մինչև ցմահ միոյն ի նոցունց»:

Գ.

(1889 Թ.)

Նոյն Կոնսիստորիայն (1880 թւի սեպտեմբերի 13-ի № 3765) յայտարարութիւնով խնդրում է քակտել Տ. Մ... Մ...եանցի և նրա կնոջ պսակը յայտնի պատճառի համար:

[38] Սրանում ևս թէ մծիոն և թէ Աւետարանական և Առաքելական պատուէրների բացատրութիւնը հռոմէական եկեղեցու վարդապետութեան համաձայն են:

Սինօդի հրամանն ասում է (յ31 հոկտեմ. 1889, № 3666). «Որովհետև լուծումն պսակաց հակառակ է բանից սրբոյ Աւետարանի՝ որ ըստ Մատթէոսի գլ. 19, համար 3, և Առաքելոյն Պօղոսի, որ առ Հռովմայեցիս գլ. Է. համար 2—3, ուստի դարձուցմամբ գործոյն պատուիրի Կոնսիստորիային յորդորել զՄ...-ային և զայր իւր զՄ...ն ի համաբնակութիւն ընդ միմեանս սիրով և խաղաղութեամբ ըստ ուխտի իւրեանց ի ժամ սուրբ պսակին և եթէ ոչ լուիցեն, արգելուլ զամուսնութիւն նոցին ընդ այլս, մինչ ցմահ միոյն յերկոցունց»։

---

Գ.

Առաջին մասում երկար խօսելու հարկ ունեցանք, ըստ որում այդ պահանջեց հաս ու չհասի խնդիրը. այստեղ մեզ ոչինչ չի մնում ասելու, քանի որ հայաստանեայց եկեղեցու՝ պսակի քակտման մասին վարդապետութիւնն ու կանոններն այնքան պարզ են, որ մի երկու հակառակ վճիռներ երբէք չեն կարող տարակուսութեան տեղիք տալ. ուրեմն ուր չենք տեսնում տարակուսութիւն, այնտեղ էլ և հարկ չենք նկատում խօսելու. այլ միայն հարկ ենք համարում յայտնել մեր սրտի խորին ցաւը, որ մեր եկեղեցու՝ անտարբերութեան աստիճանին հասած ներկայ ժամանակի ներողամտութիւնը հնարաւորութիւն է տալիս այդպիսի բացարձակ շեղումների և

անկանոնութիւնների անարգելք յայտնուելուն, մինչդեռ մեր նախնեաց ժամանակ սաստիկ պատուհասակոծ էին լինում։ Եւ որքա՜ն շատ են այսպիսի շեղումներ, այդպիսի անկանոնութիւններ. — մինչև իսկ եկեղեցու մաքուր և սքանչելի կերպարանքը այլափոխելու և այլանդակելու չափ շատ։ Ցաւալի՜ դրութիւն։

Դարուս հռչակաւոր հայկաբանը, հանգուցեալ Գաբրիէլ արքեպիսկոպոս Այվազեանն՝ Ռուսահայոց հոգևոր ատեանների պաշտօնական աղաւաղ լեզուի և անարուեստ թարգմանութիւնների ազդեցութեամբ խանգարուած գտնելով մեր նախնեաց հոյակապ գրաբար լեզուն, ասում էր սոսկալով. «Եթէ յանկարծ ի նախնեացն ոք մերոց ի մեռելոց յարուցեալ մտանէր հետազօտել ինչ, անշուշտ ընդարմանայր և հիանայր թէ զիա՛րդ է զի աղաղակ բառիցն հայերէն հնչէ յականջս իւր, և սակայն ի գլուխն ինչ ոչ մտանէ ի բազում բանից անտի»[39]։ Ո՞ւր էր, թէ արդարև մեր նախնիներից մէկն ու մէկը «ի մեռելոց յարուցեալ» գար հետազօտելու մեզ, մեր ներկայ դրութիւնը։ Բայց նա ոչ միայն մեր այժմու լեզուից մի բան պիտի չհասկանար, այլ և պիտի չճանաչէր այն եկեղեցին, որ նախնիքը մեզ աւանդել են. և իր հետազօտութիւնից ու հարցուփորձից անմխիթար արդիւնքի հասնելով՝ յուսահատութեամբ կրկին դէպի գերեզման պիտի շտապէր։

[39] Խանգարմունք հայկաբանութեան ի հնումն և ի նորումս, Թէոդոսիա, 1869, եր. 20։

## Դ.

Մեր պարտականութիւնն էր միայն ամփոփ կերպով յառաջ բերել Հայ եկեղեցու՝ ամուսնական երկու տեսակ խնդիրների մասին ունեցած վարդապետութիւնը և օրէնսդրութիւնը։ Մեր համեստ պարտքը կատարեցինք։ Մեզ մնում է միայն ասել, որ եկեղեցու լռութիւնը խորին ուշադրութիւն դարձնէ այդ փափուկ խնդիրների ներկայ անհամապատասխան դրութեան վրայ և բարեհաճի նրանից յառաջացած և յառաջանալիք չարիքների առաջն առնել, որքան կարելի է շուտով։ Եւ այդ անելու ձեռնհաս կ՚լինի մի ազգ.-եկեղեցական ժողով, որ օրէնսդրական կատարեալ հեղինակութիւն ունենալով, և ուշադրութեան առնելով ժողովրդի ժամանակակից կեանքի պահանջները՝ կարող էր այնպիսի պարզորոշ և գոհացուցիչ օրէնսդրութիւն տալ, որ պատկառելի և ակնածելի լինէր ամենուրեք բնակած Հայ ժողովրդի համար։ Այո, եկեղեցու լռութեան ներկայացուցիչ այդպիսի մի ժողով բոլորովին ազատ իրաւունք կունենար ժողովրդի ժամանակակից կեանքի պահանջներին գոհացումն տուող կանոնադրութիւն հաստատել և այդպիսով եկեղեցու ձեռքում երկար ժամանակ պահպանել ժողովրդի ընտանեկան յարաբերութիւնների խնդիրները, որոնցով և ապահովել ժողովրդի մշտապատրաստ հպատակութիւնն իր Եկեղեցուն։

# ՎՐԻՊԱԿՆԵՐ.

| երես. | տող. | սխալ. | ուղիղ. |
|---|---|---|---|
| 12 | 13 | կնանքի | կեանքի |
| 13 | 26 | օզրագրութիւններին | օրագրութիւններին |
| 15 | 2 | ամենուրէք | ամենուրեք |
| 17 | 21 | իրարից | իրանց |
| « | 23 | քաղաքականութիւնը | քաղաքակրթութիւնը |
| 18 | 1 | դէպքը | պէտքը |
| « | 2 | Հինը | Կինը |
| 20 | 8 | ընտրուած | ընդունուած |
| 24 | 2 | էր | էին |
| 33 | 16 | Թիւէրից | Թեւէրից |
| « | 27 | Léfélé | Héfélé |
| 34 | 15 | տրուած են | դրուած են |
| « | 28 | ասում է նոյնպէս | ասում է. «նոյնպէս |
| 40 | 21 | Նէոկեսարայի | Նէոկեսարիայի |
| 43 | 17 | բացատել | բացատրել |
| 44 | 25 | Բիւզանդ. տպագրութիւն | Բիւզանդ. Դպրութիւն |
| 46 | 19 | մի մերժեցէն | մի մերժեցին |
| « | 24 | Էջմիածնի գրադարան | Էջմիածնի գրադարանի |
| 49 | 23 | տարբերութիւնը | տարբերութիւնները |
| 51 | 20 | երկրորդ աստիճանի | երրորդ աստիճանի |
| « | 25 | զոգաւորութեան | զուգաւորութեան |
| 53 | 11 | արիւնապականող | արիւն ապականող |
| 58 | 24 | վեցերորորդ | վեցերորդ |
| 61 | 22 | հրաւէր | պատուէր |
| 62 | 14 | պահանջին | պահանջեն |
| 66 | 16 | զոր առեալ ի ցոյց | զոր առեալ եցոյց |
| 68 | 8 | մինչև հինգերորդը | մինչև հինգերորդ |
| 70 | 3 | Եւ զայս ամենայն | Եւ զայս յամենայն |
| « | 6 | բաժանել | բաժանիլ |
| « | 12 | զուգեն | զուգին |

